ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ






# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922թ.

6

ՀՈՒՆԻՍ • 1986

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6

ՀՈՒՆԻՍ

1986 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

## ԱՐԱԳԱՑՄԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱ



## ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՊՐԱԿՏԻԿԱ



## ՄԵԾ ՀԱՅՐԵՆԱԿԱՆԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅԱՆ ԷՋԵՐԻՑ



## ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ



## ՊՐՈԲԼԵՄՆԵՐ ԵՎ ՄՏՈՐՈՒՄՆԵՐ



## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ



## ՀՈԳԵՎՈՐ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ԿԱՊԵՐ





Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ

գլխավոր խմբագիր 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ 52—99—06
պատասխանատու քարտուղար 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի 52—05—58
կուսակցական կյանք 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների 52—57—56
գիտության և կուլտուրայի 52—99—34
խմբագրության վարիչ 53—36—11
գրական աշխատողներ 52—66—77
56—59—94





# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱԿԱՆ ԳԻԾԸ

**Լ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ *քաղաքական սիստեմի զարգացման հարցերը կենտրոնական տեղ են գրավում կոմունիստների լենինյան կուսակցության բոլոր ծրագրային փաստաթղթերում։ Ղեկավարվելով քաղաքական սիստեմի դասակարգային բովանդակության վերաբերյալ մարքս-լենինյան ուսմունքով, մեր կուսակցությունը սահմանում է նրա զարգացման ստրատեգիական գիծը՝ ելնելով սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության կոնկրետ պատմական խնդիրներից։*

*Այդ էվոլյուցիայի դիալեկտիկան միանգամայն հստակորեն ձևակերպված է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում. «Սոցիալիստական հեղափոխության շնորհիվ հաստատված պրոլետարիատի դիկտատուրան,— ասված է այնտեղ,— վճռական դեր խաղաց նոր հասարակության ստեղծման գործում։ Այդ պրոցեսում ինքն էլ փոփոխություններ կրեց։ Շահագործողական դասակարգերի վերացմամբ աստիճանաբար վերացավ տապալված շահագործողների դիմադրության ճնշման ֆունկցիան, ամբողջ ուժով ծավալվեց պրոլետարիատի դիկտատուրայի գլխավոր՝ ստեղծարար խնդիրների իրականացումը։ Կատարելով իր պատմական առաքելությունը, պրոլետարիատի դիկտատուրան վերաճեց բոլոր աշխատավորների քաղաքական իշխանության, իսկ պրոլետարական պետությունը՝ համաժողովրդականի»* (ՍՄԿԿ ծրագիրը, *«Հայաստան» հրատ., 1986, էջ 61)։*

*Այս պրոցեսի հիմքն է կազմում* սոցիալիստական դեմոկրատիայի մշտական զարգացումն ու ընդլայնումը: *Կապիտալիզմից սոցիալիզմին անցման ժամանակաշրջանում հաստատվեց պրոլետարական դեմոկրատիան, բայց այն չէր կարող լիակատար լինել, ուներ որոշակի սահմանափակումներ։ Դա պայմանավորված էր դասակարգային պայքարի պայմաններով և ներքին ու արտաքին բնույթի այլ գործոններով։ Այդ իսկ պատճառով Վ. Ի. Լենինը նշում էր, որ «դեմոկրատիզմի հսկայական ընդլայնման* հետ միասին, *որն* ա ռ ա ջ ի ն  ա ն գ ա մ *դեմոկրատիզմ է դառնում չքավորների համար, այլ ոչ թե դեմոկրատիզմ հարուստների համար, պրոլետարիատի դիկտատուրան ազատությունից մի շարք բացառումներ է անում ճնշողների, շահագործողների, կապիտալիստների նկատմամբ»* (ԵԼԺ, *հ. 33, էջ 113)։*

*Սոցիալիզմի շինարարության և հասարակության սոցիալ-տնտեսական, քաղաքական ու հոգևոր կյանքում վիթխարի վերափոխումների պրոցեսում զարգանում և ընդլայնվում է սոցիալիստական դեմոկրատիան։*

Սոցիալիստական դեմոկրատիայի ընդլայնման պրոցեսը հատկապես ուժեղանում է սոցիալիզմի կատարելագործման և կոմունիզմի շինարարության ժամանակաշրջանում: *Վ. Ի. Լենինը կուսակցության գլխավոր խնդիրներից էր համարում «Դեմոկրատիայի զարգացումը* մինչև վերջ, *այդպիսի զարգացման* ձևերի *հայտնագործումը, դրանց փորձարկումը* պրակտիկայում» *(Նույն տեղը, էջ 100): Լենինյան դրույթներին լիովին համապատասխան ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում գրված է.* «ՍՄԿԿ-ն գտնում է, որ արդի փուլում հասարակության քաղաքական սիստեմի զարգացման ստրատեգիական գիծը սովետական դեմոկրատիայի կատարելագործումն է, ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման ավելի ու ավելի լիակատար իրագործումը՝ պետական ու հասարակական կյանքի հարցերի լուծմանը աշխատավորների, նրանց կոլեկտիվների ու կազմակերպությունների ակտիվ և գործուն մասնակցության հիման վրա» *(*ՍՄԿԿ ծրագիրը, *էջ 62):*

*Այս դրույթում ստեղծագործաբար զարգացված է դեմոկրատիայի բարձրագույն նպատակի՝* ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման *ապահովման մարքս-լենինյան ըմբռնումը: Ինչպես հայտնի է, ժողովրդի ինքնակառավարման կոչ առաջադրել են անցյալի շատ առաջադեմ մտածողներ, բանվորական շարժման գործիչներ: Գիտական կոմունիզմի հիմնադիրները Փարիզի կոմունայի և Սովետների Հանրապետության անհրաժեշտ սկզբունքն էին համարում աշխատավորների լայն ինքնակառավարումը արտադրությունում, տերիտորիալ միավորումներում, հասարակական կազմակերպություններում և ողջ պետության մասշտաբով (տե՛ս* К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 17, с.с. 343, 350, *Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 33, էջ 193—194): Այս գաղափարները ստեղծագործաբար զարգացվել են ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում, որտեղ գիտականորեն բնութագրված է ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման սկզբունքը, համաձայն որի պետք է «...կառավարումը ոչ միայն իրականացվի հօգուտ աշխատավորների, այլև օրինաչափորեն, ավելի ու ավելի մեծ չափով դառնա բուն աշխատավորների անմիջական գործը, որոնք իրենցից վեր չունեն, Վ. Ի. Լենինի բառերով ասած, ոչ մի իշխանություն, բացի իրենց սեփական միավորման իշխանությունից (*ՍՄԿԿ ծրագիրը, *էջ 62):*

*Մարդկային հասարակության զարգացման պատմության մեջ ժողովրդի ինքնակառավարման առաջին ձևը, որն իրենից վեր սեփական միավորումից բացի այլ իշխանություն չի իմացել՝ նախնադարյան համայնական կոմունան էր: Դասակարգերի առաջացումով և պետական կառավարման հաստատումով ինքնակառավարումը չանհետացավ, այլ մշտապես դրսևորվում էր մասսաների՝ դասակարգային, ազգային, արհեստակցական, երկարատև կամ ժամանակավոր շահերին համապատասխան ինքնակազմակերպման ձգտմամբ: Այս իմաստով ինքնակառավարումը գոյություն է ունեցել նաև շահագործողական հասարակությունում: Բայց փաստորեն, իր սեփական միավորումից բացի որևէ այլ իշխանություն չիմացող ժողովրդի իրոք ինքնակառավարումը շահագործողական և, մասնավորապես, կապիտալիստական հասարակությունում չի կարող իրականանալ: Եվ դա հասկանալի է, որովհետև նրա սոցիալ-տնտեսական և քաղաքական կարգը չի արտահայտում աշխատավոր մասսաների շահերը, այլ կոչված է պաշտպանելու շահագործողական դասակարգերի շահերը:*

Սոցիալիզմի պայմաններում, *որտեղ չկա դասակարգերի հակամարտություն, որտեղ պետությունը և քաղաքական սիստեմի մյուս օղակները միատեսակ են ընդունում հասարակության բոլոր անդամների շահերը, առաջին անգամ առաջանում և զարգանում է ժողովրդի կառավարումն իր իսկ՝ ժողովրդի միջոցով (տե՛ս* К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 17, с.с. 350, 601*): Այդ կառավարումը մեր երկրում իրականացվում է աշխատավորների այնպիսի սեփական միավորումների միջոցով, ինչպիսիք են սովետները, աշխատավորական կոլեկտիվները, կոոպերացիան, արհմիությունները, երիտա-*



*սարդական, ստեղծագործական և այլ հասարակական ինքնագործ կազմակերպությունները:*

*Սովետական հասարակության զարգացման բոլոր փուլերում ժողովրդի ինքնակառավարման զանազան ձևերի կազմակերպումն ու կատարելագործումն իրականացվել է սոցիալիստական դեմոկրատիայի սկզբունքների մշտական ընդլայնման հիման վրա: Կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացրած Քաղաքական զեկուցման մեջ ընդգծվում է. «Դեմոկրատիան այն առողջ ու մաքուր օդն է, որով միայն լիարյուն կարող է ապրել սոցիալիստական հասարակական օրգանիզմը... ժողովրդի ինքնավարման զարգացումը պահանջում է* դեմոկրատական հիմունքների հետագա խորացում կառավարման մեջ...» *(Մ. Ս. Գորբաչով,* ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի քաղաքական զեկուցումը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVII համագումարին, *«Հայաստան» հրատ., 1986, էջ 90, 94):*

Արդի պայմաններում սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի զարգացման անհրաժեշտությունն ու հնարավորությունը պայմանավորված են մի շարք օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոններով: *Դրանցից են, ամենից առաջ, սոցիալիզմի կատարելագործման աճած խնդիրները, որոնց լուծումն անհնարին է առանց հասարակության բոլոր անդամների գործուն և ստեղծագործական մասնակցության:*

*Որպես սոցիալիզմի կատարելագործման և կոմունիզմի կառուցման առաջնահերթ խնդիր ՍՄԿԿ XXVII համագումարը սահմանեց երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը, որը ենթադրում է տնտեսական աճի տեմպերի արագացում՝ գիտատեխնիկական առաջընթացի, տնտեսության կառուցվածքային վերափոխման, կառավարման արդյունավետ ձևերի, աշխատանքի կազմակերպման և խթանման հիման վրա բոլոր միջոցներով արտադրության ինտենսիվացման ուղիով: Այդ խնդիրը հնարավոր է լուծել միայն արտադրության ու նրա կառավարման գործում ողջ ժողովրդի ամենալայն մասնակցության միջոցով:* «Հասարակության զարգացման արագացումը,— *ընդգծված է կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացրած Քաղաքական զեկուցման մեջ,—* աներևակայելի և անհնարին է առանց սոցիալիստական դեմոկրատիայի, նրա բոլոր կողմերի ու դրսևորումների հետագա զարգացման» *(Նույն տեղը, էջ 90):*

*Առանց սոցիալիստական դեմոկրատիայի ըստ ամենայնի ծավալման անհնարին է լուծել նաև այնպիսի կարևոր խնդիր, ինչպիսին է նոր մարդու ձևավորումը և անհատի համակողմանի զարգացումը: Եվ դա հասկանալի է, քանի որ* ինչքան մեծ է հասարակության վերափոխման, հասարակության կառավարման գործում մասնակցող մարդկանց թիվը, այնքան ավելի բարձր է ակտիվությունն ու նախաձեռնությունը, այնքան ավելի հաջող է առաջընթացը, այնքան ավելի է արագանում հասարակության և անհատի զարգացումը:

*Սոցիալիզմի հաղթանակն ու ամրապնդումը ոչ միայն ծնեցին սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի զարգացման պահանջմունք, այլև անհրաժեշտ պայմաններ ստեղծեցին այդ զարգացման համար: Դրանցից է, առաջին հերթին,* ժողովրդի նյութական և կուլտուրական բարեկեցության անշեղ աճի հնարավորության ընդլայնումը: *Այս ուղղությամբ մեր կուսակցության անցկացրած հետևողական գիծն ու ձեռք բերված հաջողությունները հանրահայտ են: ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների համաձայն երկրի սոցիալ-տնտեսական զարգացման հեռանկարային պլաններում նախատեսվում է բարձրացնել ժողովրդի բարեկեցությունը որակապես նոր աստիճանի: Ենթադրվում է մեծացնել սովետական մարդկանց կենսապայմանների բարելավմանն ուղղված միջոցների ծավալը: Մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները կաճեն 1,6—1,8 անգամ: Զգալիորեն կընդլայնվի բնակարանային և սոցիալ-կուլտուրական շինարարությունը, շատ միջոցներ կներդրվեն առողջապահության, ֆիզիկական կուլտուրայի և սպորտի ցանցի ընդլայնման, ժողովրդի բարեկեցության բարձրացման մյուս խնդիրների լուծման նպատակով: Դրա-*

նով իսկ ամրապնդվում է սոցիալիստական դեմոկրատիայի և ժողովրդի ինքնակառավարման հետագա ընդլայնման սոցիալ-տնտեսական բազան:

Սոցիալիզմի կատարելագործման և կոմունիզմի կառուցման պայմաններում դեմոկրատիայի համակողմանի զարգացման կարևորագույն նախադրյալներից են մասսաների կրթության և կուլտուրայի աճած մակարդակը, մարքս-լենինյան գաղափարախոսության լիակատար տիրապետությունը, սովետական ժողովուրդների բարոյաքաղաքական միասնությունն ու բարեկամությունը, նրանց սերտ համախմբվածությունը կուսակցության ու կառավարության շուրջը: Այս նվաճումների շնորհիվ հսկայական չափով մեծացել են հասարակության ու պետության գործերի կառավարմանը մասնակցելու յուրաքանչյուր քաղաքացու հնարավորություններն ու պահանջմունքները:

Դեմոկրատիայի հետագա զարգացման պրոցեսը պայմանավորված է նաև մեր երկրի ամրապնդված միջազգային դրությամբ, որն այժմ ավելի նպաստավոր է, քան երբևէ. Սովետական Միությունը սոցիալիստական երկրների ամուր ընտանիքի անդամն է, նրանց օգնություն է ցույց տալիս և վայելում նրանց աջակցությունը: Դրա հետ մեկտեղ սոցիալիզմի գաղափարները տիրապետում են գաղութատիրությունից և իմպերիալիզմից ազատագրված միլիոնավոր նոր մարդկանց: Սոցիալիզմի ուղին են թևակոխում նոր երկրներ, սոցիալիստական դեմոկրատիան ավելի ու ավելի է դառնում իրենց ազատագրման ու սոցիալական առաջընթացի համար ճնշված մասսաների մղած պայքարի խորհրդանիշը:

Այսպիսիք են սոցիալիստական դեմոկրատիայի մշտական զարգացման և կատարելագործման օբյեկտիվ օրինաչափությունը պայմանավորող հիմնական ներքին ու արտաքին գործոնները: Չնայած այս օրինաչափությանը, սոցիալիզմի հակառակորդները շարունակում են սոցիալիստական դեմոկրատիայի էության իրենց կեղծարարությունները, մի առանձին եռանդով գրպարտում սովետական հասարակության քաղաքական սիստեմը: Ինչպես նշվեց կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացրած Քաղաքական զեկուցումում, բուրժուական գաղափարախոսությունը ճգնում է «բոլոր միջոցներով սևացնել սոցիալիզմը, խեղաթյուրել այնպիսի արժեքների իմաստը, ինչպիսիք են դեմոկրատիան, ազատությունը, հավասարությունը, սոցիալական առաջադիմությունը» (Նույն տեղը, էջ 147):

Բայց ինչպիսի հնարքների էլ դիմելու լինեն հակակոմունիզմի գաղափարախոսները, նրանք չեն կարող մոլորության մեջ գցել համաշխարհային հասարակական կարծիքը ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման ռեալ իրականացման հարցում, աշխատանքի և սոցիալական ապահովության, ձրի կրթության և բժշկական սպասարկման, բոլոր ազգերի ու ազգությունների իրավահավասարության երաշխավորված իրավունքների, սոցիալիզմի բոլոր դեմոկրատական իրողությունների հարցերում:

Սոցիալիստական դեմոկրատիայի բոլոր սկզբունքները գործնականում իրականացվում են պետական մարմինների, հասարակական կազմակերպությունների, սովետական հասարակության քաղաքական սիստեմի բոլոր օղակների ամենօրյա նպատակամետ գործունեության միջոցով:

Այսպես, սովետական համաժողովրդական պետությունը բուն ժողովրդի իշխանության մարմինն է և մեր երկրում կոմունիզմի կառուցման հիմնական գործիքը: Ուստի և բնական է, որ տեղի է ունենում հասարակության կյանքում նրա դերի հետագա բարձրացում:

ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում ավելի հստակորեն է ձևակերպված կուսակցության քաղաքականությունը սովետական պետության հետագա զարգացման ու ամրապնդման գործում: «Կուսակցության քաղաքականության հանգուցային հարցը,— նշված է ՍՄԿԿ ծրագրում,— սովետական սոցիալիստական պետության զարգացումն է և ամրապնդումը, նրա դեմոկրատական, համաժողովրդական բնույթի... առավել լրիվ բացահայտումը» (ՍՄԿԿ ծրագիրը, էջ 63):



Այս դրույթը պարունակում է պետության մարքս-լենինյան տեսության հետագա զարգացումն ու նաև սոցիալիստական երկրների պատմական փորձի ընդհանրացումը: Բայց այն հանելուկ է մնում բուրժուական գաղափարախոսների և ռևիզիոնիստների համար: Երբ խոսք է լինում սոցիալիստական պետության հատուկ դերի և նրա ամրապնդման մասին, ապա նրանց պատկերացմամբ դա նշանակում է միայն պետական ապարատի հզորության մեծացում և բռնության ուժեղացում: Սակայն այս բնորոշ է բուրժուական պետության համար: «Բուրժուազիան,— գրել է Վ. Ի. Լենինը,— միայն այն ժամանակ է պետությունն ուժեղ համարում, երբ այն կարող է կառավարական ապարատի ամբողջ զորությամբ նետել մասսաներին այնտեղ, որտեղ բուրժուական կառավարողներն են ցանկանում: Մեր հասկացողությունն ուժի մասին այլ է: Մեր պատկերացումով պետությունն ուժեղ է մասսաների գիտակցականությամբ: Նա ուժեղ է այն դեպքում, երբ մասսաներն ամեն ինչ գիտեն, ամեն ինչի մասին կարող են դատել և ամեն ինչ գիտակցաբար են անում» (ԵԼԺ, հ. 35, էջ 23): Այստեղից հետևում է, որ սոցիալիստական պետության ամրապնդումը պայմանավորված է դեմոկրատիայի մշտական ընդլայնմամբ, աշխատավորների քաղաքական ակտիվության բարձրացմամբ, տնտեսական, սոցիալ-քաղաքական և ներքին ու միջազգային կյանքի այլ խնդիրների իրականացման գործում լայն մասսաների ներգրավմամբ: «Ամրապնդումն ու զարգացումը,— նշել է Վ. Ի. Լենինը,— պետք է արտահայտվեն այն առաջադրանքների իրագործմամբ (ավելի լայն, ընդհանուր և պլանաչափ իրագործմամբ), որոնք պատմականորեն դրված են պետական իշխանության այդ ձևի, պետության այդ նոր տիպի վրա...» (ԵԼԺ, հ. 36, էջ 88):

Արդի պայմաններում սովետական համաժողովրդական պետության հիմնական խնդիրներին համապատասխան կուսակցության ծրագրի նոր խմբագրությունում սահմանված են նրա հիմնական ֆունկցիաները. սոցիալիզմի կատարելագործումը մեր երկրում, սոցիալիստական նվաճումների պաշտպանությունը միջազգային ասպարեզում, համաշխարհային սոցիալիզմի դիրքերի ամրապնդումը, իմպերիալիստական ուժերի ագրեսիվ քաղաքականությանը հակազդելը, համագործակցության զարգացումը բոլոր երկրների հետ:

ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում շեշտվում է սովետների գործունեության համակողմանի բարելավման անհրաժեշտությունը: Ժողովրդական դեպուտատների սովետների հատուկ դերը սովետական հասարակության քաղաքական սիստեմում պայմանավորված է նրանով, որ լինելով պետական իշխանության մարմիններ, նրանք հանդես են գալիս նաև որպես լայն մասսաների ամենաներկայացուցչական հասարակական կազմակերպություններ: Սովետների իշխանությունը, բացատրում էր Լենինը, «բոլորի համար բաց իշխանություն է, որ ամեն ինչ անում է մասսայի աչքի առջև, մատչելի է մասսային, ելնում է անմիջականորեն մասսայից, ժողովրդական մասսայի և նրա կամքի ուղղակի ու անմիջական մարմինն է» (ԵԼԺ, հ. 41, էջ 455):

Սովետների լենինյան բնութագրության և նրանց զարգացման ու պրակտիկ գործունեության պատմական ուղու վերլուծության համաձայն ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում առաջին անգամ հիմնավորվում է այն դրույթը, թե սովետները ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման գլխավոր օղակն են:

Կուսակցության XXVII համագումարը բարձր գնահատեց ժողովրդական դեպուտատների սովետների բազմակողմանի գործունեությունը: Միաժամանակ համագումարը շեշտեց, որ նրանց, հատկապես՝ տեղական սովետների, ամենօրյա աշխատանքում երբեմն պակասում է գործարարությունն ու նախաձեռնությունը, թույլ է իրականացվում վերահսկողությունը: Ուստի և համագումարը նշեց ժողովրդական դեպուտատների սովետների ինքնուրույնության և ակտիվության հետագա մեծացման անհրաժեշտությունը, որպեսզի նրանք դառնան լիիրավ ու պատասխանատու տերեր իրենց տարածքում: Այս կապակցությամբ կուսակցության համագումարը առաջնակարգ ուշադրություն նվիրեց դեպուտատների նախաձեռնության և պատասխանատվության բարձ-

բացմանը: «Կուսակցությունը այսուհետև էլ հոգ կտանի այն մասին,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ,— որ դեպուտատներ ընտրվեն առավել արժանավոր մարդիկ, որոնք կարողանան բարձր մակարդակով վարել պետական գործերը, որ սովետների կազմը սիստեմատիկաբար նորացվի: Ըստ երևույթին ժամանակն է այս պլանով անհրաժեշտ ճշգրտումներ մտցնել նաև մեր ընտրական պրակտիկայում» (Մ. Ս. Գորբաչով, ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցումը..., էջ 94):

Սովետների հաջող գործունեության գլխավոր պայմանը նրանց աշխատանքներին բնակչության ակտիվ մասնակցությունն է: Սովետների աշխատանքում մասսաների ներգրավման արդյունավետ ձևեր են արտադրա-տարածքային շրջանների անցկացումը, մշտական հանձնաժողովները, զանազան կամավոր աջակցության կոմիտեները: Ներկայումս սովետների հասարակական ակտիվում ընդգրկված են 31,5 միլիոն մարդ: Նրանք մեծ օգնություն են ցույց տալիս սովետների ամենօրյա աշխատանքներում: Սրանում է սովետական համաժողովրդական պետության գործունեության դեմոկրատական հիմքերի հետագա ընդլայնման վառ արտահայտություններից մեկը:

Սովետական համաժողովրդական պետության զարգացումը սովետների և նրանց հասարակական կազմակերպությունների դերի բարձրացման հետ միասին ենթադրում է պետական կառավարման ապարատի բոլոր օղակների գործունեության հետագա կատարելագործում այն հաշվով, որպեսզի նա դառնա ավելի պարզ, որակյալ, էժան ու գործարար, բյուրոկրատիզմի դրսևորումներ բացառող: Այս ուղղությամբ իրականացնելով նպատակաուղղված կուրս, կուսակցությունը ղեկավարվում է այն համոզմամբ, որ ոչ մի ապարատ որևէ հաջողության չի հասնի, եթե չի հենվում աշխատավորների շահագրգռված աջակցության և կառավարմանը նրանց մասնակցության վրա: Այս կապակցությամբ կարևոր նշանակություն ունի կուսակցության ծրագրի նոր խմբագրությունում պետական որոշումների մշակման և ընդունման պրոցեսում լայն մասսաներին ներգրավելու կոնկրետ ձևերի սահմանումը: Դրանք են՝ հրապարակայնության ապահովումը. ըստ բնակության վայրի աշխատավորական կոլեկտիվների, ինչպես նաև քաղաքացիների առաջարկությունների, զանազան կարծիքների հաշվառումն ու համադրումը. առավել կարևոր օրինագծերի և որոշումների համաժողովրդական քննարկումը. հասարակական կարծիքի ուսումնասիրումը. ընդունված որոշումների և դրանց կատարման արդյունքների վերաբերյալ բնակչության տեղեկացվածության ընդլայնումը և այլն:

Սոցիալիստական դեմոկրատիայի և ժողովրդի ինքնակառավարման զարգացման սոցիալ-քաղաքական հիմքը ամրապնդվում է նաև ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության՝ պետական մարմինների աշխատողների հաշվետու լինելու սկզբունքի անհրաժեշտության և անվերապահ պահպանման, պաշտոնյաների փոխարինման ընտրելիության և կոնկուրսային սկզբունքի ընդլայնման վերաբերյալ դրույթով:

Սոցիալիստական դեմոկրատիայի և ժողովրդի ինքնակառավարման այս սկզբունքների գործնական կիրառման հարցում հատուկ դեր ունեն աշխատավորական կոլեկտիվները՝ սովետական հասարակության տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր կյանքի հիմնական բջիջները: Հենց այդտեղ են արտադրվում նյութական արժեքները և վճռվում երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու հարցերը: Հենց այդտեղ են իրականացվում մարդու այնպիսի կարևոր իրավունքները, ինչպիսիք են աշխատանքի, սոցիալական պահանջմունքների բավարարման, կոլեկտիվի և հասարակության դեմոկրատական կառավարմանը մասնակցելու իրավունքները:

ՍՄԿԿ XXVII համագումարը նշեց, որ դեմոկրատական կառավարում կազմակերպելու գործում անբավարար են օգտագործվում աշխատավորական կոլեկտիվների հնարավորությունները: «Չի կարելի հաշտվել դեռևս հանդիպող այն փաստերի հետ,— ասված է Քաղաքական զեկուցման մեջ,— երբ բանվորները չգիտեն իրենց ձեռնարկության պլանները, երբ նրանց առաջարկությունները մնում են առանց պատշաճ ուշադրության ու հաշվառման... Հարկավոր է քայլ առ քայլ ընդլայնել այն պրոբլեմների շրջանակը, որոնց վերաբերյալ աշխատավորական կոլեկտիվի որոշումները վերջնական են, բարձրացնել բանվորների ու ծառայողների ընդհանուր ժողովների դերը, դրանց որոշումների կատարման համար պատասխանատվությունը» (Նույն տեղը, էջ 98—99):

Աշխատավորական կոլեկտիվների դերի բարձրացման գործում կուսակցության գլխավոր նպատակը, ասված է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում, նրանց վերածելն է ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման իրոք սոցիալական բջիջների:

Սոցիալիստական դեմոկրատիայի և ժողովրդի ինքնակառավարման հետագա զարգացման առումով ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում մեծ ուշադրություն է նվիրված քաղաքացիների սոցիալ-տնտեսական, քաղաքական և անձնական իրավունքների ու ազատությունների հետագա ընդլայնմանն ու հարստացմանը, դրանց լիովին իրագործման համար առավել բարենպաստ պայմանների ու երաշխիքների ստեղծմանը: Չափազանց կարևոր է նաև այն, որ դրա հետ սերտորեն կապակցված հիմնավորվում է հասարակության անդամների իրավունքների, ազատությունների և պարտականությունների անքակտելի միասնությունը: Այս դրույթը կարևոր նշանակություն ունի ինչպես մեր երկրի ներքին զարգացման, այնպես էլ հակակոմունիզմի գաղափարախոսների կողմից սոցիալիստական դեմոկրատիայի էության զանազան կեղծարարությունների դեմ պայքարի տեսակետից: Հանրահայտ է, որ սոցիալիստական դեմոկրատիայի քննադատները, քողարկվելով «մարդու իրավունքների պաշտպանության» կեղծավոր լոզունգով, չեն ցանկանում ընդունել այն իրողությունը, որ սոցիալիստական դեմոկրատիան անհամատեղելի է սոցիալիզմի և կոմունիզմի կառուցմանը վնաս հասցնելու ցանկացած փորձերի հետ: Սոցիալիստական դեմոկրատիան ընդհանուր ոչինչ չունի մանրբուրժուական անկայունության, անկազմակերպվածության, անարխիական տարերայնության և կամայականության հետ: Այն քաղաքացիներին տալիս է ազատություն, երաշխավորում նրանց իրավունքները, բայց միաժամանակ նրանց վրա դնում որոշակի պարտականություններ, հակահասարակական արարքների համար սահմանում կոնկրետ պատասխանատվություն:

Սովետական Միության և սոցիալիստական ընկերակցության մյուս երկրների փորձը ցույց է տալիս, որ սոցիալիզմի օրոք դեմոկրատական ազատություններն ու իրավունքները բոլորի սեփականությունն են: Յուրաքանչյուր քաղաքացի ունի բոլոր հնարավորությունները՝ օգտվելու այդ իրավունքներից ու ազատություններից, սակայն պայմանով, որ վնաս չհասցնի հասարակությանը և ուրիշ մարդկանց:

Հասարակության անդամների իրավունքների և պարտականությունների միասնության ապահովման, ինչպես նաև սոցիալիստական հասարակության ողջ քաղաքական սիստեմի արդյունավետ գործառության կարևոր պայմանն է պետական և հասարակական կյանքի իրավական հիմքի ամրապնդումը, սոցիալիստական օրինականության և իրավակարգի անշեղ պահպանումը: Այս դրույթը նույնպես ամբողջ որոշակիությամբ ձևակերպված է կուսակցության ծրագրի նոր խմբագրությունում: Այդ կապակցությամբ ուշադրություն է սևեռվում ժողովրդական դատարանների և արդարադատության մյուս մարմինների, միլիցիայի, դատախազական հսկողության աշխատանքների հետագա բարելավմանը: Սոցիալիստական հասարակությունում օրինականության ամրապնդումը հանդես է գալիս որպես դեմոկրատական կառավարման կարևոր երաշխիք:

Զարգացած սոցիալիզմի պայմաններում սովետական բազմազգ հասարակության քաղաքական սիստեմի զարգացման բնորոշ առանձնահատկությունը սովետական ֆեդերացիայի հետագա կատարելագործումն է, միութենական հանրապետությունների իրավունքների ընդլայնումը, մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի կազմող մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների առավել սերտ մերձեցումը: Մեր բազմազգ հայրենիքի բո-

լոր ազգերի ու ազգությունների եղբայրական բարեկամությունն ու կուռ միասնությունը ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության հաղթանակն են, սոցիալիզմի քաղաքական սիստեմի իսկական դեմոկրատիզմի վառ արտահայտությունը։

Սովետական հասարակության քաղաքական սիստեմի դեմոկրատիզմի հետագա զարգացման կարևոր ուղղությունը հասարակական կազմակերպությունների դերի մեծացումն ու ֆունկցիաների ընդլայնումն է։ Հասարակական կազմակերպությունների համակարգը սոցիալիստական հասարակությունում ընդգրկում է զանազան միավորումներ՝ ըստ մասնագիտական, ստեղծագործական, տարիքային և այլ հատկանիշների։ Զարգացած սոցիալիզմի պայմաններում նրանց դերի աճը տեղի է ունենում երկու հիմնական ուղղություններով. նախ, ընդլայնվում է հասարակական կազմակերպությունների մասնակցությունը պետական մարմինների աշխատանքներում, երկրորդ՝ աստիճանաբար նրանց տնօրինությանն են անցնում պետական մարմինների կատարելիք շատ ֆունկցիաներ։

Աշխատավորների առավել մասսայական կազմակերպությունը արհմիություններն են, որոնք իրենց շարքերում ընդգրկում են ավելի քան 110 միլիոն մարդ։ Այդ իսկ պատճառով սոցիալիզմի քաղաքական սիստեմում, հասարակության գործերի կառավարման բնագավառում նրանք զբաղեցնում են առաջատար տեղերից մեկը։ Սահմանելով սովետական արհմիությունների բազմաբնույթ գործունեությունը, մեր կուսակցությունը ելնում է լենինյան այն ցուցումից, թե չի կարելի երկիրը կառավարել առանց սերտ կապի մեջ լինելու արհմիությունների հետ, առանց նրանց ջերմ աջակցության, առանց նրանց անձնվեր աշխատանքի։

ՍՄԿԿ XXVII համագումարում նշվեց, որ արհմիութենական կազմակերպությունները դեռևս լիովին չեն օգտագործում իրենց տրված լայն իրավունքները, պասսիվություն են ցուցաբերում։ Համագումարը հատուկ ուշադրություն դարձրեց աշխատավորների օրինական իրավունքների պաշտպանության, կուսակցության սոցիալական քաղաքականության իրականացման գործում արհմիությունների դերի հետագա բարձրացմանը։

Առանձնահատուկ ձևերով ու մեթոդներով դեմոկրատական կառավարման կարևոր ֆունկցիաներ են կատարում կոմերիտական, կոոպերատիվ և այլ հասարակական կազմակերպությունները։ ՍՄԿԿ XXVII համագումարում առաջ քաշվեց նոր հասարակական կազմակերպություններ ստեղծելու գաղափարը, կազմակերպություններ, որոնք արտահայտում են բնակչության այնպիսի մեծ խմբերի շահերը, ինչպիսիք են կանայք, ավագ սերնդի ներկայացուցիչները։ Էական է նաև այն, որ համագումարն անհրաժեշտ համարեց ընդլայնել շրջանակն այն հարցերի, որոնք կարող են լուծվել միայն հասարակական կազմակերպությունների մասնակցությամբ, ինչպես նաև վերջիններիս իրավունք վերապահել մի շարք դեպքերում դադարեցնել կառավարչական որոշումների գործողությունը։

Հասարակական կազմակերպությունների, ինչպես և սովետական համաժողովրդական պետության արդյունավետ գործունեությունն իրենց խնդիրների կատարման ասպարեզում ապահովվում է նրանով, որ նրանց ղեկավարում է կոմունիստական կուսակցությունը՝ աշխատավորների հասարակական-քաղաքական կազմակերպության բարձրագույն ձևը։

ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում նշված է, որ սովետական դեմոկրատիայի կատարելագործման և ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման զարգացման գործում որպես առաջատար ուժ հանդես է գալիս կուսակցությունը՝ սովետական հասարակության քաղաքական սիստեմի կորիզը։ «Նրա ղեկավարությամբ են գործում,— ասված է ծրագրում,— այդ սիստեմի մյուս բոլոր օղակները՝ սովետական պետությունը, արհեստակցական միությունները, կոմերիտմիությունը, կոոպերատիվ և մյուս հասարակական կազմակերպությունները, որոնք արտացոլում են բնակչության բոլոր խավերի, երկրի բոլոր ազգերի ու ազգությունների շահերի միասնությունն ու յուրահատկությունը» (ՍՄԿԿ ծրագիրը, էջ 62)։

Կուսակցությունը միավորում և համաձայնեցնում է կառավարման բոլոր մարմինների գործունեությունը, ռեալ պայմաններ է ստեղծում սոցիալիստական դեմոկրատիայի ըստ ամենայնի զարգացման համար։

Կարևոր է նշել, որ ՍՄԿԿ-ի առաջատար դերի իրագործումը սոցիալական պրոցեսի անմիջական կառավարումը չէ։ Կուսակցությունն իրականացնում է հասարակության քաղաքական ղեկավարումը, սահմանում նրա զարգացման գլխավոր հեռանկարը։ Նա ձևակերպում է գլխավոր խնդիրները կյանքի սոցիալ-տնտեսական և հոգևոր ոլորտներում, զբաղվում է կադրերի ընտրությամբ ու տեղաբաշխմամբ, ընդհանուր վերահսկողությամբ։ Ինչ վերաբերում է կոնկրետ տնտեսական և սոցիալ-կուլտուրական հարցերի լուծման ուղիներին ու մեթոդներին, ապա այստեղ ընտրության լայն հնարավորություն է ընձեռվում կառավարման յուրաքանչյուր մարմնի, աշխատավորական կոլեկտիվի, տնտեսական կադրերին։ Դրա համար էլ իր XXVII համագումարում կուսակցությունը մեկ անգամ ևս վճռականորեն հանդես եկավ ընդդեմ կուսակցական կոմիտեների և պետական ու հասարակական կազմակերպությունների ֆունկցիաները խառնելուն։

Սովետական քաղաքական սիստեմի դեմոկրատիզմի ըստ ամենայնի զարգացումը պահանջում է բուն կուսակցության ղեկավար գործունեության ձևերի ու մեթոդների անընդհատ կատարելագործում։ ՍՄԿԿ XXVII համագումարի բանաձևում այս կապակցությամբ գրված է. «Արդի պայմաններում, երբ լուծվելիք խնդիրների մասշտաբները, նորությունն ու բարդությունը բարձր պահանջներ են ներկայացնում կուսակցության ամբողջ քաղաքական, գաղափարախոսական և կազմակերպչական գործունեությանը, առաջնակարգ կարևորության գործ են կուսակցական աշխատանքի արմատական վերակառուցման ապահովումը, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպությունում ստեղծագործության, սկզբունքային պահանջկոտության և ինքնաքննադատության մթնոլորտի հաստատումը, սոցիալ-տնտեսական, գիտատեխնիկական և գաղափարադաստիարակչական պրոբլեմների նոր գործուն լուծումների որոնումը»։

Կենսագործվող կուրսն ապահովում է կուսակցության քաղաքական և կազմակերպչական գործունեության մակարդակի բարձրացումը, սոցիալիստական կառավարման սուբյեկտների աշխատանքի ոճի ու մեթոդների կատարելագործումը, սովետական հասարակության քաղաքական սիստեմի բոլոր օղակների համախմբումը։

Սոցիալիզմի քաղաքական սիստեմի հիրավի դեմոկրատիզմը հարաճուն ազդեցություն է գործում աշխարհի ճնշված դասակարգերի ու ժողովուրդների հեղափոխական պայքարի վրա՝ ընդդեմ իմպերիալիզմի, հանուն դեմոկրատիայի և սոցիալական առաջընթացի։

---

# ԼԵՆԻՆՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՊԱՅՔԱՐԸ ՆՐԱ ԿԵՂԾԱՐԱՐՆԵՐԻ ԴԵՄ

**Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ**
Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

ՄԵՐ ԵՐԿՐԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ անխախտ բարեկամությունն ու եղբայրությունը կուսակցության լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի արդյունքն են։ Այդ բանը հատկապես շեշտվեց կուսակցության XXVII համագումարին ներկայացված ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ. «Լենինից եկող մեր կուսակցության ավանդույթն է՝ առանձնակի զգայունությունը և շրջահայեցությունը այն ամենի մեջ, ինչը վերաբերում է ազգային քաղաքականությանը, շոշափում է յուրաքանչյուր ազգի և ազգության շահերը, մարդկանց ազգային զգացումները և միևնույն ժամանակ՝ սկզբունքային պայքարը ազգային սահմանափակվածության ու պարծենկոտության, նացիոնալիզմի ու շովինիզմի դրսևորումների դեմ, ինչպիսի զգեստ էլ որ դրանք կրեն» (ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցումը...։ «Հայաստան» հրատ., 1986, էջ 88—89)։

Ազգային հարցը սոցիալիզմի և կապիտալիզմի միջև մղվող, բուրժուական և ռևիզիոնիստական գաղափարախոսության դեմ մարքսիզմ-լենինիզմի մղած անհաշտ պայքարի ասպարեզ է։ Ազգային հարցի մարքս-լենինյան տեսության և ազգային հարաբերությունների բնագավառում Սովետական Միության ու սոցիալիզմի մյուս երկրների պրակտիկայի նենգափոխումը արդի հակակոմունիզմի բաղկացուցիչ մասն է։

Շեշտը դնելով մարտնչող նացիոնալիզմի վրա՝ որպես հեղափոխական ուժերի տարանջատման միջոցի, իմպերիալիզմի գաղափարախոսները վաղուց ի վեր տարածում են մի թեզիս դրա «ամենազոր» վիրուսի մասին, որը, իբր, ճակատագրականորեն վարակում է բոլոր երկրներին՝ անկախ նրանց սոցիալական կարգից։ Նացիոնալիզմը եղել ու մնում է բուրժուազիայի զինանոցում՝ աշխատավորների դեմ նրա մղած դասակարգային պայքարում։

Բուրժուական գաղափարախոսները նացիոնալիզմը դիտում են որպես սոցիալիստական սիստեմի հիմքերի քայքայման «օգտակար» և «հուսալի» միջոց։ Ռ. Փայփսը, օրինակ, Սովետական Միության կազմավորումը։ Կոմունիզմ և նացիոնալիզմ գրքում նացիոնալիզմը ներկայացնում է որպես միակ գաղափարաքաղաքական հոսանքը, որն արտահայտում է Ռուսաստանի ծայրամասերի ժողովուրդների իսկական շահերը։ Նրանք սոցիալիզմը համարում են որպես ազգային ճնշման մի ձև, որը փոխարինել է ցարիզմին։

Իրենց հակասովետական հարձակումներում և ապագայի պլաններում «սովետագետները» առանձնահատուկ տեղ են հատկացնում Կովկասին՝ որպես առավել բազմազգ երկրամասի։ Նրանք փորձում են ապացուցել, որ Անդրկովկասում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար անհրաժեշտ ներքին պայմաններ չկային, որ սովետական իշխանությունը, իբր, հաստատվել է Ռուսաստանի կարմիր բանակի կողմից, որ հայ, վրացի և ադրբեջանական ժողովուրդների շահերի իսկական արտահայտիչներն ու պաշտպանները



եղել են բուրժուանացիոնալիստական կուսակցությունները՝ դաշնակները Հայաստանում, մենշևիկները՝ Վրաստանում և մուսավաթականները՝ Ադրբեջանում, որոնք 1918—1921 թթ. կանգնած են եղել իշխանության գլուխ։

Թուրք «սովետագետ» Էրգուն Գեզեն հայկական հարցը համարում է «կոմունիստական իմպերիալիզմի» զավակը, որի դեմ, նրա կարծիքով, կարելի է պայքարել միայն պաշտպանելով հակակոմունիստական շարժումը ամբողջ աշխարհում։ Թուրքական հակասովետական պրոպագանդան կոչ է անում ստեղծել թուրքեստանյան, ուզբեկական, հյուսիսկովկասյան, ադրբեջանական վտարանդիական կառավարություններ։ Նա առաջարկում է ստեղծել հակակոմունիստական հայկական կառավարություն՝ Սովետական Հայաստանն իբր ռուսական գերությունից փրկելու համար։ 1983 թ. «Միլլիյեթ» թերթի համար ունեցած հարցազրույցում Թուրքիայի արտաքին գործերի մինիստր Թյուրքմենը այն աստիճան առաջ գնաց իր պնդումներում, որ կասկածի տակ առավ Հայկական ՍՍՀ-ի գոյությունը։ Հակառակ օբյեկտիվ փաստերին, թուրք «սովետագետները» կեղծում են հայ ժողովրդի կազմավորման պատմությունը, հանգուցային շատ պրոբլեմներ, Անդրկովկասի՝ Ռուսաստանի հետ միավորվելու առաջադիմական նշանակությունը, ժխտում են երիտթուրքերի կողմից կազմակերպված հայերի ցեղասպանությունը 1915 թ., մեծ Հոկտեմբերի պատմական դերը լենինյան ազգային քաղաքականության իրականացման գործում։ Պատմության թուրք կեղծարար Սադի Քոչաշը հայտարարում է, որ «հայերի փրկությունը անարխիայից ու ճնշումից և նրանց՝ հանգիստ կյանքի վերադառնալը սկսել է իրականացվել XIV դարից, երբ այդ շրջանը սկսել էր աստիճանաբար անցնել թուրք-օսմանների տիրապետության տակ... Դարեր շարունակ թուրքերն ու հայերը ապրել են միասին... առանց որևէ նվազագույն տարաձայնության, վերջին 50 տարիների ընթացքում օտարերկրացիների սադրանքների պատճառով նրանք դարձան թշնամիներ»։ Նյու Յորքում լույս տեսած Ռուսաստանը և նրա գաղութները գրքում Կոլարզ Վոլտերը ՍՍՀՄ-ի կազմի մեջ մտած բոլոր միութենական հանրապետությունները համարում է «Ռուսաստանի գաղութներ»։ Բուրժուական կեղծարարը փորձում է ժխտել ՍՄԿԿ-ի ինտերնացիոնալ էությունը, այն համարում է զուտ ռուսական կուսակցություն, որը, իբր, «գաղութային» քաղաքականություն է վարում ազգային հանրապետություններում։ Անդրֆեդերացիան նա դիտում է որպես մի «միջակա գործակալություն», որի միջոցով կարելի էր սահմանափակել այդ երեք հանրապետությունների ազգային սուվերենությունը։ Այդ նույն ոգով են գրում նաև բուրժուական կեղծարարներ Լ. Շապիրոն, Ֆ. Քազեմզադեն և ուրիշներ։

Հակակոմունիզմի այդ ընդհանուր արշավանքում իրենց անվայելուչ տեղն են գրավում դաշնակները։ ԱՄՆ-ի ագրեսիվ շրջանները կազմակերպել էին հատուկ դատավարություն, որին որպես «վկաներ» հրավիրել էին Հայաստանից վաղուց դուրս շպրտված դաշնակ պարագլուխներին և քննում էին այն հարցը, թե որքանով «օրինական» է եղել սովետական իշխանության հաստատումը Հայաստանում։ Այդ կապակցությամբ Վաշինգտոնում առանձին գրքույկով լույս էր ընծայվել այսպես կոչված «կոմունիստական ագրեսիայի կոմիտեի» հատուկ զեկուցումը ներկայացուցիչների պալատի 38-րդ կոնգրեսի երկրորդ նստաշրջանում, որտեղ ասված է, թե «սովետական իշխանությունը Հայաստան է բերվել դրսից»։ Սիմոն Վրացյանն ու նրա նմանները կոմունիստներին էին վերագրում իբր «ազգերին սպանելու», նրանց քայքայելու և բոլոր ազգերին ռուսական կամ սովետական ազգի մեջ միաձուլելու ձգտում։

Վ. Ի. Լենինի և նրա հայազգի զինակիցների ու աշակերտների դեմ էր հանդես գալիս Կարո Սասունին։ Բեյրութում լույս ընծայած իր գրքույկում նա պնդում է, որ սովետական իշխանություն հաստատելու համար 1920 թ. Հայաստանի աշխատավոր զանգվածների հեղափոխական ելույթները «մի քանի բոլշևիկ ուսուցիչների հրահրած արկածախնդրություն» էին։ «Սովետները,— գրում էր դաշնակ Լազյանը,— սկզբունքորեն դեմ էին փոքր ազգերի, այդ թվում և կովկասյան ազգերի անկախությանը։ Ադրբեջանի, Հայաս-

տանի ու Վրաստանի նվաճումից երկու տարի հետո, 1922 թ. դեկտեմբերին, վերջ դրվեց այդ երկրների անկախությանը» (նկատի է առնվում ՍՍՀՄ-ի կազմավորումը)։

Դաշնակցություն կուսակցության 1981 թ. կայացած XX համագումարի և ԱՄՆ-ում, Կանադայում, Ֆրանսիայում, Իրանում ու կապիտալիստական այլ երկրներում լույս տեսնող դաշնակցական մամուլի նյութերը ցույց են տալիս, որ հակակոմունիզմն ու հակասովետիզմը ազգային հարցում ևս շարունակում են մնալ որպես գլխավորը դաշնակցական գաղափարախոսությունում։ Քողարկվելով նացիոնալիստական դեմագոգիայով, դաշնակները ամեն կերպ ձգտում են վարկաբեկել ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության պատմական նվաճումները, մոլորության մեջ գցել սփյուռքահայ աշխատավորներին, որոնք կանգնած են իրենց հայրենիքի՝ Սովետական Հայաստանի պաշտպանության դիրքերում։

Հակառակ պատմական փաստերին, վավերագրերին, Սովետական Հայաստանի ակնառու նվաճումներին, դաշնակ գրչակները Արևմուտքում իրենց հրատարակած հակակոմունիստական ու հակասովետական թերթերում ու հանդեսներում («Արմենիեն ռեվյու» և այլն) բազմապիսի տարբերակներով կրկնում են հայ ազգի զարգացման պրակտիկայով վաղուց մերժված հերյուրանքն այն մասին, թե իբր կոմունիստական կուսակցության քաղաքականությունը Սովետական Հայաստանի նկատմամբ կրում է «գաղութարարական բնույթ»։ Ամերիկացի «սովետագետ» Մերի Քիլբուռն-Մաթոսյանը, ժխտելով այն հսկայական օգնությունը, որ Հայաստանին ցույց է տվել Սովետական Ռուսաստանը, պնդում է, որ հայ ժողովուրդն իր հանրապետության էկոնոմիկան ստեղծել է, իբր, ավելի շատ աշխատելով «ոչ թե իր համար, այլ ՍՍՀՄ-ի համար» (Matossian M., Transformation of Armenian Society under Stalin. The Wilson Center, Washington, *1980*, p. *11*)։

«Սովետականացումը Հայաստանին ետ քաշեց դեպի այն ուղեծիրը,— գրում է Ջ. Լիպարիտյանը,— որտեղ անհնար է ազգային շահերի անկախ պաշտպանությունը, իսկ թույլատրելի ինքնակառավարման աստիճանը որոշում է Մոսկվան» (G. Libaridian. Soviet Armenia. The Wilson Center, Washington, *1979*, p. *2*)։

Բուրժուազիայի գաղափարախոսները, արտացոլելով ազգային հարցը լուծելու՝ արդի կապիտալիզմի ակնհայտ անկարողությունը, դիտավորյալ խեղաթյուրում են պրոբլեմը, փորձում են ապացուցել, որ ազգային կոնֆլիկտները հավիտենական են ու անլուծելի, որ դրանք բխում են ոչ թե հասարակական կարգից, այլ ուրիշ ազգությունների անձանց նկատմամբ իշխանության ձգտող մարդկանց բուն էությունից։

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ նացիոնալիզմը բուրժուազիայի գաղափարախոսությունն ու քաղաքականությունն է ազգային հարաբերությունների բնագավառում, այն արմատապես հակադիր է բանվոր դասակարգի շահերին, պրոլետարական ինտերնացիոնալիզմին։

Կոմունիստները միշտ հակահարված են տվել ու շարունակում են տալ բուրժուական հետադիմական նացիոնալիզմին ու դրա բոլոր քարոզիչներին ինչպես բանվոր դասակարգի շրջանում, այնպես էլ իր սեփական շարքերում։ Բուրժուական նացիոնալիզմին նրանք հակադրում են պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարախոսությունը, որը բանվոր դասակարգի իսկական գիտական աշխարհայացքի բաղադրիչ մասն է։

«...Կուսակցությունը ելնում է այն բանից,— ասված է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ,— որ լենինյան ազգային քաղաքականության հետևողական կենսագործումը, ժողովուրդների բարեկամության համակողմանի ամրապնդումը սոցիալիզմի կատարելագործման բաղկացուցիչ մասն են, մեր բազմազգ սոցիալիստական հայրենիքի հետագա ծաղկման՝ հասարակական պրակտիկայով ստուգված ուղին» (ՍՄԿԿ ծրագիրը, «Հայաստան» հրատ., 1986, էջ 61)։

Կոմունիստներն իրենց գործունեության մեջ ղեկավարվում են լենինյան



այն ցուցումով, որ ազգային շահերի հետևողական պաշտպանությունը պահանջում է առաջին պլանում դնել ընդհանուր, ինտերնացիոնալ կապերը, շահերը։ ՍՍՀՄ-ում և սոցիալիզմի մյուս երկրներում ազգային հարցի լուծման փորձը ապացուցում է, որ իրոք ամենազոր եղել ու մնում է ոչ թե բուրժուական նացիոնալիզմը՝ իր ամեն մի դրսևորումով, այլ Մարքսի և Էնգելսի մշակած ու Լենինի զարգացրած ուսմունքը պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի մասին։

Մարքս-լենինյան կուսակցությունների տեսության ու պրակտիկայի համար ղեկավար սկզբունք է եղել գիտական կոմունիզմի հիմնադիրների հայտնագործած այն սկզբունքը, որ «Ուրիշ ժողովրդի ճնշող ժողովուրդը կռում է սեփական շղթաները» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 16, с. 438)։ «Չի կարող ազատ լինել այն ժողովուրդը, որը ճնշում է ուրիշ ժողովուրդների» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 18, с. 509)։ Մարքսիստական ազգային ծրագիրը ամբողջովին ենթարկված է պրոլետարիատի դասակարգային խնդիրներին։ Մշակելով սոցիալիստական հեղափոխության տեսությունը, Վ. Ի. Լենինը հսկայական ուշադրություն է նվիրել ազգային-ազատագրական շարժմանը՝ որպես բանվոր դասակարգի դաշնակցի՝ ինքնակալության ու կապիտալիզմի դեմ նրա մղած պայքարում։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը մարդկության պատմության մեջ նոր դարաշրջան բացեց՝ սոցիալիզմին անցնելու դարաշրջանը, դրա հետ մեկտեղ դրեց ազգերի նոր տիպի հարաբերությունների՝ հավասարության, հաշտության ու եղբայրության հարաբերությունների սկիզբը։

Լենինյան ազգային քաղաքականության համաշխարհային-պատմական հաղթանակը եղավ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորումը 1922 թ. դեկտեմբերին, որի ստեղծման գործում իրենց դերը կատարեցին մեր երկրի բոլոր ազգերն ու ազգությունները։ Դրա շնորհիվ առաջացավ պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը։

Սակայն, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, մեր նվաճումները չպետք է ազգային պրոցեսների անպրոբլեմայնության պատկերացում ստեղծեն. հակասությունները հատուկ են ամեն մի զարգացման, և դրանք անխուսափելի են նաև այս ոլորտում։ Գլխավորն է՝ տեսնել շարունակ առաջացող դրանց ասպեկտներն ու կողմերը, որոնել և ժամանակին ճիշտ պատասխաններ տալ կյանքի առաջադրած հարցերին։

Մարքսիզմ-լենինիզմը տալիս է ազգամիջյան հարաբերությունների հետ կապված պրոբլեմների սկզբունքային լուծումը։ Լենինն ընդգծում էր, որ ազգային ու պետական տարբերությունները ժողովուրդների ու երկրների միջև «պրոլետարիատի դիկտատուրան նույնիսկ համաշխարհային մասշտաբով իրագործվելուց հետո էլ կպահպանվեն շատ ու շատ երկար ժամանակ» (ԵԼԺ, հ. 41, էջ 94)։ Մարքսիստ-լենինյանները հավասարության նշան չեն դնում ազգային գիտակցության և նացիոնալիզմի միջև։ Ազգային ինքնագիտակցությունը, ազգային հպարտությունը երբեք այնպես վառ չի արտահայտվել, ինչպես սոցիալիզմի օրոք։ Բազմազգ սովետական հասարակության պայմաններում է՛լ ավելի է աճել յուրաքանչյուր ժողովրդի ազգային հպարտության զգացումը։ Ինտերնացիոնալիզմն ու ազգային հպարտության զգացումը սերտորեն փոխկապակցված են, օրգանական միասնություն են, քանի որ չի կարելի ինտերնացիոնալիստ լինել՝ առանց սիրելու իր ազգը և առանց հպարտանալու մարդկության առաջադիմության գործում նրա ունեցած ավանդով։ Սոցիալական զանազան պրոբլեմների հաջող լուծումը նպաստում է մեր երկրի ազգերի ու ազգությունների հետագա մերձեցմանը, նրանց ինտերնացիոնալ միասնության ամրապնդմանը։ ՍՍՀՄ-ի օրինակով աշխարհի ժողովուրդներն ամենայն ակներևությամբ համոզվում են, որ սոցիալիզմի հաջողությունները անվիճելի են հասարակական կյանքի բոլոր բնագավառներում, այդ թվում և այնպիսի կարևոր ոլորտում, ինչպիսին է ազգերի ու ազգային հարաբերությունների զարգացումը։ Դեռ 1923 թ. կուսակցության XII համագումարի որո-

շումներում նշված էր, որ «պրոլետարիատը սովետական հասարակարգի մեջ գտավ ազգային հարցի ճիշտ լուծման բանալին, նա այդ հասարակարգի մեջ հայտնագործեց ազգային իրավահավասարության ու կամավորության հիմունքներով կայուն բազմազգ պետություն կազմակերպելու ուղին» (ՍՄԿԿ-ն... բանաձևերում..., մաս I, «Հայպետհրատ», 1954, էջ 910)։

Սովետական բազմազգ պետության և համաշխարհային սոցիալիստական սիստեմի զարգացման պատմական փորձն ապացուցում է, որ ՍՄԿԿ-ն և եղբայրական կուսակցությունները, ղեկավարվելով մարքս-լենինյան տեսությամբ, կարողացել են հասնել ազգային հարցի արդարացի լուծման։ Իր զարգացման ընթացքում ազգերի սոցիալիստական ընկերակցությունը վերածվել է պետությունների ու ժողովուրդների սկզբունքորեն նոր դաշնության, որոնց հարաբերությունները հիմնված են կատարյալ իրավահավասարության, փոխադարձ օգնության, կոլեկտիվ համագործակցության վրա՝ հանուն ընդհանուր նպատակների։ ՍՄԿԿ-ի ազգային քաղաքականության լենինյան կուրսի վառ դրսևորումն է ՍՍՀՄ սահմանադրությունը, որը կանխանշել է մեր բազմազգ պետության զարգացման ուղիները։

Ընդգծելով ազգային հարաբերությունների զարգացման հսկայական նշանակությունը սովետական բազմազգ պետության համար, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը կուսակցության XXVII համագումարին ներկայացրած ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ ասաց. «Մեր երկրում ազգային հարցի լուծման հիմքերը դրեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը։ Կոմունիստական կուսակցությունը, հենվելով Վ. Ի. Լենինի ուսմունքի, սոցիալիզմի նվաճումների վրա, վիթխարի վերափոխիչ աշխատանք է կատարել այդ բնագավառում։ Դրա արդյունքները սոցիալիզմի ակնառու նվաճումն են, որոնք հարստացրել են համաշխարհային քաղաքակրթությունը։ Մեկընդմիշտ ոչնչացված են ազգային ճնշումն ու ազգային անիրավահավասարությունը՝ բոլոր ձևերով ու դրսևորումներով։ Հաստատվել, տասնյակ միլիոնավոր մարդկանց գիտակցության մեջ են մտել ժողովուրդների անխախտ բարեկամությունը, բոլոր ժողովուրդների ազգային կուլտուրայի և ազգային արժանապատվության հանդեպ հարգանքը։ Սովետական ժողովուրդը հանդես է գալիս որպես որակապես նոր սոցիալական և ինտերնացիոնալ հանրություն, որը զոդված է տնտեսական շահերի, գաղափարախոսության և քաղաքական նպատակների միասնությամբ» (ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցումը..., էջ 87)։

ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում իր իսկական ազատությունն ու պետականությունը գտավ Սովետական Հայաստանը՝ մեծ Հոկտեմբերի ծնունդը։ Իր բազմադարյա ողջ պատմության ընթացքում հայ ժողովուրդը անհավասար պայքար է մղել օտարերկրյա կեղեքիչների դեմ։ Ավելի քան մեկուկես դար սրանից առաջ Արևելահայաստանը կամովին միացավ Ռուսաստանին, հայերի նշանակալի մասը ազատվեց հետամնաց ֆեոդալական պետությունների լծից և իր բախտը մեկընդմիշտ կապեց հյուսիսային մեծ հարևանի հետ։ Օսմանյան Թուրքիայի լծի տակ մնացած Արևմտյան Հայաստանը կորցրեց ազատության և անկախության ամեն մի հույս։ 1917 թ. դեկտեմբերին Վ. Ի. Լենինը ստորագրեց «Դեկրետ «Թուրքահայաստանի» մասին» պատմական փաստաթուղթը, որի համաձայն արևմտահայերին վերապահվում էր ազատ ինքնորոշման լիակատար իրավունք։

1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանի աշխատավորները կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ և XI կարմիր բանակի զորամասերի օգնությամբ տապալեցին դաշնակների ատելի լուծը և հայկական հին հողում հաստատեցին սովետական իշխանություն։

Վ. Ի. Լենինը ողջունեց իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին։ Նա հույս հայտնեց, որ Անդրկովկասի եղբայրական հանրապետությունների սերտ դաշինքը «կստեղծի ազգային խաղաղության մի այնպիսի օրինակ, որը չի տեսնված բուրժուազիայի



ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում» (ԵԼԺ, հ. 43, էջ 237)։

Հայաստանում սովետական իշխանության հաստատման 15-ամյակի առթիվ «Պրավդա» թերթը առաջնորդող հոդվածում գրել է. «Լենինյան ազգային քաղաքականությունն արդեն տվել է իր հիանալի պտուղները։ Արմատապես փոխվել է Հայաստանի դեմքը։ Ստեղծվել է սեփական արդյունաբերություն։ Գյուղացիության ճնշող մասսան միավորվել է կոլտնտեսություններում և հաջողությամբ կառուցում է կուլտուրական ունևոր կյանք։ Աճել են ազգային պրոլետարիատի կադրեր, աճում են մամուլը, հրատարակչությունները, դպրոցները, համալսարանները, թատրոնները, հիվանդանոցները, առողջարանները։

Սոցիալիզմի հաջողությունները Հայաստանում առանձնահատուկ նշանակություն ունեն, քանի որ այդ երկիրը Սովետական Միության առաջավոր պոստն է Արևելքում։ Հայաստանի օրինակով Արևելքի աշխատավոր զանգվածները նորից ու նորից համոզվում են, որ միայն պրոլետարական հեղափոխությունը կարող է վերացնել ազգային ճնշումը և օգնել հետամնաց ազգություններին՝ ոտքի կանգնելու և լիարյուն կյանքով ապրելու համար» («Правда», 27 ноября, 1935 г.)։

Հայաստանի աշխատավորներին ռուս ժողովրդի ցույց տված անշահախնդիր օգնությունը սոցիալիստական շինարարության պայմաններում ժողովուրդների իրավահավասար ու բարեկամական հարաբերությունների գլխավոր պայմանը եղավ։ Սովետական Ռուսաստանի եղբայրական օգնությունը հայ ժողովրդին ռազմական, տնտեսական և քաղաքական բնագավառներում վճռական դեր խաղաց սովետական իշխանության, հատկապես Հայկական ՍՍՀ-ի իսկական անկախության ու սուվերեն իրավունքների պահպանման և ամրապնդման գործում։

Ժողովրդական տնտեսության վերականգնման, երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման, կուլտուրական հեղափոխության, նախապատերազմյան հնգամյակների վիթխարի պլանների կենսագործման համար իր մղած պայքարի ընթացքում Սովետական Հայաստանը մշտապես ու հետևողականորեն անգնահատելի օգնություն է ստացել ՌՍՖՍՀ-ից։

Այդ իսկ օգնության շնորհիվ Հայաստանում ստեղծվեցին բանվոր դասակարգի ազգային կադրեր, արագացավ սոցիալիստական հայ ազգի ձևավորման պրոցեսը։ Հայաստանի հարյուրավոր բանվորներ ու մասնագետներ սովորել և պրոֆեսիոնալ պատրաստություն են անցել Մոսկվայում, Լենինգրադում, Խարկովում, Դոնբասում և այլ վայրերում։ ՌՍՖՍՀ-ից Հայաստան ժամանած որակյալ բանվորներն ու գիտատեխնիկական կադրերն իրենց փորձն ու գիտելիքները, ինտերնացիոնալ կոփվածքը հաղորդում էին տեղական ազգային կադրերին, օգնում էին հանրապետության ինդուստրիայի ստեղծման ու զարգացման գործին։ Միայն 1933 թ. Սովետական Ռուսաստանի և Ուկրաինական ՍՍՀ-ի բուհերում ու տեխնիկումներում սովորում էին 5 հազարից ավելի հայեր («Братское содружество союзных республик в развитии народного хозяйства СССР», 1917—1971. М., 1973, с. 218)։

Սովետական ժողովուրդների անխախտ բարեկամության ու համագործակցության ամրապնդման, նրանց ինտերնացիոնալ դաստիարակության, ստեղծագործական ակտիվության բարձրացման կարևորագույն միջոց է դարձել մասսայական սոցիալիստական մրցությունը եղբայրական հանրապետությունների աշխատավորների միջև։ 1929 թ. սոցիալիստական մրցություն է ծավալվել էլեկտրատեխնիկական արդյունաբերության՝ Լենինգրադի, Խարկովի և Կիևի գործարանների ու Հայաստանի Ձորագէսի միջև։

Երկրի առաջավոր շրջանների կոլեկտիվացման փորձը, առանձին երկրամասերի ու մարզերի գյուղատնտեսական արտադրության զարգացման հաջողությունները դառնում էին Հայաստանի բոլոր կոլտնտեսությունների սեփականությունը։

Սովետական Ռուսաստանի և սովետական մյուս հանրապետությունների







հետ համատեղ աշխատանքով ու եղբայրական համագործակցությամբ ստեղծվում էր հայ ժողովրդի բովանդակությամբ սոցիալիստական և ձևով ազգային կուլտուրան։ Դրա շնորհիվ 1926-ից մինչև 1939 թ. ընկած ժամանակաշրջանում 9 տարեկանից բարձր գրագետ քաղաքացիների թիվը Հայաստանում 38,7 տոկոսից հասավ 83,9 տոկոսի (տե՛ս Итоги Всесоюзной переписи населения 1959 г., Арм. ССР. М., 1963, с. 27)։ Հայաստանի բուհերի ու տեխնիկումների ստեղծման ու արդյունավետ գործունեության բնագավառում հսկայական օգնություն ցույց տվեցին Մոսկվայի և Լենինգրադի բուհերը։ Ռուս գիտնականների օգնությամբ հանրապետությունում ստեղծվեցին մի շարք գիտահետազոտական հիմնարկություններ, փորձակայաններ, լաբորատորիաներ և այլն։ Այդ ամենը հնարավորություն ընձեռեց Հայաստանում բացելու ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի հայկական մասնաճյուղ, իսկ ապա՝ նաև գիտությունների ակադեմիա։

Հայրենական մեծ պատերազմի ահեղ տարիներին հայ ժողովուրդը պատվով կատարեց իր պարտքը հայրենիքի հանդեպ։ Հայազգի ռազմիկները ռուս մեծ ժողովրդի և Սովետական Միության մյուս եղբայրական ժողովուրդների զավակների հետ համատեղ անձնվիրաբար պաշտպանեցին մեր հայրենիքի ազատությունն ու անկախությունը։

Ետպատերազմյան ժամանակաշրջանում ՍՍՀՄ ժողովուրդները անձնվեր աշխատանքով վերականգնեցին երկրի ավերված տնտեսությունը, կարողացան բուռն տեմպերով զարգացնել էկոնոմիկան և կուլտուրան, հասնել բարեկեցության բարձրացման։

Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVIII համագումարը խոր ու հանգամանալից վերլուծեց տասնմեկերորդ հնգամյակում հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական արդյունքները։ Անցած տարիներին Սովետական Հայաստանի աշխատավորները նշանակալի հաջողություններ են ձեռք բերել տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում։ Հանրապետության տնտեսական պոտենցիալի աճը հնարավորություն տվեց ապահովել հնգամյակի հիմնական առաջադրանքների կատարումը բնակչության բարեկեցության հետագա բարձրացման ուղղությամբ։ Ժողովրդական տնտեսության հիմնական արտադրական ֆոնդերն աճել են ավելի քան երկու անգամ։ Կառուցվել են հարյուրավոր ձեռնարկություններ, արտադրամասեր ու տեղամասեր։ Ազգային եկամուտն աճել է 89 տոկոսով, արդյունաբերական արտադրությունը՝ 94,8, գյուղատնտեսական արտադրությունը՝ 45,6 տոկոսով։ Բնակչության մեկ շնչի հաշվով ռեալ եկամուտներն ավելացել են 37 տոկոսով։ Հետագա զարգացում են ապրել գիտությունը, կուլտուրան, ժողովրդական կրթությունը, սպասարկման ոլորտը։ Հաջողությամբ իրականացվում է պարենային ծրագիրը, որին մեծապես նպաստում է ագրոարդյունաբերական համալիրի դինամիկ զարգացումը։

Հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման 1985 թ. պետական պլանի և տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարման, ՍՄԿԿ XXVII համագումարն արժանավայել դիմավորելու համար ծավալված համամիութենական սոցիալիստական մրցության մեջ Հայկական ՍՍՀ-ն արդեն տասներորդ անգամ անընդմեջ հաղթող է ճանաչվել և արժանացել ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։

Կուսակցության տնտեսական ստրատեգիայի իրականացման գործում վճռական փուլ պետք է հանդիսանա տասներկուերորդ հնգամյակը։ Նախատեսված է առաջիկա 15 տարվա ժամանակաշրջանի վերջին կրկնապատկել ազգային եկամուտը, ստեղծել արտադրական այնպիսի պոտենցիալ, որն իր մասշտաբներով հավասար լինի բոլոր նախորդ տարիներին ձեռք բերվածին, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 2—2,5 անգամ։ Որպես գլխավոր խնդիր առաջադրված է էկոնոմիկայի զարգացման տեմպերի ու արդյունավետության բարձրացումը՝ գիտատեխնիկական առաջընթացի արագացման, արտադրության տեխնիկական վերազինման ու վերակառուցման հիման վրա։



Իրականացվելու է հանրապետության բոլոր մեքենաշինական ձեռնարկությունների տեխնիկական վերազինում, ավելի քան 60 արտադրական միավորումների, գործարանների ու մասնաճյուղերի վերակառուցում ու ընդլայնում։ Առավել կզարգանան մետալուրգիան և քիմիական արդյունաբերությունը։ Նախատեսված է զգալիորեն ընդլայնել ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը և բարելավել դրանց որակը, բարձրացնել տեխնիկական ու գեղագիտական մակարդակը։

Նոր հնգամյակում շարունակվելու է աշխատանքը՝ ագրոարդյունաբերական համալիրի մեջ մտնող ճյուղերի փոխադարձ կապն ու հաշվեկշռված զարգացումն ապահովելու նպատակով։ Կավարտվի գյուղատնտեսության փոխադրումը ինդուստրիալ հիմքի վրա՝ կոմպլեքսային մեքենայացման, քիմիացման, էլեկտրիֆիկացման, հողերի մելիորացման, ինտենսիվ տեխնոլոգիաների լայն արմատավորման միջոցով։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան միջին ծավալը կմեծանա 12—14 տոկոսով։ Հատուկ ուշադրություն կդարձվի հանրապետության ավտոմոբիլային, օդային ու երկաթուղային տրանսպորտի զարգացմանը։

«Հայ ժողովուրդը,— Հայաստանի կոմկուսակցության XXVIII համագումարում նշեց ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը,— ինչպես և ՍՍՀՄ մյուս ժողովուրդները, փորձով ավելի ու ավելի են համոզվում կուսակցության գլխավոր գծի, նրա իմաստուն լենինյան ազգային քաղաքականության ճշտության և արգասավորության մեջ, այն բանում, թե որպիսի մեծ երջանկություն է միասնական սովետական ընտանիքում ապրելը, թե առաջադիմության ու բարգավաճման ինչ հզոր և գործուն աղբյուր են սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամությունն ու եղբայրությունը, փոխօգնությունը, որոնք բազմապատկում են նրանցից յուրաքանչյուրի, մեր ամբողջ հասարակության ստեղծարար հնարավորությունները» (Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի հաշվետվությունը ՀԿԿ XXVIII համագումարին: «Հայաստան» հրատ., 1986, էջ 74)։

Հայաստանի կոմունիստներն իրենց կարևոր քաղաքական խնդիրն են համարում՝ ուժեղացնել լենինյան ազգային քաղաքականության պրոպագանդան, հասնել մեր հանրապետության բարգավաճմանը սովետական ժողովուրդների միասնական ընտանիքում, հմտորեն ու ժամանակին մերկացնել դաշնակների, բոլոր հետադիմական ուժերի թշնամական հերյուրանքները։

Վերջին տարիներին հանրապետության հասարակագետները, Մոսկվայի, Անդրկովկասի եղբայրական հանրապետությունների գիտնականների հետ ստեղծագործական համագործակցությամբ, ակտիվացրել են գործունեությունը ինտերնացիոնալիզմի և լենինյան ազգային քաղաքականության հրատապ պրոբլեմների ուսումնասիրման բնագավառում։ Դրա արդյունքը եղան մի շարք արժեքավոր աշխատություններ, որոնցում բացահայտվում են ազգային հարաբերությունների բազմապիսությունը, ինտերնացիոնալիզմի զարգացումը սոցիալիստական շինարարության փորձի հիման վրա։

Հանրապետության գիտությունների ակադեմիայի համակարգում արտասահմանյան գաղափարախոսական հոսանքների, սոցիալիստական ազգերի զարգացման ու մերձեցման պրոբլեմներով զբաղվող գիտական խորհուրդները որոշակի աշխատանք են կատարում լենինյան ազգային քաղաքականությունը պրոպագանդելու, ազգերի ու ազգային հարաբերությունների մասին բուրժուական կոնցեպցիաները մերկացնելու նպատակով։

Բուրժուական պրոպագանդայի դեմ մղվող գաղափարախոսական անհաշտ պայքարում մարքսիստ-լենինյանների առաջնահերթ պարտքն է՝ մինչև վերջ մերկացնել հակակոմունիստների հերյուրանքները ՍՄԿԿ-ի ազգային քաղաքականության մասին, արդյունավետորեն պայքարել ամեն կարգի կեղծարարությունների դեմ, լայնորեն պրոպագանդել մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը։

# ԱՊԱՀՈՎԵԼՈՎ ԽՈՍՔԻ ԵՎ ԳՈՐԾԻ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ

**Մ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ**
*ՀԿԿ Նաիրիի շրջկոմի առաջին քարտուղար*

ՊԱՅՄԱՆՆԵՐԸ, ՈՐՈՆՑՈՒՄ աշխատում և արարում են Նաիրիի շրջանի մարդիկ, անկեղծ ասած, դժվարին են. սահմանափակ, քարքարոտ և ոչ բերրի հողեր, խիստ ցամաքային կլիմա, սակավաջրություն։ Եթե դրանց ավելացնենք նաև մայիս—սեպտեմբեր ամիսներին փչող մշտական չոր քամիները, որոնք առաջացնում են մեծ չափի հասնող գոլորշիացում, բառացիորեն մի քանի ժամում չորացնում ոռոգված տարածությունները, ապա պատկերը պարզ կլինի։ Այդուհանդերձ, աշխատավորները, բնության հարուցած դժվարություններին հակադրելով իրենց եռանդը, կամքը, աշխատելով լարված ու պատասխանատվությամբ, հաջողությամբ են լուծում տնտեսությունների առջև ծառացած խնդիրները։ Վկայությունը՝ տասնմեկերորդ հնգամյակի բարձր արդյունքները։ Գյուղի աշխատավորները ժամկետից շուտ կատարեցին հնգամյա առաջադրանքները. պլանից ավելի մթերվեց 17.600 տոննա խաղող, 2.245 տոննա պտուղ, 5.000 տոննա կաթ, 1.537 տոննա միս, 21 միլիոն հատ ձու, գյուղատնտեսական այլ մթերքներ։ Ամեն մի կովից 1985 թ. ստացվեց 3.123 կգ կաթ, որն ամենաբարձր ցուցանիշն է հանրապետության գյուղական շրջանների մեջ։ Նոր Գեղիում կովերի միջին կաթնատվությունը հասավ 4.500, Նոր Երզնկայում՝ 5.055 կգ-ի։ Առաջավոր կթվորուհիներ, ՍՄԿԿ անդամության թեկնածու Ռ. Խաչատրյանը (Նոր Գեղի) իր խնամած ամեն մի կովից ստացավ 5.840 կգ, իսկ Թ. Ստեփանյանը (Նոր Երզնկա)՝ 5.770 կգ կաթ։ Նրանց մասին դրվատանքի խոսք ասվեց ՀԿԿ XXVIII համագումարում։

Հատկանշական է, որ շրջանի բոլոր տնտեսությունները անցած տարին փակեցին օգուտով։ Այն կազմեց ավելի քան վեց միլիոն ռուբլի։

Նշանակալի հաջողություններ են ձեռք բերել արդյունաբերության աշխատողները։ Նրանք հնգամյա պլանները կատարեցին երկու ամիս շուտ և պլանից դուրս թողարկեցին 23 միլիոն ռուբլու արտադրանք։ Անցած տարիներին զգալի դրական տեղաշարժեր կատարվեցին նաև տրանսպորտի, կապի, կենցաղի, առևտրի և ժողովրդական տնտեսության մյուս բնագավառներում։

Մեր մարդկանց ջանքերը պատշաճ կերպով գնահատվեցին. 1985 թ. և ամբողջությամբ տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու, համամիութենական սոցիալիստական մրցությունում հաղթող ճանաչվելու համար շրջանը շահեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը։ Իսկ «Զովունի» արտադրամիավորումը նույն պարգևին արժանացավ հնգամյակի բոլոր տարիներին, դրոշը հավերժ ի պահ տրվեց կոլեկտիվին։ Նրա անունը գրանցվեց ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի պատվո տախտակին։

Ինչո՞վ են պայմանավորված մեր այս ձեռքբերումները, որոնք հիմք են տալիս լավատեսորեն նայելու ապագային։ Ձեռնամուխ լինելով գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման կուրսի իրականացմանը, շրջանային կուսկազմակերպությունը շեշտը դրեց աշխատանքի կազմակերպման բարելավման, բոլոր տեղամասերում կարգապահության ամրապնդման, կադրերի պատասխանատվության բարձրացման, կատարման ստուգման ուժեղացման, խոսքի ու գործի միասնության ապահովման վրա։ Դրա համար հարկ եղավ շրջկոմի ապարատի, ագրոարդյունաբերական միավորման, մասնագետների ու գիտության ներկայացուցիչների միջոցով նորից ուսումնասիրել մեր հնարավորություններն ու ռեզերվները, խորամուխ լինել բացթողումների պատճառների մեջ, ուղիներ որոնել ճյուղի հետագա վերելքն ապահովելու համար։

Որպեսզի ակտիվը, կոմունիստները, բոլոր աշխատավորները ոչ միայն իմանան ձեռքբերումների ու թերությունների մասին, այլև պատկերացնեն սպասվելիք գործերի մասշտաբները, մասնակցեն դրանց իրականացմանը, մենք այդ ամենի շուրջ լուրջ խոսակցություն բացեցինք շրջկոմի պլենումներում, ակտիվի ժողովներում, շրջանային թերթում... Ինտենսիվացման մի շարք առանցքային հարցեր, ինչպես ցածր բերքատու այգիների վերակառուցումը, անասունների մթերատվության աճի ապահովումը, ցեղի բարելավումը, կերարտադրության կազմակերպումը և այլն, դրվեցին աշխատավորական կոլեկտիվների քննարկմանը։

Տնտեսությունների ղեկավարներին ու մասնագետներին գյուղատնտեսական գիտության նվաճումներին, աշխատանքի առաջավոր փորձին հաղորդակից դարձնելու նպատակով կուսշրջկոմին առընթեր ստեղծեցինք առաջավոր փորձի դպրոց, որոշեցինք դրա անելիքները։ Հաշվի առնելով այդ դպրոցի հանձնարարականները, շահագրգռված, գիտակ մարդկանց կարծիքը, ընդհանրացնելով առանձին կոլեկտիվներում եղած ուսանելի փորձը, հենվելով նաև գիտնականների խորհուրդների և կոնկրետ աջակցության վրա՝ մշակեցինք և գործի դրեցինք գյուղատնտեսության ինտենսիվացման լայն ծրագիր։ Դրանում ծանրակշիռ տեղ ունի կերարտադրության խնդիրը։ Որոշվեց կերի ճակնդեղը ներդնել բոլոր տնտեսություններում և էապես ամրապնդել կերի բազան։ Այդ արժեքավոր կերային կուլտուրային հատկացվեց 150 հեկտար տարածություն։ Գիտնականների խորհրդով դրա ցանքը կատարվում է սածիլման եղանակով, որի շնորհիվ բարձր բերք է ստացվում։

Հասկանալի է, որ այդ ճանապարհին ամեն ինչ հեշտ ու հարթ չանցավ։ Հարկ եղավ հաղթահարել ոչ քիչ թվով մարդկանց, այդ թվում և տնտեսական ղեկավարների ու մասնագետների մի մասի պասիվությունը, իներցիայի ուժը, էկոնոմիկայի էքստենսիվ զարգացման հոգեբանությունը։ Դրա համար հաճախ շրջկոմում, կուսակցական կազմակերպություններում զրուցում էինք նման մարդկանց հետ, համոզում նոր ձևով աշխատելու անհրաժեշտության մեջ։ Մրգաշենի, Արագյուղի և Բուժականի պետական տնտեսությունների ղեկավարները պահպանողականություն էին դրսևորում կերի ճակնդեղի ներդրման հարցում և ուղղակի հրաժարվում էին ցանել։ Նրանց հրավիրեցինք կուսշրջկոմ, զրուցեցինք, մասնագետները հիմնավորեցին դրա անհրաժեշտությունը։ Այժմ այդ տնտեսությունները ևս կերի ճակնդեղ են ցանում ու լավ բերք ստանում։ Ներկայումս շատ ուսանելի բաներ կարելի է ընդօրինակել Զովունիի, Քանաքեռավանի, Նոր Երզնկայի պետական տնտեսություններից, որոնց ղեկի մոտ երկար տարիներ կանգնած են փորձառու դիրեկտորներ Մ. Սիմոնյանը, Ս. Ջուհարյանը, Ս. Մելքոնյանը։

Իսկ որքա՜ն նախաձեռնություններ են ծնունդ առնում Ց. Խաչատրյանի գլխավորած Նոր Գեղիի սովխոզ-տեխնիկումում։ Այս տնտեսությունը հանրապետությունում առաջիններից մեկը ձեռնամուխ եղավ ինտենսիվ պտղաբուծությանը և ներկայումս ունի 350 հեկտար այդպիսի այգի։ Առաջընթացը շոշափելի է նաև անասնապահության բնագավառում։ Անցած հնգամյակում ֆերմայում կովերի գլխաքանակը շուրջ հիսուն տոկոսով ավելացնելու պայմաններում դրանց միջին կաթնատվությունը բարձրացավ 1.500 կգ-ով և 1985 թ. հասավ 4.500 կգ-ի։ Այդ բնագծի նվաճումն օրինաչափ էր, քանի որ տնտեսությունում հետևողական, համակողմանի աշխատանք է տարվում

արտադրության մեջ ինտենսիվ տեխնոլոգիայի արագ ներդրման, մարդկային գործոնի դերի բարձրացման, խոսքի և գործի միասնության ապահովման համար։ Այստեղ յուրաքանչյուր խոսք, որ ասվում է, նախապես լրջորեն կշռադատվում է, հաշվի առնվում կատարման հնարավորությունը։ Ղեկավարները խոստացան տնտեսությունը բարձրացնել՝ բարձրացրին, խոստացան գյուղում իրականացնել սոցիալ-կուլտուրական լայն շինարարություն, կառուցել հարմարավետ բնակարաններ ու առանձնատներ, բարեկարգել փողոցներն ու բակերը՝ կատարեցին։ Եվ մարդիկ հավատում են ասված խոսքին, գնում ղեկավարների, ակտիվի ետևից, դիմում աշխատանքային խիզախումների։

Պարզ է, որ նման պայմաններում կարելի է համարձակորեն ձեռք զարկել ավելի բարդ ու մեծ գործերի։ Մեկնակետ ունենալով ՍՄԿԿ XXVII և ՀԿԿ XXVIII համագումարների պահանջները, տասներկուերորդ հնգամյակի լարված խնդիրները՝ Նոր Գեղիի սովխոզ-տեխնիկումում մշակվել և գործողության մեջ է դրվել տնտեսական և սոցիալական զարգացման ծավալուն ծրագիր։ Նախատեսվում է մինչև 1990 թվականը եռապատկել պտղի արտադրությունը և տարեկան հավաքել 5.000 տոննա բերք, 30—35 տոկոսով ավելացնել կովերի գլխաքանակը և ամեն մեկից ստանալ հինգ հազար կգ կաթ կամ կաթի համախառն արտադրությունը հասցնել 2.000 տոննայի, խոշոր եղջերավոր անասունները մթերակայան հանձնել 500 կգ-ից ոչ պակաս քաշով։ Զգալի գործ է արվելու արտադրության մեջ նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի, գիտության նվաճումների, աշխատանքի կազմակերպման առաջավոր ձևերի ու մեթոդների ներդրման, սոցիալական զարգացման ասպարեզներում։ Տնտեսության բոլոր ստորաբաժանումներում այժմ կիրառվում է կապալային եղանակը, որը մեծապես խթանում է արտադրության վերելքը։

Խոսքի և գործի միասնության առնչությամբ հատկանշական է Զորավանի տավարի մատղաշի աճեցման ու բտման համալիրի կոլեկտիվի օրինակը։ Նախկինում նրա ղեկավարները լավ խոստումներ էին տալիս, չհիմնավորված պարտավորություններ ստանձնում։ Տարին ավարտվում էր, իսկ արդյունքը չէր գոհացնում, խոսքը, ինչպես ասում են, մնում էր թղթի վրա։ Դա մեզ շատ էր անհանգստացնում։ Անհրաժեշտ եղավ շրջկոմի բաժինների միջոցով համակողմանիորեն ուսումնասիրել իրավիճակը և արդյունքները քննարկել բյուրոյի նիստում։ Պարզեցինք, որ թերացումները շատ են։ Ամենագլխավորը՝ ղեկավարների և մասնագետների մեջ պակասում էր նորի զգացումը, ցածր էր պատասխանատվությունը, թույլ էր պահանջկոտությունն իրենց և ուրիշների նկատմամբ և այլն։ Դրությունը շտկելու նպատակով մշակեցինք գործնական միջոցառումներ, կոնկրետ հանձնարարություններ տվեցինք շրջկոմի բաժիններին, գյուղվարչությանը, արվեցին նաև կազմակերպական հետևություններ. շրջանի մի շարք լավագույն մասնագետների գործուղեցինք այնտեղ։

Եվ ի՞նչ։ Հետզհետե արմատական բարեփոխումներ կատարվեցին համալիրում, փոխվեց մարդկանց վերաբերմունքը գործի նկատմամբ, մրցություն ծավալվեց նրանց միջև, ամեն ոք սկսեց աշխատել տիրոջ սրտացավությամբ ու նվիրումով, հարգել ու գնահատել իր խոսքը։ Բարելավվեց անասունների կերակրումն ու խնամքը։ Բարձրացվեց անասնապահների շահագրգռությունը բարձր վերջնարդյունքի համար։ Եվ, ահա, այդ ամենի տրամաբանական արդյունքը. 1985 թվականին, նախատեսված 3.000-ի փոխարեն, համալիրն արտադրեց 3.218 տոննա միս, անասունները մթերակայան հանձնեց 380 կիլոգրամ միջին կենդանի քաշով և ստացավ ավելի քան երեք միլիոն ռուբլու շահույթ։

Խոսքի և գործի միասնության դրական օրինակներ կան «Սապֆիր» և «Զովունի» արտադրամիավորումներում, «Ռեմդետալ» գործարանում, այլ կոլեկտիվներում։ Տասնմեկերորդ հնգամյակի սկզբին «Մեկ հնգամյակում՝ երկու հնգամյակի առաջադրանք» հայրենասիրական նախաձեռնությամբ հանդես եկավ «Սապֆիր» արտադրամիավորման առաջավոր բանվորուհի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Լ. Ղազարյանը։ Այդ շարժմանը



արձագանքեցին մեծ թվով աշխատակիցներ նույն կոլեկտիվից, «Զովունի» արտադրամիավորումից, նաև՝ գյուղատնտեսության բնագավառից։ Արդյունքը եղավ այն, որ 150-ից ավելի բանվորներ կատարեցին իրենց խոստումը։ Մեծ թվով բրիգադներ, արտադրամասեր, տնտեսություններ հնգամյա պլանների կատարման մասին զեկուցեցին 1983—1984 թվականներին։ 1985 թ. արդյունաբերական հինգ ձեռնարկություններ, 20-ից ավելի արտադրամասեր ու բրիգադներ 2—3 օր աշխատեցին խնայված հումքի հաշվին։

Խոսքի և գործի միասնության պահանջը գործունեության սկզբունք, մշտական նշանաբան է «Ռեմդետալ» գործարանի կոլեկտիվի համար։ Նա հանդես եկավ «Թողարկվող արտադրանքը՝ միայն բարձր որակի» նախաձեռնությամբ։ Եվ որպեսզի այն տարածվի, արմատավորվի, կուսկազմակերպությունը և դիրեկցիան չթուլացող հսկողություն սահմանեցին պարտավորության կատարման նկատմամբ, դրան ուղղեցին ինժեներների ու բանվորների ստեղծագործ միտքը, ներքին ռեզերվները, մարդկանց շահագրգռելու միջոցները, աշխատանքի կազմակերպման արդյունավետ մեթոդները։ 1982—1985 թթ. գործարանի արտադրած մի քանի տեսակի հաստոցներ ու սարքեր Կիևում, Մոսկվայում, Լայպցիգում կազմակերպված ցուցահանդեսներում արժանացան դիպլոմների։ Այժմ կոլեկտիվը զբաղված է ժողովրդատնտեսական կարևոր նշանակության մի շարք խնդիրների լուծմամբ։ Հատկապես ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան (1985 թ.) պլենումից հետո այստեղ ծավալուն աշխատանքներ են ձեռնարկվել արտադրության ինտենսիվացման, գիտատեխնիկական նվաճումների ներդրման նպատակով։ Գրեթե պատրաստ է գիպսից միջնորմային պատերի սալիկներ արտադրող ավտոմատ գիծը։ Նոր սալիկները և՛ տեսքով, և՛ որակով անհամեմատ լավ են ներկայումս թողարկվող սալիկներից։ Բայց էականն այն է, որ դրանք բացառում են հարդարման աշխատանքները և կտան շինանյութերի, աշխատաժամանակի ու ֆինանսական միջոցների հրակայական խնայողություն։ Փորձարկվում է պոլիէթիլենային խողովակների եռակցման նոր հարմարանք։ Դա հնարավորություն կտա եռակցել տարբեր տրամաչափերի խողովակներ, որոնք կօգտագործվեն կոյուղիների, ստորգետնյա և վերգետնյա այլ կոմունիկացիաների համար։ Դրանք շատ երկարակյաց են և հնարավորություն կտան խնայել մեծ քանակությամբ մետաղյա խողովակներ։

Իհարկե, միշտ չէ, որ հաջողվում է մարդկանց բարձրացնել ներկա պահանջների մակարդակին։ Երբեմն չեն օգնում ո՛չ զրույցները, ո՛չ քննադատությունը, ո՛չ հաշվետվությունները, ո՛չ անգամ տույժերը։ Պարզապես մարդը ընդունակ չէ վերակառուցելու իրեն։ Կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները նման դեպքերում դիմում են կտրուկ միջոցների։

Շրջանի համար լուրջ պրոբլեմ է շինարարությունը։ Տարեկան նախատեսվում է իրացնել ավելի քան 30 մլն ռուբլու կապիտալ ներդրումներ։ Հարկ չկա ապացուցելու, որ կառուցվելիք յուրաքանչյուր օբյեկտ շրջանի համար ունի կենսական նշանակություն։ Բայց ի՞նչ է ստացվում։ Այն, որ առանց օբյեկտիվ լուրջ պատճառների շինարարները ձախողում են պլանների կատարումը։ Անցած հնգամյակի ոչ մի տարում լրիվ չկատարվեցին կապիտալ ներդրումների իրացման, բնակարանային շինարարության առաջադրանքները, չպահպանվեցին օբյեկտների շահագործման ժամկետները։ Չի գոհացնում նաև շինարարության որակը։ 1981—1985 թթ. աշխատավորները պակաս ստացան մոտ 15 հազար քմ բնակելի տարածություն։ Լուսակերտի թռչնաբուծական ֆաբրիկան, որը կարևորագույն օբյեկտ է և պետք է լրիվ կարողությամբ գործարկվեր 1983 թվականին, դեռևս կառուցվում է։

Մենք հաճախ էինք շրջկոմ հրավիրում շինարարության ղեկավարներին, լինում օբյեկտներում, զրուցում մարդկանց հետ, անցկացնում խորհրդակցություններ, օգնում շինարարներին։ Ամեն անգամ նրանցից շատերը տալիս էին լավ խոստումներ։ Բայց տարին ավարտվում էր, իսկ խոստումը չէր կատարվում։ Շինարարության մի շարք ղեկավարներ, անհրաժեշտ հետևություններ անելու փոխարեն, փորձում էին իրենց համար վահան դարձնել անցած տա-

րիների վաստակը։ Ոմանք մեծամտացել էին, կորցրել իրենց գործունեությունը քննադատաբար, սթափ վերլուծելու, տնտեսավարման քաղաքական իմաստը տեսնելու կարողությունը։ Հարկ եղավ ազատվել նրանցից։ Աշխատանքից հեռացվեցին № 48 ՇՄՇ-ի պետ Հ. Առուստամյանը, № 23 ՇՄՇ-ի գլխավոր ինժեներ Ժ. Վարդանյանը, № 29 ՇՄՇ-ի պետ Վ. Աչիկյանը, գլխավոր ինժեներ Հ. Բրուտյանը, «Հայայգեգործ» մասնագիտացված տրեստի Նաիրիի միջշրջանային տեղամասի պետ Վ. Պետրոսյանը և ուրիշներ։ Նրանց փոխարեն առաջադրեցինք նոր մարդկանց, աստիճանաբար ամրապնդեցինք կադրերը շինարարության մեջ։ Գործնական միջոցներ են ձեռնարկվել այդ բնագավառում վիճակն արմատապես բարելավելու համար։

Պահանջկոտությունը կադրերի նկատմամբ ենթադրում է չշտապել կազմակերպական միջոցների դիմելիս։ Եթե աշխատողն ի վիճակի է ուղղելու սխալները, կուսակցականորեն վերաբերվելու քննադատությանը, ապա նրան պետք է օգնել, ուղղել, հնարավորություն տալ դրսևորելու իրեն։ Չէ՞ որ մարդիկ հմտանում են հենց գործի մեջ, սովորում նաև սխալների վրա։ Ահա այդ իրողությունը հաստատող մեկ կոնկրետ օրինակ։ ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան (1982 թ.) պլենումից հետո կուսշրջկոմի բյուրոն անդրադարձավ Պռոշյան գյուղի պետական տնտեսության գործունեությանը։ Խիստ կերպով քննադատվեց տնտեսության դիրեկտոր Հ. Մանուկյանի աշխատանքի ոճը, արտադրության մեջ աշխատանքի նոր մեթոդների ու տեխնոլոգիաների ներդրման, արդյունավետության բարձրացման գործում նրա դանդաղկոտությունը։ Նրան տրվեց կուսակցական տույժ։ Այդ մասին տեղյակ պահվեց կուսկազմակերպությանը, տնտեսության բանվորներին։ Նման վճիռը դրական նշանակություն ունեցավ։ Դիրեկտորն ակտիվացավ, սկսեց աշխատել եռանդուն ու արդյունավետ։ Տնտեսությունը հիմնական ցուցանիշներով հաջողությամբ ավարտեց անցած հնգամյակը։ Բնակավայրում շուտով սկսվելու են գազիֆիկացման աշխատանքները, վերակառուցվում է կոյուղին, կառուցվում են կուլտուր-կենցաղային օբյեկտներ։

Հարկ է ասել նաև հետևյալը. միշտ չէ, որ խոսքը գործի չվերածելը պայմանավորված է միայն սուբյեկտիվ պատճառներով։ Կան նաև օբյեկտիվ խոչընդոտներ։ Դա վերաբերում է և՛ անկանոն մատակարարումներին, և՛ տնտեսական մեխանիզմի թերություններին, և՛ կոլեկտիվների անդամների թույլ շահագրգռությանը։ Սրանք լուրջ պրոբլեմներ են, որոնց անդրադարձավ կուսակցության XXVII համագումարը։ Այժմ շատ բան պայմանավորված է ղեկավար և միջին օղակի կադրերի, մասնագետների նախաձեռնությամբ ու պատասխանատվությամբ, շրջկոմի, սկզբնական կազմակերպությունների խստապահանջությամբ ու գործունեության ոճով, նոր խնդիրների ոգով աշխատանքը վերակառուցելու կարողությամբ։ «Կուսակցության մեջ չկան և չպետք է լինեն վերահսկողությունից դուրս, քննադատության առաջ փակ կազմակերպություններ, չկան և չպետք է լինեն կուսակցական պատասխանատվությունից պատնեշված ղեկավարներ»։ ՍՄԿԿ XXVII համագումարի այս պահանջները մեզ համար գործողության ուղեցույց են։

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ներկա շրջադարձային փուլում առաջնահերթ նշանակություն ունի ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ կուսկազմակերպությունների վերահսկողության ուժեղացումը։ Չէ՞ որ ամեն մի վրիպում, հապաղում կարող են բացասական ազդեցություն ունենալ առաջընթացի վրա։ Այդ բանը բացառելու և խոսքի ու գործի միասնությունն ապահովելու նպատակով շրջկոմում, կուսկազմակերպություններում և կուսխմբերում հաճախ են լսվում առանձին ճյուղերի և ձեռնարկությունների ղեկավարների, մասնագետների, կոմունիստների ինֆորմացիաներն ու հաշվետվություններն իրենց գործունեության վերաբերյալ։ Ծավալվում է առողջ քննադատություն։ Դա օգնում է շտկելու շատ վրիպումներ, վերացնելու թերություններն ու թերացումները։

Հենց վերջերս շրջկոմի բյուրոյում քննարկեցինք Արագյուղի պետական տնտեսության դիրեկտոր Ա. Ղուկասյանի հաշվետվությունը։ Մեր նպատակն էր պարզել, թե տնտեսությունում ինչ է արվում արտադրության ինտենսիվացման վերաբերյալ ՍՄԿԿ XXVII համագումարի պահանջները կատարելու համար։ Բանն այն է, որ այստեղ անասունների մթերատվությունը ցածր է շրջանի միջինից, անբավարար են օգտագործվում արտադրության բարձրացման առկա հնարավորությունները։ Պարզ է՝ գործնական միջոցառումներ մշակեցինք վիճակը արմատապես կարգավորելու համար։ Տնտեսության ղեկավարության, կոմունիստների ուշադրությունը մասնավորապես հրավիրեցինք անասունների ցեղի, խնամքի ու կերակրման բարելավման, կերարտադրության գործի պատշաճ կազմակերպման, մեքենայացման մակարդակի բարձրացման և մի շարք այլ խնդիրների լուծման վրա։

Շրջանում և հանրապետությունում բարի անուն են վայելում «Սապֆիր» և «Ջոլունի» արտադրամիավորումները։ Բայց դա բնավ էլ չի նշանակում, թե այդ ձեռնարկություններն ու նրանց ղեկավարները զերծ են թերություններից։ Շրջկոմի պլենումներում լսվել են միավորումների գլխավոր դիրեկտորներ Ա. Հարությունյանի և Կ. Զաքարյանի զեկուցումները։ Եվ նրանց հասցեին ասվել են ոչ միայն գովեստի խոսքեր, այլև եղել է անաչառ, օգնող քննադատություն՝ թերությունների ու վրիպումների համար։ Դա մասնավորապես վերաբերում է պայմանագրային պարտավորությունների կատարմանը; տեխնիկական վերազինմանը, արտադրանքի որակին, խնայողության ռեժիմի կիրառմանը, աշխատանքային կարգապահության ամրապնդմանը։ Շատ ղեկավարների հաշվետվություններ լսվել են կուսկազմակերպություններում։ Շրջանային «Նաիրի» թերթը բացել է «Ով ինչպես է կատարում իր խոստումը», «Ստուգում ենք սոցիալիստական պարտավորությունների կատարումը» մշտական խորագրեր։ Թերթի էջերում դրական օրինակների կողքին կան նաև քննադատական նյութեր այն մարդկանց ու կոլեկտիվների մասին, որոնք չեն ապահովել նախատեսված առաջադրանքների կատարումը։ Նման մոտեցումը կադրերին պահում է զգոն և սթափ վիճակում, ստիպում է նրանց որոնել ու գտնել աշխատանքի բարելավման նոր լծակներ, նպաստում է նրանց գործունեության հետագա բարելավմանը։

Պրակտիկա են դարձել կադրերի ատեստավորումը, ստորաբաժանումների ղեկավարներին հրապարակայնորեն բնութագիր տալը։ Ըստ էության, ոչ մի աշխատող դուրս չի մնում հսկողությունից, գիտի իր տեղն ու դերը գիտատեխնիկական առաջադիմության, արտադրության ինտենսիվացման, ձեռնարկության զարգացման գործում։ Այս առումով կարելի է հիշատակել «Սապֆիր» արտադրամիավորման, «Ռեմդետալ» գործարանի, Նոր Երզնկայի, Մրգաշենի, Ջոլունիի պետական տնտեսությունների, տրակտորների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հարավային մասնաճյուղի և այլ կազմակերպությունների դրական աշխատանքը։

Խոսելով խոսքի ու գործի միասնության մասին, անհրաժեշտ է նկատի ունենալ այնպիսի սուր և կարևոր պրոբլեմ, ինչպիսին կադրերի հետ տարվող աշխատանքն է՝ նրանց ընտրությունը, ճիշտ տեղաբաշխումը, դաստիարակությունը։ Հայտնի ճշմարտություն է, եթե մարդու գործիմացությունը, կազմակերպչական ընդունակությունները, բարոյական կերպարը չեն համապատասխանում գրաված տեղի մակարդակին ու պահանջներին, ապա նույնիսկ տևական օգնություն ցույց տալու դեպքում էլ դժվար է հաջողություն ակնկալել։ Սխալներից զերծ մնալու համար կուսշրջկոմը խորհրդակցում է այն կուսկազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների հետ, որտեղից առաջ է քաշվելու կադրը։ Չէ՞ որ ոչ ոք այնպես լավ չի կարող ճանաչել մարդուն, իմանալ նրա արժանիքներն ու թերությունները, որքան նրա կողքին աշխատողը։ Բազմաթիվ օրինակներից նշեմ մեկը։ Մի քանի տարի առաջ Լուսակերտի թռչնաբուծական ֆաբրիկայի կուսկազմակերպության ժողովում ձեռնարկության անասնաբույժ, ՍՄԿԿ անդամ Ա. Աղաջանյանի հաշվետվությունը լսելիս կոմունիստները դրվատեցին նրա այնպիսի հատկանիշները, ինչպիսիք են գործի նկատմամբ պատասխանատվության զգացումը, նախաձեռնությունը, նոր պահանջների ոգով աշխատելու ընդունակությունը։ Նրա անունը մտ-

ցրվեց կադրերի ռեզերվում։ Շրջկոմի աշխատողները հաճախակի հանձնարարություններ էին տալիս նրան, հետևում կատարմանը։ Եվ երբ առաջացավ Գետամեջի թռչնաբուծական գործարանը կադրերով ամրապնդելու անհրաժեշտությունը, դիրեկտորի պոստի համար շրջկոմը համարձակորեն առաջ քաշեց Ա. Աղաջանյանի թեկնածությունը։ Անցել է բավական ժամանակ, և նոր դիրեկտորի գլխավորությամբ ձեռնարկությունը բռնել է վերելքի ուղին։ Տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների կատարման մասին գործարանը զեկուցեց Մեծ հաղթանակի 40-ամյակի նախօրյակին։

Բարձր պահանջկոտության ու հոգատարության պայմաններում աճում և հասունանում են մեր կադրերը։ Ստեղծել ենք կադրերի ռեզերվ, որի հետ տարվում է սիստեմատիկ աշխատանք, արժանավորները ըստ մասնագիտական և գործարար տվյալների առաջ են քաշվում, կոփվում ինքնուրույն գործունեության բովում։ Կարճ ժամանակամիջոցում իրենց դրականորեն են դրսևորել Մրգաշենի պետական տնտեսության դիրեկտոր Մ. Եգորյանը, ճանշինտեղամասի պետ Մ. Շահնազարյանը, կենցաղսպասարկման արտադրական վարչության պետ Գ. Ավետիսյանը, Զորավանի համալիրի կուսկազմակերպության քարտուղար Ս. Վանյանը և ուրիշներ։

Խոսքի և գործի միասնությունը հասարակական կեցության սկզբունքային գործոններից է։ ՍՄԿԿ XXVII համագումարում ընկեր Մ. Ս. Գորբաչովը Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ ուղղակի նշեց. «Ասվածի և արվածի ամեն մի անհամաձայնություն վնաս է հասցնում գլխավորին՝ կուսակցական քաղաքականության հեղինակությանը, և դա չի կարելի հանդուրժել ոչ մի ձևով։ Կոմունիստական կուսակցությունը խոսքի և գործի միասնության կուսակցություն է։ Դա պետք է հիշի ամեն մի ղեկավար, ամեն մի կոմունիստ։ Սովետական ժողովուրդը հենց խոսքի ու գործի միասնությամբ է դատելու մեր աշխատանքի մասին»։

Ելնելով ՍՄԿԿ XXVII և ՀԿԿ XXVIII համագումարների որոշումների ոգուց, տասնմեկերորդ հնգամյակի առանձնահատկություններից՝ շրջկոմը, սկզբնական կազմակերպությունները սովետական, տնտեսական և համապատասխան վերադաս այլ մարմինների հետ մշակել ու գործողության մեջ են դրել շրջանի տնտեսական և սոցիալական զարգացման տասներկուերորդ հնգամյակի և հաջորդ տարիների հեռանկարային ծրագիրը։ Դրանց բարդությունն ու լարվածությունը ցույց տալու համար հիշատակեմ մի քանի թվեր։ Արդյունաբերական արտադրանքի արտադրությունը հնգամյակում աճելու է 50—55 տոկոսով և 1990 թվականին հասնելու է մոտ 200 մլն ռուբլու։ Եվ դա հիմնականում ձեռնարկությունների տեխնիկական վերազինման, ներքին ռեզերվների մոբիլիզացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, կարգուկանոնի ամրապնդման, արտադրության կատարելագործման միջոցով։

Բարձր բնագծերի համար են պայքարում ագրոարդյունաբերական համալիրի աշխատողները։ Առաջիկա հինգ տարում նրանց խնդիրն է մոտավորապես կրկնապատկել գյուղատնտեսության արտադրանքի ծավալը՝ այն 26 մլն ռուբլուց հասցնել 50 մլն ռուբլու։ Ի՞նչ նախադրյալներ և հիմքեր կան այդ ճյուղում նման թռիչք ապահովելու համար։ Վերջին տարիներին քիչ բան չի արվել անասնապահության և բուսաբուծության ինտենսիվացման նպատակով։ Վերցնենք այգեգործությունը։ Խաղողագործության ասպարեզում մեր խնդիրն է, այգիների տարածությունների կրճատման պայմաններում, ավելացնել համախառն բերքը՝ բարձր բերքատու սորտերի արմատավորման, մշակության բարելավման, աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործման միջոցով։ Բավական աշխատանք կատարված է, սակայն պետք է այն շարունակել ավելի արդյունավետորեն, որպեսզի հնգամյակի վերջին խաղողի միջին բերքատվությունը մեր նախալեռնային գոտում հասցվի 100 ցենտների։ Տասներորդ հնգամյակում այդ ցուցանիշը եղել է 38,5, տասնմեկերորդում՝ 62 ցենտներ։ Առաջիկա հինգ տարում պտղի արտադրությունը ինտենսիվացման գործոնի հաշվին կաճի 2,5—3 անգամ և տարեկան կհասնի



15—16 հազար տոննայի։ Առաջընթացից անմասն չի մնա անասնապահությունը։ Այդ նույն ժամանակամիջոցում կկրկնապատկվի ձվի և թռչնի մսի արտադրությունը, 30—40 տոկոսով կաճի կաթի, 15—20 տոկոսով՝ տավարի մսի արտադրությունը։ Հնգամյակի վերջին տարում կովերի միջին կաթնատվությունը կհասնի 3.500 կգ-ի կամ 1985 թ. համեմատությամբ կավելանա 400 կիլոգրամով։

Շրջանում կիրականացվի նաև մեծ ծավալի շինարարություն։ Լրիվ կարողությամբ շահագործման կհանձնվի Լուսակերտի թռչնաբուծական ֆաբրիկան, կավարտվի Քարաշամբի և Արագյուղի անասնապահական համալիրների, համակցված կերի գործարանի, «Սպորտ» ֆաբրիկայի շինարարությունը։ 1990 թվականին նախատեսված է ավարտել 228 մլն խմ տարողությամբ Եղվարդի ջրամբարի գործարկումը։ Կկառուցվեն մի շարք ուրիշ արտադրական, կուլտուր-կենցաղային օբյեկտներ, այդ թվում շրջկենտրոնի և Նոր Գեղիի մշակույթի պալատները, ֆիզիոթերապևտիկ հիվանդանոցի Լուսակերտի նոր մասնաշենքերը, հարյուրավոր ընտանիքներ կստանան նոր բնակարաններ։ Զգալի վերափոխումներ են կատարվելու մյուս բնագավառներում։

Նման խնդիրներ լուծելու համար, իսկ դրանք անպայման պետք է լուծվեն, անհրաժեշտ է կշռադատված, հետևողական, կոմպլեքսային աշխատանք, անհրաժեշտ է, ինչպես պահանջեց ՍՄԿԿ XXVII համագումարը, մտահղացումների եռանդը վերածել գործողությունների եռանդի, խոսքը, նախանշված ծրագիրը վերածել գործի։ Մեր մարդիկ պետք է հստակորեն իմանան իրենց անելիքները, իրենց տեղն ու դերը ընդհանուր գործում, մշտապես տեսնեն, զգան մեր գաղափարախոսության մեծ ճշմարտությունը, կուսակցության քաղաքականության սկզբունքայնությունը, մեր ծրագրերի ռեալությունն ու դրանց իրականացման գործում հանդես բերվող անհողդողդ վճռականությունը։ Իսկ դրա համար, ինչպես ՀԿԿ Կենտկոմի 1986 թ. ապրիլյան պլենումում նշեց Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը, «Պետք է ձեռնամուխ լինել գործին, կտրուկ փոխել կադրերի հոգեբանությունը, գտնել աշխատանքի այնպիսի կոնկրետ ձևեր, որոնք համապատասխանեն ժամանակի ոգուն։ Կարևոր է ուշադրությունը կենտրոնացնել գլխավոր ուղղություններում ու դժվար տեղամասերում, ամենուրեք ամրապնդել կարգուկանոնը, կարգապահությունը, բարձրացնել կազմակերպվածությունն ու պատասխանատվությունը»։

Այսօր մենք ականատես ենք սկզբունքային, դրական փոփոխությունների. երևան են գալիս նոր չափանիշներ, ծնունդ առնում նոր նախաձեռնություններ։ Լարված պարտավորություններ են ստանձնել շրջանի արտադրամիավորումներն ու գործարանները, Զորավանի համալիրը, Լուսակերտի թռչնաբուծական ֆաբրիկան, Նոր Գեղիի, Նոր Երզնկայի, Զովունիի պետական տնտեսությունները, այլ ձեռնարկություններ ու կազմակերպություններ։ «Սապֆիր» արտադրամիավորումում սկսվել է հայրենասիրական նոր շարժում՝ «Հնգամյակի առաջին երկու տարվա պլանները՝ Մեծ Հոկտեմբերի 70-ամյակի նախօրյակին» նշանաբանով, «Զովունի» արտադրամիավորումում ծնունդ է առել «Մեծ Հոկտեմբերի 70-ամյակին 70 հարվածային շաբաթ» նախաձեռնությունը։

Կուսշրջկոմն իր պարտքն է համարում պաշտպանել ու տարածել դրանք, աշխատավորական լայն մասսաների ուժն ու եռանդը նպատակամղել հնգամյակի խնդիրների լուծմանը, ակտիվացնել աճի ինտենսիվ գործոնները, վերակառուցել մարդկանց հոգեբանությունը։ Այսպիսին են մեր առաջընթացի կարևոր պայմանները։ Դրանց են ուղղված Նաիրիի շրջանի կուսակցական կազմակերպությունների, բոլոր կոմունիստների ջանքերը։ Եվ այդ ջանքերի արդյունքն ավելի ծանրակշիռ կլինի, եթե արտադրության բոլոր օղակներում ամրապնդվի կարգուկանոնը, ապահովվի խոսքի և գործի սերտ միասնությունը։

---

# ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՀԱՄԸՆԴՀԱՆՈՒՐ ԴԻՍՊԱՆՍԵՐԱՑՈՒՄԸ ԺԱՄԱՆԱԿԻ ՊԱՀԱՆՋՆ Է

**Վ. ՀԱԿՈԲՅԱՆ**
Բժշկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր
**Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
Բժշկական գիտությունների թեկնածու, դոցենտ

**Ուժեղացնել առողջապահության կանխարգելիչ ուղղվածությունը, բարձրացնել բժշկական սպասարկման որակը և սկսել անցումը ամբողջ բնակչության ամենամյա դիսպանսերացման:**

*(ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններից):*

Ժողովրդի առողջության պահպանումն ու ամրապնդումը եղել և մնում են կոմունիստական կուսակցության ու սովետական պետության ամենօրյա ուշադրության կենտրոնում: ՍՄԿԿ համագումարների, կուսակցության Կենտկոմի պլենումների որոշումներում, փաստաթղթերում առանձնահատուկ ուժով է դրսևորվել մեր պետության հոգատարությունը բնակչության բարեկեցության անշեղ աճի, նյութական ու կուլտուրական պահանջմունքների բարելավման նկատմամբ:

ՍՄԿԿ XXVII համագումարում ըստ ամենայնի կարևորվեց պրոֆիլակտիկ միջոցառումների պատշաճ կազմակերպումը՝ սովետական մարդկանց կյանքի միջին տևողության և աշխատանքային ակտիվության բարձրացման, բնակչության ֆիզիկական ու սանիտարահիգիենիկ դաստիարակության հետագա բարելավման նպատակով: Այդ ամենի կենսական անհրաժեշտությունը շեշտված է նաև ՍՄԿԿ ծրագրում:

Պրոֆիլակտիկան սովորաբար բաժանվում է երկու մասի՝ առաջնային և երկրորդային: Առաջնայինը այլ կերպ կոչվում է նաև սոցիալական պրոֆիլակտիկա և բժշկականից բացի ընդգրկում է նաև սոցիալ-տնտեսական բնույթի բազմապիսի միջոցառումներ (բնակչության կենսամակարդակի աճ, շրջակա միջավայրի բարվոքում, մարդկանց աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավում), որոնց նպատակն է վերացնել կամ նվազագույնի հասցնել հիվանդությունների առաջացման սոցիալական պատճառներն ու պայմանները, կանխել սուր և խրոնիկական ընթացք ունեցող զանազան հիվանդությունները: Առաջնային կանխարգելման հարցում այժմ մեծ ուշադրություն է նվիրվում, այսպես կոչված, «ռիսկի գործոններին» (ոչ ռացիոնալ սնուցում, սակավաշարժություն, ավելորդ քաշ, կենցաղային վնասակար սովորությունների չարաշահում և այլն): Բժշկական տեսությունն ու պրակտիկան հավաստիորեն ապացուցել են, որ այդ գործոնների մեծ մասն ընդհանուր է ժամանակակից ախտաբանության հիմքը կազմող խրոնիկական ոչ ինֆեկցիոն շատ հիվանդությունների համար և, հետևապես, դա էլ պայմանավորում է այդ հիվանդությունների դեմ պայքարի միջոցների և ուղիների ընդհանրությունը:

Սոցիալ-տնտեսական ու գիտատեխնիկական առաջընթացի ներկա պայմաններում սոցիալական կանխարգելումը դառնում է սովետական պետության կարևորագույն ֆունկցիաներից մեկը. այն պետք է հասարակության ամեն մի անդամի և ողջ հասարակության առողջության պահպանման ու ամրապնդման համար ապահովի անհրաժեշտ պայմաններ: Իսկ հասարակության առողջությունը մեր երկրի գլխավոր հարստությունն է, սովետական պետության տնտեսական հզորության հիմքերի հիմքը:

Երկրորդային պրոֆիլակտիկան իրականացվում է գլխավորապես առողջապահական հիմնարկությունների ուժերով: Դրա նպատակն է արդեն իսկ առաջացած հիվանդությունների շուտափույթ հայտնաբերումը, ախտաբանական պրոցեսի զարգացման ու հնարավոր բարդությունների կանխումը:

Երկրորդային պրոֆիլակտիկայի գլխավոր խնդիրն է հիվանդությունների ակտիվ հայտնաբերմամբ, նրանց նպատակամետ ու կոմպլեքսային բուժման կազմակերպմամբ նվազեցնել ժամանակավոր անաշխատունակության ու հաշմանդամության դեպքերը, որը, վերջին հաշվով, նույնպես սոցիալ-տնտեսական մեծ կարևորության խնդիր է:

Պրոֆիլակտիկ բժշկության գլխավոր շարժիչ ուժերից մեկը դիսպանսերային մեթոդն է: Ասենք, որ դա մեր ամբուլատոր-պոլիկլինիկական բոլոր հիմնարկությունների գործունեության հիմնական ու առաջատար մեթոդն է, որի մեջ միահյուսվում են բուժական ու կանխարգելիչ միջոցառումները՝ որպես մեկ ամբողջություն:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո մեր երկրում ստեղծվեց ժողովրդի առողջության պահպանման որակապես նոր ու առաջադեմ համակարգ: Պրոֆիլակտիկան հռչակվեց որպես սովետական առողջապահության գլխավոր ուղղություն: Առողջապահության առաջին ժողկոմ Ն. Ա. Սեմաշկոն այս առնչությամբ նշել է. «Պրոֆիլակտիկան առողջապահության ուղղությունն է, դիսպանսերացումը՝ այն մեթոդը, որով կանխարգելիչ ուղղությունը կենսագործվում է կյանքում»:

Բնակչության դիսպանսերացումը, որպես կանխարգելիչ ու բուժական բժշկության միասնության դրսևորման գլխավոր մեթոդ, սկսել է արմատավորվել սովետական իշխանության առաջին տարիներին և, աստիճանաբար կատարելագործվելով ու ընդլայնվելով, մեր օրերում հասել է զարգացման բավականին բարձր մակարդակի:

Հենվելով բնակչության դիսպանսերացման բնագավառում ձեռք բերված հարուստ փորձի վրա և ելնելով սովետական ժողովրդի առողջության հետագա բարելավման անհրաժեշտությունից՝ կուսակցությունը դեռևս 60-ական թվականների սկզբին խնդիր դրեց երկրի ամբողջ բնակչությունն ընդգրկել դիսպանսերային հսկողության մեջ: Կուսակցության ծրագրային այդ պահանջը կենսագործելու համար անհրաժեշտ էր ամենից առաջ վճռականորեն ամրապնդել բժշկական հիմնարկների նյութատեխնիկական բազան, հիմնավորապես լուծել դրանք բարձրորակ բժշկական կադրերով ապահովելու պրոբլեմը: Խնդրի հաջող լուծման գործում կարևոր նշանակություն ունեին նաև բնակչությանը սանիտարահիգիենիկ գիտելիքներով զինելը, բուժգրագիտության հետագա բարձրացումը:

ՍՍՀՄ առողջապահության մինիստրությունը դեռևս 1984 թ. մշակել է «Ամբողջ բնակչության ամենամյա դիսպանսերացման ծրագիր», որը պետք է իրականացվի երկու փուլով: Առաջին փուլում (1984—1987 թթ.) շեշտը դրվելու է առավել տարածված հիվանդությունների հայտնաբերման ու կանխարգելման, ամբուլատոր պոլիկլինիկական հիմնարկների նյութատեխնիկական բազայի ամրապնդման, կադրերի պատրաստման ու աշխատանքի կազմակերպման ձևերի կատարելագործման վրա: Երկրորդում (1988—1990 թթ.) պետք է ավելացվեն բժշկական նեղ մասնագետների մասնակցությունը և լաբորատոր ախտորոշիչ հետազոտությունների ծավալը՝ հաշվիչ տեխնիկայի լայն կիրառումով:

ՍՍՀՄ բնակչության ամենամյա դիսպանսերացման աշխատանքները ռացիոնալ ձևով կազմակերպելու համար 1985 թ. մարտին Ուդմուրտական ԻՍՍՀ մայրաքաղաքում՝ Ուստինովում, անցկացվեց համամիութենական խորհրդակցություն, որին մասնակցում էին բոլոր հանրապետությունների ու խոշոր քաղաքների առողջապահության բնագավառի ներկայացուցիչները: Նշվեց, որ երկրի համարյա բոլոր շրջաններում որոշակի փորձ է կուտակվել բնակչության համընդհանուր դիսպանսերացման ասպարեզում: 1984 թ. ընթացքում ողջ երկրում դիսպանսերային հսկողության է ենթարկվել ավելի քան 60 մլն մարդ: Սակայն ընդգրկումը խիստ անհավասարա-

չափ է: Այսպես՝ Լատվիայում և Էստոնիայում յուրաքանչյուր 1000 բնակչից արդեն դիսպանսերային հսկողության է վերցվել 292, Լիտվայում՝ 257, ՌՍՖՍՀ-ում՝ 248, Վրաստանում և Հայաստանում համապատասխանաբար՝ 193 և 174, Թուրքմենիայում՝ 92 մարդ և այլն: Սա ցույց է տալիս, որ միութենական որոշ հանրապետություններում առողջապահության աշխատողները, ինչպես և կուսակցական ու սովետական մարմինները պատշաճ պատասխանատվություն չեն ցուցաբերել համապետական այս կարևոր գործի նկատմամբ: Առայժմ գործերը լավ են միայն մերձբալթյան հանրապետություններում: Խիստ անբավարար են բուժսանիտարական մասերի ակտիվությունն ու մասնակցությունը, որոնք, ի դեպ, ունեն ֆինանսական ու տեխնիկական մեծ հնարավորություններ:

Բնակչության ամենամյա ու համընդհանուր դիսպանսերացումը որակապես նոր փուլ է սոցիալիստական առողջապահության հետագա զարգացման ճանապարհին: Այսօր առողջապահության աշխատողներից պահանջվում է վճռել պետական ու սոցիալ-տնտեսական վիթխարի նշանակության մի խնդիր: Մեծ ծավալ ունեցող համապետական այս միջոցառման նպատակն է՝ ստեղծել բժշկական օգնության այնպիսի համակարգ, որով ապահովվի մշտական դինամիկ հսկողությունը երկրի ողջ բնակչության (սկսած վաղ մանկությունից մինչև ծերունական հասակը) առողջության նկատմամբ, իրականացվի ամենավաղ փուլերում հիվանդությունների հայտնաբերումը, կազմակերպվի հիվանդների արդյունավետ բուժումը, կանխվեն բարդությունները, բարձրացվեն մարդկանց կյանքի միջին տևողությունն ու ակտիվ աշխատունակության ժամանակահատվածը:

Դյուրին չէ այդ ամենը, սակայն ժամանակի ընթացքում մեր երկրի տնտեսական ու սոցիալական զարգացմանը, ինչպես նաև բժշկական գիտության ու գործնական առողջապահության հնարավորությունների մեծացմանը զուգընթաց բնակչության համընդհանուր դիսպանսերացումը, անկասկած, կկատարելագործվի և ավելի արդյունավետ կդառնա:

Ոչ վաղ անցյալում, երբ մարդու ախտաբանության մեջ գերակշիռ տեղն զբաղեցնում էին տարափոխիկ հիվանդությունները, պրոֆիլակտիկ բժշկության նպատակը հիմնականում այդ հիվանդությունների կանխարգելումն էր՝ մարդուն այս կամ այն վարակից զերծ պահելը: Մարդկային հասարակության զարգացման արդի փուլում էապես փոխվել է մարդու ախտաբանության կառուցվածքը: Այսօր արդեն առողջապահության մարմինների ուշադրության կենտրոնում են խրոնիկական ոչ ինֆեկցիոն հիվանդությունները (սիրտ-անոթային, ուռուցքային, նյարդահոգեկան և այլն)՝ իրենց բազմապատճառ բնույթով: Այս պարագայում կանխարգելիչ բժշկության առաջնահերթ խնդիրն է՝ ապահովել մարդկանց առողջության պահպանման ու ամրապնդման համար լավագույն էկոլոգիական իրավիճակ, աշխատանքային պայմաններ ու ապրելակերպ: Եվ, բնականաբար, առաջնահերթ են դառնում նպատակային ձևով իրականացվող սոցիալ-հիգիենիկ միջոցառումները, որոնց շարքում կարևոր նշանակություն է ստանում բնակչության համընդհանուր դիսպանսերացումը: Այս կարևոր գործի հաջողությունը գլխավորապես պայմանավորված է մեր ամբուլատոր-պոլիկլինիկական հիմնարկների հստակ, պլանավորված ու համագործակցված աշխատանքով, նրանց նյութատեխնիկական բազայով: Սակայն դիսպանսերացման աշխատանքի գլխավոր կազմակերպիչն ու կատարողը տեղամասային թերապևտն է կամ մանկաբույժը: Ուստի և այդ հաջողությունը պայմանավորված կլինի ո՛չ միայն պոլիկլինիկայի նյութատեխնիկական բազայով, սպասարկվող բնակչության թվով ու կազմով, այլև բժշկական աշխատողների փորձով, որակավորման աստիճանով, սպասարկման կուլտուրայով: Այլ կերպ ասած, այստեղ առաջնակարգ նշանակություն են ստանում նաև բժշկի անձը, նրա հեղինակությունն ու մասնագիտական հմտությունը:

Բնակչության դիսպանսերացման գործում անչափ մեծ է բժիշկների անմիջական օգնականների՝ միջին բուժաշխատողների դերը: Ահա թե ինչու շրջանների գլխավոր բժիշկներն ու քաղաքների առողջապահության բաժինները պետք է նրանց համար կազմակերպեն հատուկ սեմինար-դասընթացներ բնակչության զանգվածային հետազոտությունները կազմակերպելու և համապատասխան բժշկական փաստաթղթերը ձևակերպելու վերաբերյալ:



Սակայն հարկ է նշել, որ համընդհանուր դիսպանսերացման հաջողությունը միայն բժշկական հիմնարկության և բուժաշխատողների գործունեության արգասիք չէ: Այս խնդրում ակտիվ ու գործարար մասնակցություն պետք է ունենա յուրաքանչյուր քաղաքացի, հասարակության ամեն մի անդամ: Ամեն ոք խոր գիտակցականությամբ պետք է վերաբերվի համապետական այս կարևոր միջոցառմանը: Հայտնի է, որ բազմաթիվ ախտածին գործոններ հետևանք են հենց այն բանի, որ ինքը՝ մարդը, չի պաշտպանում աշխատանքի, կենցաղի ու հանգստի ռեժիմը, չարաշահում է վնասակար սովորույթները: Նույնիսկ օպտիմալ նյութական, բնակարանակենցաղային պայմանների առկայության դեպքում մարդը կարող է իր համար այնպիսի բացասական կենսառիթմ ստեղծել, որ նպաստի հիվանդությունների առաջացմանը: Ահա թե ինչու բնակչության համընդհանուր դիսպանսերացման փուլում հիվանդությունների կանխարգելման գլխավոր լծակներից մեկը պետք է լինի բնակչության հիգիենիկ դաստիարակության կատարելագործումը: Առաջնահերթ է դառնում առողջ ապրելակերպի պրոպագանդումը:

Եթե ամեն ոք սիստեմատիկաբար հետևի իր առողջությանը, պահպանի առողջ ապրելակերպի համար պահանջվող սանիտարահիգիենիկ կանոնները, ապա այդ ամենի բարենպաստ ազդեցությունը ողջ հասարակության առողջական վիճակի վրա շատ ավելի մեծ ու զգալի կլինի, քան բժշկագիտական այս կամ այն նվաճման ներգործությունը: Անփույթ վերաբերմունքը սեփական առողջության նկատմամբ անփույթ ու անպատասխանատու վերաբերմունք է նաև հասարակության շահերի նկատմամբ: ՍՍՀՄ սահմանադրության 42-րդ հոդվածով վավերացված է սովետական քաղաքացիների առողջության պահպանման իրավունքը: Սակայն առողջության պահպանումը պետք է լինի ո՛չ միայն իրավունք, այլև պարտականություն:

Ժամանակակից պայմաններում մարդիկ իրենց ստեղծագործական աշխատանքում հսկայական ջանք ու եռանդ են ներդնում գերճշգրիտ սարքեր, էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, տիեզերանավեր, արվեստի գլուխգործոցներ ստեղծելու համար: Սակայն հաճախ անուշադրության է մատնվում, հետին պլան մղվում ամենաթանկագինը՝ առողջությունը, որը հասարակության սոցիալ-տնտեսական առաջընթացի գլխավոր նախապայմանն է: Ահա թե ինչու բնակչության համընդհանուր դիսպանսերացման փուլում պետք է կատարելագործել և ավելի ներազդու դարձնել հասարակական ներգործության միջոցները՝ սեփական առողջության հանդեպ անփույթ ու թեթևամիտ վերաբերմունք ցուցաբերող, ալկոհոլամոլությամբ, ծխախոտամոլությամբ ու վնասակար այլ սովորույթներով տառապող անձանց նկատմամբ:

Այստեղ շատ կարևոր է ինքնադաստիարակությունը: Մարդիկ հաճախ առողջապահական օգտակար ու խելացի դիտողություններ են անում ուրիշներին, բայց դրանք չեն կիրառում սեփական առողջության պահպանման համար: Աշխատանքի ու հանգստի, սնվելու ու ֆիզիկական ակտիվության պահպանման ճիշտ ռեժիմի մշակման պայմաններում կարող է էապես փոխվել մարդու ապրելակերպը: Ռացիոնալ ու առողջ ապրելակերպի մշակումը մեր ժամանակակից կյանքի լարված ռիթմին ընդդիմակայելու, առողջ ու երկար ապրելու ամենաճիշտ միջոցն է:

Համընդհանուր դիսպանսերացումը, ինչպես արդեն ասվեց, ո՛չ միայն բժշկական, այլև սոցիալական կարևորագույն խնդիր է, քանի որ մարդու օրգանիզմի հարմարվողական ունակությունները վերջին հաշվով պայմանավորվում են միջավայրի սոցիալական պայմաններով: Այս պրոբլեմի կենսագործման հարցում ամենուրեք բժշկական աշխատողներին ակտիվ ու գործարար աջակցություն պետք է ցույց տան կուսակցական ու սովետական մարմինները, հիմնարկ-ձեռնարկությունների, հատկապես արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրության ղեկավարները:

Ցավոք, արտադրական ձեռնարկություններում առ այսօր պետական միջոցների զգալի մասը ծախսվում է արտադրության այս կամ այն անբարենպաստ գործոնի ազդեցության հետևանքները և ոչ թե դրանց արմատական պատճառները, այսինքն՝ սկզբնաղբյուրները վերացնելու վրա: Արտադրական ձեռնարկության որևէ տեղամասի ընդհանուր բնութագիրը կազմելիս չի կարելի սահմանափակվել միայն դրա տեխնիկական հագեցվածության աստիճանով: Յուրաքանչյուր արտադրամաս և անգամ ամեն մի աշխատատեղ պետք է հանգամանորեն ուսումնասիրվի և բարելավվի նաև սանիտարահիգիենիկ առումով: Աշխատանքի պայմանների բարելավումը և

բանվորների ու կոլտնտեսականների հիվանդացության նվազեցումը պետք է դառնա ամեն մի տնտեսական ղեկավարի առաջնային պարտականությունը: Երբ արտադրության մեջ որևէ սարքավորում կամ մեքենա փչանում է, խափանվում է նրա աշխատանքը, ապա այդ ամենի համար պատասխանատվության են ենթարկվում ձեռնարկության ղեկավարները: Իսկ եթե անուշադրության է մատնվում մարդկանց առողջությունը, եթե պատշաճ ուշադրություն չի նվիրվում սանիտարաառողջարար միջոցառումների՞ն, որի հետևանքով էլ շատ աշխատողներ հիվանդանում, բացակայում են աշխատանքից... Ժամանակն է, որ նման իրավիճակը չհամարվի սովորական երևույթ, որ այս կամ այն արտադրական ձեռնարկության գործունեությունը գնահատվի ո՛չ միայն զուտ տնտեսական ցուցանիշներով (պլան-առաջադրանքի կատարում, աշխատանքի արտադրողականության բարձրացում, արտադրանքի որակի բարելավում և այլն), այլև աշխատողների առողջության պահպանման ու ամրապնդման կոնկրետ միջոցառումների քանակական ու որակական ցուցանիշներով: Ժամանակն է նաև, որ սոցիալիստական մրցության արդյունքներն ամփոփելիս, արտադրատնտեսական ցուցանիշների հետ մեկտեղ, հաշվի առնվեն նաև ժամանակավոր անաշխատունակությամբ ուղեկցվող հիվանդացության, տրավմատիզմի և սանիտարաառողջարար աշխատանքների հետ առնչվող ցուցանիշները:

Ի կատարումն ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումի որոշումների, հանրապետությունում զգալի նախապատրաստական աշխատանքներ են տարվել բնակչության դիսպանսերացումը ինչպես հարկն է կազմակերպելու համար: Առողջապահության մինիստրությունում ստեղծվել է բնակչության դիսպանսերացման բաժին:

Վ. Ի. Լենինի անվան հանրապետական հիվանդանոցում ստեղծվել է բավականաչափ հզոր, ժամանակակից տեխնիկայի միջոցներով հագեցված ախտորոշիչ կենտրոն (մեկ օրում 3—4 հազար հետազոտություն), որը մեծ ու ծանրակշիռ դեր ունի կատարելու բնակչության դիսպանսերացման գործում:

ՍՍՀՄ առողջապահության մինիստրության հրամանով ներկայումս Երևանի բոլոր պոլիկլինիկաներում, ինչպես նաև Ստեփանավանի, Իջևանի և Հրազդանի շրջաններում արդեն սկսվել են համընդհանուր դիսպանսերացման աշխատանքները: Քաղաքային պոլիկլինիկաներում ստեղծվել են պրոֆիլակտիկայի բաժանմունքներ, որոնք մեծ դեր ունեն կատարելու դիսպանսերացման գործում: Քիչ աշխատանք չի կատարվել բժշկական հիմնարկների նյութատեխնիկական բազան ամրապնդելու, ինչպես նաև դրանք բարձրորակ բժշկական կադրերով ապահովելու նպատակով: Այսօր հանրապետությունում գործող շրջանային կենտրոնական հիվանդանոցների միջին կարողությունը հասցվել է 220, գյուղական տեղամասային հիվանդանոցներինը՝ 30 մահճակալի: Հաջողությամբ իրագործվել է բժշկական տեղամասերի ապախոշորացումը (թերապևտիկ տեղամասերի կողմից սպասարկվող մեծահասակ բնակիչների միջին թիվը՝ 1.736 մարդ, իսկ մանկաբուժական տեղամասերում՝ 786 երեխա): Այս ամենը նպաստավոր պայմաններ է ստեղծում բնակչության ամենամյա դիսպանսերացումը պատշաճ մակարդակով կազմակերպելու համար:

Հասարակության համար, նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, չկա ավելի արժեքավոր բան, քան առողջությունը: **«Մարդկանց առողջության պահպանումը և ամրապնդումը,**— ասաց ընկեր Մ. Ս. Գորբաչովը,— առաջնակարգ կարևորության գործ է: Առողջության պրոբլեմները մենք պետք է դիտենք սոցիալական լայն դիրքերից, դա որոշվում է նախ և առաջ աշխատանքի ու կենցաղի պայմաններով, բարեկեցության մակարդակով: Եվ, իհարկե, հսկայական նշանակություն ունի ժողովրդական առողջապահությունը: Անհրաժեշտ է որքան կարելի է ավելի արագորեն, ընդ որում՝ ամենուրեք, բավարարել բնակչության պահանջմունքները բարձրորակ բուժպրոֆիլակտիկ օգնությամբ ու դեղամիջոցներով»:

Կուսակցության այս ծրագրային առաջադրանքի կենսագործումը առողջապահության ողջ համակարգի, յուրաքանչյուր բուժաշխատողի պատվի գործն է:

---

## Խոսում են համագումարի պատգամավորները

# ԿԱՌՈՒՑՈՒՄ ԵՆՔ ԴԱՐԵՐԻ ՀԱՄԱՐ

**Գ. ՄԱՐԳԱՐՅԱՆ**
**«Երաշխինտրեստի» կոմպլեքսային բրիգադի բրիգադավար, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ, ՀԿԿ Կենտկոմի անդամ, սոցիալիստական աշխատանքի հերոս**

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ աննախադեպ եռանդով ձեռնամուխ է եղել ՍՄԿԿ XXVII համագումարի՝ իր նշանակությամբ հիրավի պատմական կուսակցական այդ համաժողովի որոշումների կենսագործմանը:

Մարդու կյանքում լինում են դեպքեր, որոնք խոր հետք են թողնում նրա հիշողության մեջ, իմաստավորում նրա ողջ կենսագրությունը: Այդպես պատահեց նաև ինձ հետ: Որպես ՍՄԿԿ XXVII համագումարի պատգամավոր, ես Մոսկվայից վերադարձա խոր ու անջնջելի տպավորություններով: Ինձ՝ շինարար բանվորիս, Կրեմլի համագումարների պալատում ավելի հստակորեն պատկերացան լենինյան կոմունիստական կուսակցության կանխագծումների վիթխարի մասշտաբները: Երբ ունկնդրում էի ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովի՝ համագումարին տված Կենտկոմի Քաղաքական զեկուցումը, մյուս զեկուցումներն ու ելույթները, նորից ու նորից էի համոզվում, թե որքա՜ն մեծ հոգատարություն է ցուցաբերում կուսակցությունը մեր երկրի աշխատավորների կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման նկատմամբ: Սոցիալական զարգացման ծրագիրը դրա ցայտուն վկայությունն է:

Համագումարում պատշաճ կերպով արծարծվեցին նաև շինարարության հարցերը: Նշվեց, որ տասնմեկերորդ հնգամյակում մեր երկրում իրացվել են հսկայական չափերի հասնող կապիտալ ներդրումներ, զգալիորեն գերակատարվել են բնակելի տների, դպրոցական և նախադպրոցական հիմնարկությունների գործարկման՝ ՍՄԿԿ XXVI համագումարի հիմնական ուղղություններով նախատեսված առաջադրանքները: Հինգ տարում, օրինակ, երկրի աշխատավորները, նախատեսված 530—540 **մլն քմ**-ի փոխարեն, ստացել են 552 **մլն քմ** ընդհանուր մակերեսով բնակելի տներ: Երբ լսում էի շինարարության հաջողությունների վերաբերյալ ասված խոսքերը, հպարտության զգացումով էի համակվում: Չէ՞ որ այդ հաջողություններում կա և մեր տրեստի ավանդը: Շինարար բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների, կուսկազմակերպության ու ղեկավար անձնակազմի ջանքերով մեր տրեստի համար տասնմեկերորդ հնգամյակը դարձավ կարմրադրոշ: Հինգ անգամ մեր բազմահազարանոց կոլեկտիվը հաղթող ճանաչվեց համամիութենական և հանրապետական սոցիալիստական մրցությունում և արժանացավ համապատասխան փոխանցիկ կարմիր դրոշների: Այդ հաղթանակներում իր համեստ ներդրումն է արել նաև իմ ղեկավարած բրիգադը: Անցած հնգամյակի տարիներին բրիգադի կոլեկտիվը մասնակցել է բնակելի տների, արդյունաբերական և սոցիալական նշանակության մի շարք օբյեկտների շինարարությանը: Իսկ 1985 թ. մեր ուժերով գործարկեցինք № 94 պրոֆտեխնիկական ուսումնարանի համալիրը: Գոհունակությամբ պետք է նշեմ, որ բրիգադը միշտ աշխատում է գրաֆիկից առաջ անցնելով:

Ընթացիկ հնգամյակում և հետագա տարիներին երկրում նախատեսվում է կատարել շինարարական լայն մասշտաբի աշխատանքներ: Հինգ տարում կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը կհասնի գրեթե մեկ տրիլիոն ռուբլու: Այդ առնչությամբ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ն. Ի. Ռիժկովն ասաց. «Բայց բանը, իհարկե, կապիտալ ներդրումների հսկայական չափերը չեն միայն: Ինվեստիցիոն քաղաքականության հաջողությունը մեծապես պայմանավորված է նրանով, թե որքան արդյունավետորեն են օգտագործվում ռեսուրսները, ինչպես է կազմված նրանց ճյուղային և վերարտադրողական կառուցվածքը, ինչպես է կազմակերպված կապիտալ շինարարության բուն պրոցեսը»: Սրանք, անտարակույս, լուրջ խնդիրներ են, որոնց լուծման համար մեծ ջանքեր ու կազմակերպվածություն են պահանջվում: Եվ, բնականաբար, այդ խնդիրների կապակցությամբ էլ համագումարում շինարարներիս աշխատանքը զերծ չմնաց կուսակցական սկզբունքային քննադատությունից: Լուրջ կշտամբանքի խոսքեր եղան նաև մեր հանրապետության շինարարների հասցեին: Ես լիովին համամիտ եմ այդ օբյեկտիվ ու տեղին քննադատությանը:

Իրոք, այսօր մեր հանրապետությունում կապիտալ շինարարության բուն պրոցեսի կազմակերպման գործում կան աղաղակող թերություններ: Վատ է ֆոնդավորված շինանյութերի մատակարարման գործը, երբեմն խախտվում են օբյեկտները շահագործման հանձնելու ժամկետները, նրանցում չի ապահովվում ռիթմիկ աշխատանքը: Լինում է այնպես, որ կառույցի շահագործումից հետո այնտեղ օրեր և նույնիսկ ամիսներ շարունակ կատարվում են լրացուցիչ ներքին հարդարման ու շրջապատի բարեկարգման, որոշ դեպքերում նաև՝ վերակառուցման աշխատանքներ: Իսկ դրանք մեզնից խլում են լրացուցիչ ուժ և շինանյութ, այլ կարգի ավելորդ ծախսումներ: Այդ ամենի հետևանքով թերակատարվում են շինմոնտաժային աշխատանքների պլանը և ստանձնած պարտավորությունները, անտեղի վատնվում են տարբեր տեսակի շինանյութեր:

Ցավոք, նման թերացումներ կան նաև մեր՝ «Երարդշին» տրեստում, որտեղ աշխատում եմ արդեն 35 տարուց ավելի: Դրոշներն էլ նվաճել ենք ուժերի գերագույն լարումով ու շատ դժվարությունների հաղթահարման գնով: Բանն այն է, որ մեր անցած ճանապարհին հանդիպել ենք օբյեկտիվ ու սուբյեկտիվ շատ խոչընդոտների: Շինարարությունում նույնիսկ մեքենասարքավորումների առկայության պայմաններում դեռևս օգտագործում ենք իրենց դարն ապրած ձեռքի գործիքներ ու արդեն ֆիզիկապես մաշված մեքենաներ: Եվ ստացվում է այնպես, որ մենք ձգտում ենք արդյունավետ օգտագործել աշխատաժամանակը, խնայում ենք յուրաքանչյուր րոպեն, իսկ հետո ժամերով և նույնիսկ օրերով պարապուրդ ենք տալիս անբավարար մատակարարման, աշխատանքի ոչ ճիշտ կազմակերպման, այս կամ այն մեքենայի կամ սարքավորման նորոգման ձգձգման պատճառով: Իսկ դրա համար, ինչպես հաճախ լինում է, ոչ ոք պատասխանատվության չի ենթարկվում: Դրա հետ մեկտեղ, ոմանք չեն պատկերացնում իրենց հասցրած վնասի չափը, աշխատանքի հանդեպ անպատասխանատվությունն ու անհարգալից վերաբերմունքը դառնում են բնավորության հատկանիշներ:

Մենք՝ շինարարներս, այսօր դեռևս չգիտենք ճիշտ ու ռացիոնալ օգտագործել եղած նույնիսկ սակավաթիվ մեքենասարքավորումներն ու ավտոտրանսպորտը: Պատահում է այնպես, որ բեռնատար ինքնաթափ ավտոմեքենայի, ավտոկռունկի կամ այլ մեքենայի նախնական հայտ է ներկայացվում, մինչդեռ դրանք այդ օրը կամ ամբողջությամբ պետք չեն, կամ էլ դրանց կարիքը զգացվում է միայն աշխատանքային օրվա երկրորդ կեսից, իսկ մյուս օբյեկտներում, ընդհակառակն, առավոտից հարկավոր են լինում: Սրանք գուցե մանրուքներ թվան, սակայն երբ խորհում ես դրանց շուրջ, տեսնում ու հասկանում ես, որ, ցավոք, բացասաբար են ազդում աշխատանքի արտադրողականության, օբյեկտի շահագործման ժամկետի և շինմոնտաժային աշխատանքների ընդհանուր որակի վրա:

ՍՄԿԿ XXVII համագումարը, շեշտը դնելով գիտատեխնիկական առաջընթացի անշեղ բարձրացման, թողարկվող արտադրանքի ու կատարվող աշխատանքի որակի բարելավման, ամեն տեսակի պարապուրդների վերացման ու կարգապահության ամրապնդման վրա, միաժամանակ նշեց, որ այդ ասպարեզներում դեռևս կան լուրջ թերություններ, որոնց համար մեղավոր անձինք պետք է պատասխան տան իրենց



կատարածի համար, ազատեն ճանապարհը ազնիվ ու բարեխիղճ, կուսակցական սկզբունքայնությամբ օժտված ընկերների առջև: Ես լրիվ համամիտ եմ դրան: Մենք, այսօրվա շինարարներս, երբեմն ուղղակի ստվեր ենք գցում մեր նախնիների վրա: Չէ՞ որ նրանց կառուցած բազմաթիվ շենքեր դարեր շարունակ կանգուն են մնացել, դարձել ժողովրդի ազգային հպարտությունը: Իսկ մենք ամաչում և կարմրում ենք մեր ժամանակակից որոշ կառույցների ցածրորակության համար:

Եվ մեկ կարևոր հանգամանք՝ աշխատանքի կազմակերպումը: Որքան էլ զարմանալի է, այսօր շինարարությունում դեռևս բացակայում է պատվիրատու, գլխավոր կապալառու, ենթակապալառու կազմակերպությունների համագործակցված աշխատանքը, որի պատճառով հետագայում օբյեկտի շինարարության ընթացքում առաջանում են անհարկի դժվարություններ: Երբեմն էլ մենք օբյեկտների շինարարությունն սկսում ենք առանց նախագծի և նախահաշվային փաստաթղթերի, այն դեպքում, երբ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ դրանք շինարարներին պետք է հանձնվեն շինարարությունն սկսելուց վեց ամիս առաջ: Այս ամենը, ինչ խոսք, ծնում է գրոհայնություն և խիստ բացասաբար ազդում որակի վրա:

Եվս մեկ հարց: Այսօր շինարարության 70 տոկոսը կատարվում է ձեռքի աշխատանքով, մեր կառույցներում միակ տեխնիկան վերամբարձ կռունկն է: Ավելին՝ հարդարման 90 տոկոսը կատարվում է ձեռքի հասարակ գործիքներով: Դրա պատճառով էլ հետզհետե պակասում է քարտաշների, ծեփագործների թիվը: Այստեղ արդեն իր խոսքը պետք է ասի գիտությունը:

ՍՄԿԿ XXVII համագումարում ես մեծ ուշադրությամբ էի հետևում այն ելույթներին, որտեղ արծարծվում էին գիտության և շինարարության կապի հարցերը: Մարդիկ խոսում էին իրենց առջև ծառացած դժվարությունների, լուծման կարոտ խնդիրների մասին, իրավացի պահանջներ ներկայացնում գիտության ու տեխնիկայի բնագավառի աշխատողներին: Մեր հանրապետության շինարարական աշխատանքի պրակտիկայից ելնելով՝ կուզեի այդ առթիվ արտահայտել իմ մի քանի նկատառումները: Բանն այն է, որ, իրոք, դեռևս շատ թույլ է գիտության ու շինարարության կապը, մինչդեռ գիտնականի մտքի և բանվորի բազկի դաշինքն այսօր, շինարարության լայն մասշտաբների ու մեծ թափի պայմաններում, կենսական լուրջ պրոբլեմ է: Եթե գիտության ու տեխնիկայի նվաճումները կարողանանք ներդնել նաև շինարարության մեջ, ապա հնարավոր կլինի ավելի լավ գործեր անել, շատ բան վերափոխել, արմատական հեղաշրջում կատարել ժողովրդական տնտեսության այդ կարևոր բնագավառում:

Եթե գիտնականները լինեն կառույցներում, լուրջ ուսումնասիրություններ կատարեն, ապա կարող են շատ բաներ փոխել: Օրինակ, ես՝ բանվոր մարդս, շարքային շինարարս, հաճախ մտահղացումներ եմ ունենում շինարարությունում աշխատանքային պայմանների բարելավման, աշխատատար գործողությունների մեքենայացման վերաբերյալ, սակայն չեմ կարող դրանք գործի վերածել: Այստեղ հարկավոր է շինարար գիտնականի օգնությունը: Նա կարող է լսել մեզ, շինարարներիս և գիտականորեն կյանքի կոչել ամեն մի մտահղացում, լուծել ամեն մի կնճռոտ խնդիր: Օրինակ, միջնապատերի սալիկները և հանքերից ստացված քարը այսօր բեռնվում և բեռնաթափվում են ձեռքով: Պարզ է, ժամանակ շատ է ծախսվում, աշխատանքի արտադրողականությունը ցածր է լինում, ֆիզիկական ծանր աշխատանք է կատարվում, երիտասարդները խուսափում են այդպիսի գործեր անել և գերադասում են գնալ գործարան: Այստեղից էլ՝ կամ շինարար բանվորների զգալի պակասը, կամ նրանց հոսունության բարձր տոկոսը: Ա՛յ, վերցնենք Արթիկի տուֆը: Այն մեր գանձն է, մեր հանրապետության հպարտությունը: Իսկ ինչպե՞ս ենք վարվում այդ գանձի հետ: Ես կասեի՝ շատ վատ, անտնտեսվար ձևով: Բանն այն է, որ մենք տուֆ քարն ստանում ենք ոչ լրիվ մշակված և երբ տեղում մշակում ենք, այսինքն՝ դրան տալիս ենք մեզ հարկավոր ձևը, գոյանում են այդ արժեքավոր շինանյութի մեծ քանակությամբ կտորտանքներ, որոնք թափվում են որպես շինարարական աղբ: Իսկ հնարավոր չէ՞ քարը հանքից ուղարկել օբյեկտներն այն ձևով, ինչ ձևով օգտագործվելու է այնտեղ: Իհարկե, հնարավոր է, եթե լիովին մեքենայացվի քարի մշակումը հանքավայրում: Կոնկրետ դեպքում ստեղծվի մի մեքենա, որը սրբատաշ քարի մի անկյունը կտրի շեղությամբ՝ պատը շարելուն հարմարացնելու համար: Նման պայ-

մաններում հնարավոր կլինի կուտակված քարաբեկորներն օգտագործել այլ նպատակներով: Դրանով մի կողմից կխնայվի քարը, մյուս կողմից՝ կպակասեն փոխադրական ծախսերը, կհեշտանա շինարարի գործը:

Մեծ է հատկապես շինարարական փոքր մեխանիզմների կարիքը: Դրանք կարող են էապես խթանել աշխատանքի արտադրողականության աճը: Այսօր, քսաներորդ դարի վերջերին, չի կարելի յոլա գնալ հարդարման պապենական եղանակներով:

Այլ խոսքով՝ մի կողմից գիտության ու տեխնիկայի մարդիկ շինարարությունից առայժմ հեռու են մնում, մյուս կողմից՝ նրանց ստեղծած նորն ու լավը դանդաղ են արմատավորվում կառույցներում:

Եվ մեկ ոչ պակաս կարևոր խնդիր: Հանքից ավազն ստանում ենք առանց տեսակավորման: Մաղում ենք, մաքուր, մանր ավազն օգտագործում, իսկ խիճը, որ երբեմն հումքի կեսից ավելին է կազմում, իզուր կորչում է: Լավ չի՞ լինի, եթե հանքից տեղափոխվող ավազահումքը կենտրոնացվի մի որևէ օբյեկտում, որտեղ մեքենայացվի դրա մաղման գործը, մանր ավազը տրվի շինարարներին՝ ծեփի, իսկ խիճը օգտագործվի բետոն պատրաստելու համար: Պատկերացնո՞ւմ եք, թե ինչպիսի հարստություն խնայած կլինենք, կառույցում որքան ժամանակ կշահենք:

Կուսակցության համագումարի ընդմիջումների ժամանակ զրույցներ էի ունենում շինարար պատգամավորների հետ և մտքեր փոխանակում մեզ հուզող հարցերի վերաբերյալ: Հետաքրքրական և հիշարժան է մեր երկրի անվանի շինարարներից մեկի՝ Նիկոլայ Զլոբինի հետ ունեցած հանդիպումը: Նրան նախապես ծանոթ էի, առաջներում էլ էինք հանդիպել: Շինարարի բնածին տաղանդ ունի: Այս անգամ ևս անկաշկանդ զրույց ունեցանք, հարցուփորձ արեցինք, խոսեցինք առօրեական հոգսերի շուրջ: Շնորհավորեցի սոցիալիստական աշխատանքի կրկնակի հերոսի կոչում ստանալու առթիվ: Դա մեր շինարարների աշխատանքի արժանի գնահատականն է: Պատմեց իրենց փորձի ու գործերի մասին, ասաց, որ շինարարական փոքր մեխանիզմներով ապահովված են: Նիկոլայ Զլոբինը ևս դժգոհեց, որ երբեմն մատակարարումները հստակորեն չեն կազմակերպվում, նախագծերը ժամանակին չեն հանձնում կառուցողներին, ցածր է մեքենայացման մակարդակը: Նա հույս հայտնեց, որ առաջիկայում շինարարների գործերը կկարգավորվեն ու կբարելավվեն, համագումարի ամբիոնից ասված խոսքերը անհետևանք չեն մնա:

Անվանի շինարարը պատմեց, որ ստեղծել են 120 մարդուց բաղկացած համերաշխ կոլեկտիվ և կառուցում են շատ պատասխանատու օբյեկտներ, հատկապես 20—30 հարկանի բնակելի շենքեր, և որ այդ համերաշխությունը կապալային աշխատանքի հաջողության և շինարարական բարձր որակի գրավականն է:

Ես այսօր էլ բավականությամբ եմ մտաբերում մեր զրույցը, որի ընթացքում ուսանելի շատ բաներ սովորեցի նրանից: Եվ մի տեսակ հպարտություն եմ զգում, որ իմ բրիգադը ևս աշխատում է փառաբանված շինարարի մեթոդով ու մեծ հաջողության է հասել:

Իմ ղեկավարած բրիգադը ստեղծվել է 1963 թվականին, կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվ էր՝ բաղկացած 18 մարդուց: Շուտով շինարարության մեջ, կարելի է ասել, հեղափոխություն կատարվեց՝ արմատավորվեց զլոբինյան մեթոդը: Մեր հանրապետությունում առաջիններից մեկը այդ մեթոդը կիրառեց իմ բրիգադը, և 1976 թվականից անցանք կապալային աշխատանքի՝ արդեն 32 մարդուց բաղկացած կոլեկտիվով: Այժմ բրիգադը բաղկացած է 56 մարդուց, որոնցից 14-ը կոմունիստներ են, 8-ը՝ կոմերիտականներ:

Ի՞նչ տվեց զլոբինյան մեթոդը կոնկրետ մեր բրիգադին: Ստեղծման սկզբնական շրջանում կոլեկտիվն զբաղվում էր ծեփագործությամբ, այսինքն՝ ամեն մի բանվոր միայն մեկ՝ ծեփագործի մասնագիտություն ուներ: Աստիճանաբար սկսեցինք յուրացնել հարդարման այլ մասնագիտություններ: Շուտով բրիգադը դարձավ կոմպլեքսային և արդեն 1976 թվականից, սկսած շենքի հիմքի փորումից մինչև շահագործման հանձնելը, բոլոր աշխատանքները (բացառությամբ սանհանգույցի սարքավորման և էլեկտրացանցի անցկացման) մենք ենք կատարում:

Այսպիսով, եթե առաջ բանվորը տիրապետում էր մեկ մասնագիտության և շինանյութի մատակարարման խափանման պատճառով մնում էր պարապ, ապա այժմ, տիրապետելով մի քանի մասնագիտության, կարող է այլ գործ անել: Մի խոսքով՝ պարապուրդը բացառվում է:



Կարևոր է այն, որ կապալային աշխատանքի պայմաններում գոյություն ունի բանվորական փոխադարձ հսկողություն: Բրիգադի կոլեկտիվը աշխատում է 4—5 մարդուց բաղկացած օղակներով և մեկն ընդունում է մյուսի գործը: Օրինակ, մոնտաժողները այն ավարտում և հանձնում են հարդարողներին կամ ծեփագործները ներկարարներին: Եթե ինչ-որ բան թերի է արված, պահանջում են ավարտել:

Շինանյութի օգտագործման մասին: Առաջներում մարդիկ անտարբեր էին դրա նկատմամբ, իսկ հիմա օգտագործում են ճիշտ այնքան, որքան հարկավոր է: Բոլորի մոտ զգացվում է խնայողական մոտեցում, նրանք գիտեն, որ տնտեսելու դեպքում հավելավճար կստանան:

Չափազանց կարևոր է բանվորական կայուն կոլեկտիվի ստեղծման հարցը· Սա հաջողության երաշխիքն ու պայմանն է: Այսօր մեր կոլեկտիվից մարդիկ հեռանում են միայն սովորելու մեկնելու կամ առաջ քաշվելու պատճառով: Աշխատանքի ենք ընդունում հիմնականում երիտասարդներին: Նրանց հետ պրակտիկ դասընթացներ ենք անցկացնում, մեկ տարուց հետո դառնում են բարձրորակ արհեստավորներ: Օրինակ, Լավրենտի Ավետիսյանը 18 տարեկան էր, որ անդամագրվեց մեր կոլեկտիվին: Այժմ չորրորդ կարգի վարպետ է և տիրապետում է մի քանի մասնագիտության: Կամ՝ Սարգսյան Սոկրատը: Տասնվեց տարեկանից մեր բրիգադում է, մեզ մոտ ավարտեց երեկոյան միջնակարգը, ապա և բուհը, ընդունվեց կուսակցության շարքերը: Հիմա նա շինվարչության կուսբյուրոյի անդամ է, վերահսկողության խմբի նախագահը, տիրապետում է մի քանի մասնագիտության: Ավալյան Զավենը բրիգադի կոմերիտական խմբի ղեկավարն է, շինվարչության կուսբյուրոյի անդամ, հեռակա կարգով սովորում է բուհում: Ակտիվ աշխատանք է տանում երիտասարդության հետ, բոլորը հարգում ու լսում են նրան: Այսօր աշխատանքին զուգընթաց բուհերում են սովորում նաև Լևոն Մուսիկյանն ու Մուշեղ Հովհաննիսյանը, Աշոտ Գևորգյանն ու Վալերի Ստեփանյանը: Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտը հեռակա կարգով ավարտել և ինժեների դիպլոմ են ստացել մեր կոլեկտիվի նախկին անդամներ Գագիկ Գալստյանը, Գևորգ Հովհաննիսյանը, Սամվել Սաֆարյանը: Այսօր նրանք, ճիշտ է, մեր կոլեկտիվում չեն, բայց մենք ուրախանում ենք նրանց հաջողությամբ: Ի՞նչ վատ է. կադրեր ենք աճեցնում հանրապետության շինարարության համար:

Մեր բրիգադի հաջողության գրավականներից մեկն էլ, ինչպես Զլոբինի մոտ, համերաշխությունն է: Միմյանց լավ ճանաչում ենք, ընտանիքներով կապված ենք, ուրախություն է լինում որևէ մեկի մոտ՝ կոլեկտիվով ենք նշում, դժվարություններ են ծագում՝ նեցուկ ենք դառնում միմյանց, միասին հաղթահարում:

ՍՄԿԿ XXVII համագումարում ամենայն սրությամբ դրվեց մարդկային գործոնի հարցը: Կարող եմ ասել, որ մեզ մոտ այն միշտ էլ եղել է առաջին պլանում, կուսակցական, կազմակերպության և տնտեսական ղեկավարության ուշադրության կենտրոնում: Աշխատանքային բարձր ցուցանիշների հասնելու վճռորոշ գործոն են շինարարների կուլտուրական հանգստի կազմակերպումը և կենցաղային պայմանների բարելավումը: Սա առանցքային հարց է, և նրա լուծումը մարդկանց համակում է լավ տրամադրությամբ, բարձր որակով աշխատելու ձգտմամբ: Այս առումով մեր տրեստում զգալի գործ է արվում: Լավ աշխատողները օգտվում են բնակարանային պայմանների բարելավման, սանատորական ու հանգստյան տների, տուրիստական շրջագայության ուղեգրեր, անձնական օգտագործման ավտոմեքենաներ ստանալու արտոնություններից: Փաստորեն բոլոր կարիքավորներին կարող ենք ուղարկել սանատորական բուժման: Օբյեկտների մեծամասնությունում կան բանվորական և հանգստի սենյակներ, իսկ շինարարական իրերի կոմբինատում ու մեխանիկական բազայում շահագործման են հանձնվել կենցաղի նոր մասնաշենքեր: Այդ ամենը լավ է, բայց այսօրվա պահանջներն ավելի մեծ են: Մեր մի շարք կառույցներում չկան բանվորական ու հանգստի սենյակներ, խմելու ջուր ու լվացարաններ, սանհանգույցներ ու հասարակական սննդի անհրաժեշտ կետեր:

Տրեստի ադմինիստրացիան, կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները, ելնելով համագումարի որոշումներից, կազմել և հաստատել են սոցիա-

լական զարգացման միջոցառումների լայն ծրագիր, որի հաջող իրականացմամբ նոր բեկում կմտցվի մեր աշխատանքում:

Տրեստի կուսկոմիտեն և սկզբնական կազմակերպությունները համագումարի որոշումների լույսի ներքո միջոցառումներ են մշակել շինարարության գործերը բարելավելու համար: Ստեղծել ենք բանվորական վերահսկողության հանձնաժողովներ, որոնք ուսումնասիրում են շինարարության ընթացքն ու վիճակը, բացահայտում թերությունները և ներկայացնում կուսկոմիտեի կամ կուսբյուրոյի քննարկմանը: Մեզ առաջին հերթին մտահոգում են կառույցների շահագործման հանձնելու ժամկետների պահպանումը և շինմոնտաժային աշխատանքների բարձր որակի ապահովումը:

Որպես դեպուտատ շատ ժամանակ եմ տրամադրում ընտրողների պատվիրանների կատարմանը: Դրանք հիմնականում շոշափում են բնակարանային հարցեր: Լինում եմ շրջանային սովետների, քաղաքային սովետի գործկոմներում: Շատերին ենք կարողացել օգնել: Վերջերս տեխնոլոգիական սարքավորումների արտադրամիավորման արհկոմի նախագահը դիմեց ինձ՝ օգնելու կոլեկտիվի անդամների համար կոոպերատիվ բնակելի շենք կառուցելու հարցում: Եղա քաղսովետի գործկոմում, ընդառաջեցին, հողամաս հատկացրին: Բայց կան նաև պահանջներ, որոնք չենք կարողացել բավարարել: Ջգտում ենք ընթացք տալ նաև դրանց:

«Երարդշին» տրեստի բազմահազարանոց կոլեկտիվը կմոբիլիզացնի իր ուժերը տասներկուերորդ հնգամյակի մեկնարկային տարվա պլանները հաջողությամբ կատարելու, ՍՄԿԿ XXVII և ՀԿԿ XXVIII համագումարների որոշումները կենսագործելու համար: Իմ բրիգադն այս տարի շահագործման կհանձնի № 94 պրոֆտեխնիկական ուսումնարանի 6.500 **քմ** մակերեսով հանրակացարանի շենքը, ապա կձեռնարկի արտադրական օբյեկտների կառուցումը: Մենք բարձր կպահենք շինարարի պատիվը՝ գալիք սերունդներին թողնելով բարետես ու ամուր կառույցներ:

# ԿՊԱՏԱՍԽԱՆԵՆՔ ԳՈՐԾՈՎ

**Ա. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ**
***Հրազդանի շրջանի Աթարբեկյանի պետտնտեսության դաշտավարական բրիգադի բրիգադավար, ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր***

**ՍՄԿԿ** XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ նշանավորվեց որպես արդիականության խոշորագույն իրադարձություն, պատմական ուղենիշ՝ կուսակցության և ժողովրդի կյանքում: Այն առաջադրեց երկրի հետագա համակողմանի առաջընթացի բարձր բնագծեր: Ինձ համար մեծ պատիվ էր այդ պատմական համաժողովի անմիջական մասնակիցը լինելը: Այնտեղ քննարկվեցին և հաստատվեցին կուսակցության և պետության քաղաքականության արմատական ուղղությունները, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու հարցերը:

Մեր շրջանի, ամբողջ հանրապետության աշխատավորները ջերմորեն հավանություն են տալիս համագումարի որոշումներին, կուսակցության քաղաքականությանը: Նրանք ձգտում են համառ աշխատանքով կյանքի կոչել կուսակցության նոր, վիթխարի կանխագծումները: Հատկապես խոշոր տեղաշարժեր են նախատեսվում ժողովրդական տնտեսության այնպիսի կարևոր բնագավառում, ինչպիսին է ագրոարդյունաբերական համալիրը:

Համագումարը մատնանշեց, որ տնտեսավարման գործող մեխանիզմը, պլանավորման ու խթանման առկա մեթոդները բավարար չափով չեն նպաստակամղում գյուղի արտադրական պոտենցիալի ավելի լրիվ օգտագործմանը, գիտության նվաճումների լայն ներդրմանը, սոցիալական պրոբլեմների հաջող լուծմանը: Ի կատարումն համագումարի ցուցումների, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդը վերջերս որոշում ընդունեցին ագրոարդյունաբերական համալիրում տնտեսավարման մեխանիզմի հետագա կատարելագործման մասին: Տնտեսավարման նոր մեթոդների հիմնական իմաստը տնտհաշվարկի և կոլեկտիվ կապալի, աշխատանքի կազմակերպման և վարձատրման առաջավոր ձևերի լայն ներդրումն է, համալիրի բոլոր օղակները ինքնահատուցման, ինքնաֆինանսավորման փոխադրելը, արտադրության արդյունավետության շեշտակի բարձրացումը: Համագումարի առաջադրած՝ սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուրսի այս կարևոր գործոններին մեկ անգամ ևս անդրադարձավ ընկեր Մ. Ս. Գորբաչովը Կույբիշևի մարզի աշխատավորների ներկայացուցիչների հետ հանդիպման ժամանակ. «Կարևոր է, որ ագրոարդյունաբերական համալիրում տնտեսավարման նոր մեթոդները մտցվեն անհապաղ և ամենուրեք: Այնժամ մենք կկարողանանք ավելի արագ վերացնել աղությունը բնակչությանը մի շարք բարձրորակ մթերքների մատակարարման գործում»:

Մեր տնտեսությունում վերջին տարիներին լայնորեն ներդրվել են աշխատանքի կազմակերպման և վարձատրման նոր մեթոդները, որը տալիս է իր որոշակի դրական արդյունքները: Սակայն ձեռք բերվածը մեզ չի կարող բավարարել, և այդ գործը մենք պետք է առաջ մղենք ավելի հետևողականորեն ու վճռականորեն:

ՍՄԿԿ XXVII և ՀԿԿ XXVIII համագումարների առաջադրած նոր խնդիրների կենսագործման համար մեր շրջանն ունի տնտեսական ամուր բազա: Տասնմեկերորդ հնգամյակում շրջանի գյուղատնտեսության աշխատողները նախորդ հնգամյակի համեմատությամբ 11 տոկոսով ավելացրին գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքը. այն կազմեց 11 միլիոն 500 հազար ռուբլի: Այդ գործում մեծ ավանդ ներդրեցին Արզականի, Աղավնաձորի, Քաղսիի, Ջրառատի, Աթարբեկյանի և մի շարք այլ տնտեսություններ:

Լուրջ աշխատանք է կատարվում շրջանի գյուղատնտեսության կարևոր ճյուղի՝ անասնապահության զարգացման նպատակով, որի շնորհիվ մթերքների արտադրության և պետգնման պլանները կատարվել են անթերի:

Գիտության, առաջավոր փորձի ներդրման, արտադրության ինտենսիվացման, անասունների ցեղի բարելավման, ինչպես նաև աշխատանքների կազմակերպման ու վարձատրման առաջավոր մեթոդների կիրառման շնորհիվ շրջանում ավելացել են կովերի կաթնատվությունը և ինտենսիվ եղանակով աճեցվող մատղաշի կենդանի քաշը: Վերջերս Քաղսիի միջտնտեսային ձեռնարկությունում, հանրապետությունում առաջինը, շահագործման հանձնվեցին կաթի փոխարինիչի, ինչպես և ծղոտի հիդրոջերմային մշակման արտադրամասեր: Արդեն ընթացիկ տարում կարտադրվի 700 տոննա կաթի փոխարինիչ, իսկ դա հնարավորություն կընձեռի նույն քանակությամբ ապրանք կաթ ավելի վաճառելու պետությանը, որից տնտեսությունները կստանան 230 հազար ռուբլու լրացուցիչ եկամուտ:

Գյուղի աշխատավորության հայրենանվեր աշխատանքի շնորհիվ Հրազդանի շրջանը տասնմեկերորդ հնգամյակի եզրափակիչ տարում կրկին նվաճեց ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի, ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը: Դա շրջանի աշխատավորության նվիրված, բարեխիղճ աշխատանքի արդյունքն է, որի ձեռքբերման համար իրենց սրտի ջերմությունը և բազկի ուժն են ներդրել մեզանից յուրաքանչյուրը:

Աշխատել նվիրումով, պատասխանատվության զգացումով, խղճի թելադրանքով— սա է իմ կյանքի սկզբունքը: Այս սկզբունքով աշխատեցի, երբ 1974 թվականին երիտասարդ կոմունիստիս հանձնարարվեց Աթարբեկյանի պետական տնտեսության դաշտավարական բրիգադի ղեկավարությունը: Առաջին տարում բրիգադը ստացավ 18 ցենտներ միջին բերք: Այսօր այդ ցուցանիշը համարյա կրկնապատկվել է: Անշուշտ, դա էլ սահման չէ: Մեր հանրապետությունում կան տնտեսություններ, որոնք 60, անգամ 70 ցենտներ բերք են ստանում:

Հողի վրա բազմազան ու բարդ աշխատանքներ են կատարվում, մինչև որ արարվում է հացը մեր հանապազօրյա: Հասկանալի է, որ ծլունակ սերմն ու պարարտ հողը դեռևս բավական չեն առատ բերք ստանալու համար: Հողին ջերմություն է պետք՝ ոչ միայն արևի... Ամեն դեպքում լավ բերք ու բարիք ստանալու համար հույսդ միայն պետք է քո վրա դնես: Վերևից, որպես բարիք, կարող է անձրև թափ-

վել, որպես չարիք՝ կարկուտ: Առաջինը պետք է կարողանաս լավ օգտագործել, երկրորդի դեմ պիտի կռիվ տաս: Գործի շատ նրբություններ էլ, որոնց այսօր տիրապետում եմ, տարիների հետ են եկել, բայց, իհարկե, ոչ առանց ճիգերի ու ջանքերի: Այստեղ բազմաթիվ այլ հանգամանքներ էլ կան: Դրանցից ամենակարևորն այն է, թե ինչ եռանդով, ինչ սրտով ես աշխատում, ինչպես ես վերաբերվում քեզ հանձնարարված գործին: Կարճ ասած՝ չափազանց կարևոր է մարդկային գործոնի դերը: Ուրեմն, աշխատանքին պետք է նվիրվել: Նվիրվեցի: Հաջողությունները երկար սպասել չտվեցին, որի համար ես պարգևատրվեցի Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով և ստացա ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի, ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվո դիպլոմ: Մեկ տարի հետո՝ 1977-ին, արժանացա ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրության պատվոգրի, 1982-ին՝ ՍՍՀՄ պետական մրցանակի: Ուրեմն, մտածեցի ես, արդարացնում եմ մարդկանց վստահությունը: Այսօր էլ մենք կատարում ու գերակատարում ենք պլանները ու սոցպարտավորությունները: Իսկ դա բավակա՞ն է: Այսօր՝ այո, իսկ վա՞ղը... Կուսակցության XXVII համագումարում սրությամբ դրվեց էկոնոմիկան ինտենսիվ ռելսերի վրա փոխադրելու հարցը: Պահանջվում է գործողության մեջ դնել բոլոր ռեզերվներն ու հնարավորությունները, նվազագույնի հասցնել կորուստները, խնայել նյութական միջոցները, բարձրացնել աշխատանքի արդյունավետությունը: Ուրեմն, այսօրվա մեր արդյունքները վաղը չեն գոհացնի:

Անցած տարի, բնակլիմայական անբարենպաստ պայմաններում նույնպես մեր տնտեսությունում ավելացրինք հացահատիկի միջին բերքատվությունը, որի համար շատ ջանքեր ներդրեցին նաև իմ կոմունիստ ընկերներ Մ. Ղազարյանը, ՀԿԿ XXVIII համագումարի պատգամավոր, ՀԿԿ Հրազդանի շրջկոմի անդամ Ա. Խաչատրյանը: Բարձր ցուցանիշներն ապահովեց կոմունիստ, ծխախոտագործուհի, Աշխատանքային կարմիր դրոշի և «Պատվո նշան» շքանշանակիր Ե. Հակոբյանը: Քիչ բան չարեցին անասնապահները: Հովիվ, ՀՍՍՀ պետական մրցանակի դափնեկիր, Լենինի և «Պատվո նշան» շքանշանների ասպետ Ա. Սիմոնյանը, որը վերջին երկու տարում 0,5 կիլոգրամով ավելացրեց մեկ ոչխարի բրդատվությունը՝ հասցնելով 4,2 կիլոգրամի: Կթվորուհիներ, կոմունիստներ Ա. Այվազյանը, Հ. Մկրտչյանը յուրաքանչյուր կովի կաթնատվությունն ավելացրին 300—400 կիլոգրամով:

Կուսակցական փաստաթղթերի, բուն համագումարի նյութերի լայն քննարկումը, դրա կոնկրետ արդյունքները ցույց են տալիս, որ սովետական ժողովուրդը մեծ ոգևորությամբ, առաջադրվող խնդիրների կատարման մեծ վճռականությամբ է պաշտպանում կուսակցության ստրատեգիական կուրսը: Դա պաշտպանություն է խոսքով ու գործով: Այն նորը, որ մտնում է մեր կյանքի մեջ, ակտիվացնում է մարդկանց ստեղծագործական ուժերը, կրկին ու կրկին ցույց տալիս, թե դեռևս ինչպիսի թաքնված ռեզերվներ ու հնարավորություններ կան: Տնտեսության ֆերմայի մարդիկ պարտավորվել են մեկ կովի կաթնատվությունն ավելացնել 300 կիլոգրամով, պետությանը հանձնվող խոշոր եղջերավորների կենդանի քաշը հասցնել 400 կիլոգրամի, հացահատիկի բերքատվությունը՝ 36—40 ցենտների:

Ինչպես ընդգծվեց համագումարում, կյանքը, նրա դինամիզմը թելադրում են հետագա փոփոխություններ, հասարակության զարգացման նոր մակարդակի հասնելու անհրաժեշտություն: Այս հիմնարար պահանջի լույսի ներքո սուր քննադատության ենթարկվեցին անցած տարիների բացթողումները, թերացումները, առաջադրվեցին նոր խնդիրներ, որոնց լուծումը հրամայական պահանջ է երկրի հետագա առաջընթացի համար:

Հենց այս տեսանկյունից պետք է նշել, որ մեր շրջանում ևս տեղ են գտել թերություններ ու բացեր: Մեր տնտեսությունը, օրինակ, ունի 1.300 հեկտար վարելահող, որից 637-ը՝ ոռոգելի: Սակայն այդ հողատարածության ընդամենը 150 հեկտարն է լիարժեք ոռոգվում: Ավելին, վերջին տարիներին տնտեսությունում 200 հեկտար տարածության վրա անցկացվեց անձրևացման փակ համակարգ: Շահագործման առաջին իսկ օրվանից պարզվեց, որ այն կառուցվել է լուրջ սխալներով, ոչ ճիշտ հաշվարկումներով: Որպես հողի աշխատավոր՝ չեմ կարողանում պատկերացնել, թե ինչ նախագիծ է դա: Ասբեստի խողովակների վրա մի՞թե կարելի է երկաթե խողովակներով ցնցուղներ ամրացնել: Ճնշման տակ ջուրը կորչում է և ոչ մի կաթիլ՝



հողի երեսին: 200 հեկտարի ոռոգման ցանցի շինարարության համար ծախսվել է 874 հազար ռուբլի: Անցել են տարիներ, և ոչ մի կոպեկի հատույց չի ստացվել: Եթե այդ 200 հեկտարը ոռոգվեր և դրվեր սիլոսացու եգիպտացորենի ու առվույտի տակ, ապա հիմնականում կլուծվեր անասնակերի հարցը:

Հրազդանի պայմաններում ամառվա հենց սկզբներին չորանում են արոտավայրերը: Եթե տնտեսությունում հանդես բերեն նախաձեռնություն՝ ոռոգելու 637 հեկտար ամբողջ տարածությունը, ապա հնարավոր է հանրային հոտը փոխադրել ստացիոնար պահվածքի: Դա կլուծի մեր հիմնական պրոբլեմը. հայտնի է, որ տարիներ շարունակ տնտեսությունը չի կատարում կաթի արտադրության ու վաճառքի պլանները, բարձր է մեկ ցենտներ կաթի ինքնարժեքը. անցյալ տարի նախատեսված 33-ի փոխարեն այն կազմեց 44 ռուբլի:

Նշեցի, որ ունենք ոռոգման լայն հնարավորություններ, սակայն հեկտարից ստանում ենք ընդամենը 104 ցենտներ կարտոֆիլ: Դա այն դեպքում, երբ մեր հարևան Աղավնաձորի կոլտնտեսությունը ստանում է 380 ցենտներ բերք, իսկ ընտանեկան կապալի մեթոդով մշակվող հողատարածություններում՝ 500 ցենտներ:

Ո՞ւմ հայտնի չէ, որ ագրոքարտեզների ճիշտ կիրառումը բարձրացնում է հեկտարի բերքատվությունը: Մեր տնտեսությունում դրանք վատ են կիրառվում:

Օրգանական պարարտանյութը անփոխարինելի հարստություն է հողի համար, բայց այն դաշտ է տեղափոխվում առանց հասունացման: Այստեղ այլևս ինչ օգուտի մասին կարող է խոսք լինել:

Զգացվում է կադրերի պակաս թե՛ դաշտավարության և թե անասնապահության բնագավառներում: Դա ամենից առաջ բացատրվում է նրանով, որ նախկին գյուղն այժմ դարձել է քաղաքի թաղամասերից մեկը: Արդյունաբերական քաղաքում շատ են հիմնարկություններն ու ձեռնարկությունները: Եթե ավելացնենք, որ մեր աշխատողներին այստեղ տրամադրում են բնակարաններ... Բնակիչը, ստանալով այն, մշտական բնակություն է հաստատում քաղաքում: Մեր ֆերմաներում աշխատանքն սկսվում է ժամը 4—5-ին, մինչդեռ այդ ժամերին տրանսպորտ չկա: Ուստի անասնապահը կամա թե ակամա փոխում է աշխատավայրը:

Կան նաև այլ պատճառներ. անցյալ տարի տնտեսությունում շահագործման հանձնվեցին 400 գլխի համար հարմարավետ կովանոցներ: Բոլոր աշխատատար պրոցեսները մեքենայացված են: Սակայն վատն այն է, որ նախագծողները «մոռացել են» կթվոր-անասնապահների հանգստի, սանհիգիենիկ պայմանների բարելավման հարցերը: Հիանալի անասնաշենքերում անասնապահների ազատ ժամանակը խելացիորեն կազմակերպելու համար չկան ամենատարրական պայմանները հեռուստացույց դիտելու, թերթեր կարդալու, լոգանք ընդունելու և հանգստանալու համար:

Աշխատող ձեռքի և կադրերի պակասը համալրելու համար դեռևս 1983 թվականին նախատեսված էր սկսել բանավանի շինարարությունը: Անցնում են տարիները, և մինչև օրս, ինչպես ասում են, «սայլը տեղից չի շարժվում»:

Տնտեսությունում աշխատում են 300 բանվոր-ծառայողներ, սակայն թաղամասում չկան երիտասարդության հանգստի կազմակերպման պայմաններ: Կուլտուրայի տունը 4—5 տարի է նորոգման պատրվակով չի գործում, անբարեկարգ են փողոցները, չկա արդյունաբերական խանութ, որտեղից հնարավոր լինի ձեռք բերելու գյուղգործիքներ, թունաքիմիկատներ, չկա բանվորական ճաշարան:

Համագումարը նոր, լուսավոր հեռանկարներ նախանշեց մեր հայրենիքի հետագա առաջընթացի համար: Հաճելի է գիտակցել, որ ապագան ավելի գեղեցիկ կլինի, կկատարվեն էական տեղաշարժեր երկրի տնտեսական ու սոցիալական կյանքի բոլոր բնագավառներում: Սակայն մենք երբեք չպետք է մոռանանք, որ մեր պլանների հաջող կատարումը պայմանավորված է մեզանից յուրաքանչյուրի համառ, ստեղծագործ աշխատանքով: Ելնելով համագումարի պահանջներից՝ յուրաքանչյուրն իր պոստում, իր աշխատատեղում պետք է արմատապես վերակառուցվի, մտածի ու գործի նորովի, ամենաակտիվ մասնակցությունն ունենա ոչ միայն իր անհատական առաջադրանքների, այլև ամբողջ կոլեկտիվի գործերին: Իմ ղեկավարած բրիգադի մարդիկ ստանձնել են նոր, բարձր պարտավորություններ՝ աշխատել առավել արդյունավետ և տասներկուերորդ հնգամյակի առաջադրանքները կատարել չորսուկես տարում:

---

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

*ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ արդի փուլը բնութագրվում է սոցիալ-տնտեսական խոշոր խնդիրների լուծման գործում գիտատեխնիկական առաջադիմության դերի ուժեղացմամբ։ Դա գլխավորապես պայմանավորված է ԳՏԱ-ի արագացման տեղի ունեցող պրոցեսով, նրա մասշտաբների ընդլայնմամբ և արդյունավետության բարձրացմամբ։ ՍՄԿԿ XXVII համագումարը խնդիր դրեց արագացնել գիտատեխնիկական առաջադիմության տեմպերը՝ որպես արտադրության ինտենսիվացման վճռական պայմանի։ Առաջին պլան է մղվում գիտության և տեխնիկայի նվաճումները տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ օրգանապես միացնելու խնդիրը։ Երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման տասներկուերորդ հնգամյակի և մինչև 2000 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում ասված է. «...ըստ ամենայնի արագացնել գիտատեխնիկական առաջադիմությունը։ Վճռականորեն բարձրացնել գիտության ու տեխնիկայի դերը արտադրողական ուժերի որակական վերակառուցման, էկոնոմիկան համակողմանի ինտենսիվացման ռելսերի վրա փոխադրելու, հասարակական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու գործում»։*

*Գիտատեխնիկական առաջադիմության արագացումը և նրա ներգործության ուժեղացումը արտադրության ինտենսիվացման վրա, պարտավորեցնում են նորովի մոտենալ տնտեսական զարգացման արդյունավետության գնահատմանը։ Եթե նախկինում շեշտը դրվում էր և՛ էքստենսիվ, և՛ ինտենսիվ գործոնների արդյունավետության վրա, ապա այժմ տնտեսական աճի գլխավոր ուղղությունը գիտատեխնիկական առաջադիմության և արտադրության ինտենսիվացման հիման վրա արդյունավետության բարձրացումն է։*

*Գիտատեխնիկական առաջադիմության և արտադրության արդյունավետության միջև առկա են բազմակողմանի, ուղղակի և հետադարձ կապեր, բարդ է դրանց փոխգործողության մեխանիզմը։*

*Կատարելագործելով արտադրության բոլոր տարրերը՝ գիտատեխնիկական առաջադիմությունը միաժամանակ դառնում է նյութական, աշխատանքային, ֆինանսական ռեսուրսների խնայողության անհրաժեշտ պայման։ ՍՄԿԿ XXVII համագումարը սահմանեց, որ արդի փուլում ԳՏԱ-ն արտադրության արդյունավետության բարձրացման վրա վճռական ներգործություն է ունենում արտադրանքի նյութատարության և ֆոնդատարության նվազեցման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, հասարակական արտադրության ռացիոնալ ճյուղային կառուցվածքի ձևավորման, ֆոնդահատույցի ավելացման ուղիով։*



*Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարում նշվեց, որ այժմ մեր հանրապետության տնտեսական շինարարության ասպարեզում առանձնապես կարևորվում է արտադրանքի նյութատարության նվազեցումը։ Այդ ցուցանիշի վրա գիտատեխնիկական առաջադիմության ներգործությունն արտահայտվում է մեկ միավոր արտադրանքին ընկնող հումքի, նյութերի, վառելիքի, էլեկտրաէներգիայի ծախսումների կրճատման, ինչպես նաև այնպիսի նոր նյութերի ստեղծման միջոցով, որոնք իրենց հատկանիշներով ոչ միայն չեն զիջում, այլև հաճախ գերազանցում են ավանդական նյութերին։*

*Մեծ է արտադրության պրոցեսում նյութական ռեսուրսների խնայողության ժողովրդատնտեսական նշանակությունը։ Դա հավասարազոր է հումքային բազայի ընդլայնմանը՝ արդյունահանող ճյուղերի արտադրական պոտենցիալի արդի մակարդակի պահպանմամբ։ Այն միաժամանակ հանգեցնում է կենդանի աշխատանքի տնտեսման և, համապատասխանաբար, աշխատանքի հասարակական արտադրողականության բարձրացման։ Նյութական ռեսուրսների խնայողությունը նաև հիմնական և շրջանառու արտադրական ֆոնդերի օգտագործման արդյունավետության բարձրացման կարևորագույն գործոններից մեկն է։*

*Ըստ գիտական կանխատեսումների՝ մոտակա երկու տասնամյակներին հանրապետության մեքենաշինության հիմնական ելանյութերը կմնան պողպատի գլանվածքը, կռվածքը և ձուլվածքը։ Ուստի այդ ճյուղում նյութատարության նվազեցման պահանջը հիմնականում հանգում է մետաղատարության իջեցման։ Ինչպես հայտնի է, տեսակարար մետաղատարությունը մեքենաների որակի կարևոր ցուցանիշներից է։ Ըստ ՀՍՍՀ պետպլանի էկոնոմիկայի և պլանավորման ԳՀԻ-ի տվյալների, հանրապետությունում թողարկվող հաստոցների միջին քաշը 1,23 տոննա է. դա զգալիորեն բարձր է, քան Լատվիայում, Լիտվայում և մի քանի այլ հանրապետություններում։ Հաշվի առնելով ոչ միայն նյութատարության նվազեցման հրատապ անհրաժեշտությունը, այլև այն հանգամանքը, որ մեր հանրապետությունը չունի սև մետաղի արտադրություն, վերջին տարիներին մեզ մոտ նվազ մետաղատար մեքենաների մշակման և ներդրման կուրս է վերցված։ Մեքենաների և ագրեգատների մետաղատարության ու չափսերի պակասեցման կարևոր ուղղություն է դրանց ունիֆիկացիան և հիդրոֆիկացիան։*

*Ինչպես ցույց է տալիս առաջավոր ձեռնարկությունների փորձը, ատամնավոր, պտուտակավոր, լծակավոր և մյուս զուտ մեխանիկական տարրերի փոխարինումը հիդրավլիկ և պնեմատիկ մեխանիզմներով հնարավորություն է տալիս պարզեցնել մեքենան, բարձրացնել նրա շարժունակությունը և պակասեցնել քաշը։ Այս խնդրի իրականացման համար նպատակահարմար է տեխնոլոգիական սարքավորումների արտադրական միավորումում կազմակերպել համապատասխան սարքավորումների կենտրոնացված արտադրություն, որը կապահովի այդ մեխանիզմների նկատմամբ հանրապետության մեքենաշինական ձեռնարկությունների պահանջները։ Մետաղատարության նվազեցման արդյունավետ ուղղություններից է ձուլվածքների փոխարեն մեքենաների զոդված և դրոշմված թեթև իրանների ու դետալների կիրառումը։ Դրանց փորձանմուշներն արդեն պատրաստված են «Հայհաստոց» գիտաարտադրական միավորումում։ Մետաղի զգալի խնայողություն են ապահովում արտադրանքի որակի բարձրացումը և այնպիսի տեսականու ընդլայնումը, որն ունի ամրության, հակակոռոզիոն և մաշվածադիմացկուն լավագույն հատկանիշներ։*

*Մեքենաշինության մեջ մետաղի տնտեսման կարևոր ռեզերվ է պատրաստի դետալների չափերին համապատասխանող նոր պրոֆիլների գլանվածքի կիրառումը, ինչպես նաև մետաղի թափոնները նվազագույնի հասցնող այնպիսի արդյունավետ տեխնոլոգիական պրոցեսների լայն ներդրումը, ինչպիսիք են ձուլվածքի և դրոշմվածքի նորագույն ձևերը, մետաղափոշու, պլաստմասսաների կիրառումը և այլն։ Հանրապետության մեքենաշինության մեջ անթափոն տեխնոլոգիաների, պատրաստուկների ստացման առաջադիմական մեթոդ-*

տեսության զարգացման 1986—1990 թթ. և մինչև 2000 թ. ընդգրկող ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում առաջադրված խնդրին՝ առաջանցիկ տեմպերով զարգացնել գիտատեխնիկական առաջադիմությունը որոշող և սոցիալական խնդիրների լուծմանը նպաստող ճյուղերը և արտադրությունները:

Հանրապետության մեքենաշինական արդյունաբերության զարգացման դինամիկայի ուսումնասիրությունը վկայում է այդ ճյուղերի արտադրանքի առաջանցիկ աճի մասին: Այսպես, հանրապետության մեքենաշինության արտադրանքում ռադիոէլեկտրոնային արդյունաբերության բաժինը վերջին մեկուկես տասնամյակում մեծացել է ավելի քան երեք անգամ: Նշված ճյուղերում տեղի են ունեցել ոչ միայն քանակական, այլև որակական փոփոխություններ: Հաստոցների արտադրության ընդհանուր ծավալի համեմատաբար ոչ մեծ աճի պայմաններում զգալիորեն ավելացել է թվածրագրային կառավարմամբ և բարձր ճշգրտությամբ հաստոցների թողարկումը, արմատապես փոխվել է պատրաստվող սարքերի տեսականին:

Այդուհանդերձ, մեքենաշինության առանձին ճյուղերի զարգացման մակարդակը դեռևս չի համապատասխանում տեխնիկական առաջադիմության արագացման պահանջներին: Հապես եռ է մնում միջճյուղային և ներճյուղային արտադրական կապերի զարգացումը: ԳՏԱ-ի արագացման պայմաններում մեծանում է ընդհանուր մեքենաշինական արտադրանքի թողարկման համար մասնագիտացված արտադրությունների ստեղծման անհրաժեշտությունը: Մինչև այժմ հանրապետության ոչ մեքենաշինական ձեռնարկությունները սեփական կարիքների համար իրենք են արտադրում ամրացնող մետաղյա իրերի՝ ատամնանիվների, արգելակների, միացնող կցորդիչների կեսից ավելին: Ուստի գիտատեխնիկական առաջադիմության արագացման պայմաններում մասնագիտացման ուժեղացումը, փոխադարձ մատակարարումների զարգացումը ճյուղային կառուցվածքի կատարելագործման և համապատասխանաբար արտադրության արդյունավետության բարձրացման հիմնական ուղղություններից են:

Գիտատեխնիկական առաջադիմության արագացումն առաջին պլան է մղում տնտեսական մեխանիզմի կատարելագործումը, որն անընդմեջ պրոցես է և մշտապես պետք է համապատասխանեցվի գիտության ու տեխնիկայի առաջընթացի տվյալ շրջանի նվաճումներին: Այդ կապակցության մեջ փոփոխություններ են տեղի ունենում կառավարման կազմակերպական կառուցվածքում, որը սկզբնական տնտեսական օղակի հետագա զարգացման արդյունք է: Մինչև տասնմեկերորդ հնգամյակի վերջը հանրապետությունում ստեղծվել են 80-ից ավելի արտադրական և գիտաարտադրական միավորումներ, որոնք ներառնում են ինքնուրույն հաշվեկշռով 140 արտադրական միավորներ: Դրանց բաժին է ընկնում արդյունաբերության ամբողջ իրացված արտադրանքի 48 տոկոսը և արդյունաբերական-արտադրական անձնակազմի 57 տոկոսը: ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումը, ապա նաև կուսակցության XXVII համագումարը անհրաժեշտ համարեցին արտադրական և գիտաարտադրական միավորումների հետագա կատարելագործմանը զուգընթաց արդյունավետ կերպով զարգացնել խոշոր, միջին և մանր ձեռնարկությունները: Կառավարման գործունեության վերակառուցումներ են նախատեսվում նաև մինիստրությունների և գերատեսչությունների մակարդակով: Այսպես, Հայկական ՍՍՀ գիտատեխնիկական առաջադիմության հեռանկարային կոմպլեքսային ծրագրով առաջարկվում է հանրապետության ժողովրդական տնտեսության կառավարման համակարգում ստեղծել կոմպլեքսային բազմաճյուղ գերատեսչություններ:

Գիտության ու տեխնիկայի առաջադիմությունը որակական փոփոխությունների է հանգեցնում նաև բուն արտադրության կառավարման պրոցեսում: Արդյունաբերության մեջ հաշվողական տեխնիկայի ներդրմամբ ստեղծվում են տեխնոլոգիական խոշոր պրոցեսների և ամբողջ ձեռնարկությունների կառավարման ավտոմատացված համակարգեր: Ներկայումս հանրապետությունում գործում են այդպիսի շուրջը 50 համակարգեր: Հաջորդ, առավել բարձր մակարդակը կլինի կառավարման հանրապետական ավտոմատացված համակարգի ստեղծումը, որը կգործի կոլեկտիվ օգտագործման հաշվողական համակարգերի և ինֆորմացիայի հաղորդման ցանցերի հիման վրա:

ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշմամբ մշակվում է Հայկական ՍՍՀ գիտատեխնիկական առաջադիմության հեռանկարային կոմպլեքսային ծրագիր, որից հետագայում կբխեն հնգամյա պլանների բոլոր հիմնական բաժինները: Այսպիսով, ստեղծվում է գիտատեխնիկական առաջընթացի արագացման պլանավորման նոր լծակ:

Տնտեսական մեխանիզմի կատարելագործման և հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման գործուն միջոց է տնտեսավարման նոր մեթոդների ներդրումը, որոնց զգալի առավելություններն ակնհայտ դարձան խոշորամասշտաբ տնտեսափորձի ընթացքում:

Այսպիսով, առկա է փոխադարձ կապը և փոխգործողությունը «ԳՏԱ-ի արագացում—տնտեսական մեխանիզմի կատարելագործում—արտադրության արդյունավետության բարձրացում» շղթայի օղակների միջև: ՍՄԿԿ XXVII համագումարի մշակած գիտատեխնիկական քաղաքականությունը առավել ակտիվորեն է նպաստում այդ կապի ուժեղացմանը, արտադրության արդյունավետության բարձրացմանը: Միաժամանակ ավելի ու ավելի նշանակալից են դառնում փոխադարձ կապի մասշտաբները, այսինքն՝ արտադրության արդյունավետության աճի ազդեցությունը գիտատեխնիկական առաջադիմության տեմպերի վրա: Նախ և առաջ, սոցիալիստական արտադրության արդյունավետության բարձրացումը նպաստում է արտադրական կուտակումների ծավալների ավելացմանը և այդ հիման վրա գիտական հետազոտությունների ու տեխնիկական մշակումների նպատակին հատկացվող միջոցների ու ռեսուրսների աճին: Երկրորդ, արտադրության արդյունավետության բարձրացումը ներառնում է սարքավորումների առավել լրիվ օգտագործումը, կրճատում է լիակատար հատույցի ժամանակը և, համապատասխանաբար, տեխնիկապես առավել առաջադեմ սարքավորումներով դրանք փոխարինելու տնտեսապես արդարացված ժամկետները:

Երրորդ, սոցիալիզմի օրոք արտադրության արդյունավետության աճը հնարավորություն է ստեղծում ավելացնելու սպառման ֆոնդերը և ժողովրդի բարեկեցության բարձրացմանը հատկացվող միջոցները: Իսկ դա, բնականաբար, նպաստում է նաև աշխատավորների, ԳՏԱ-ի սուբյեկտների և կերտողների կուլտուրական ու գիտատեխնիկական մակարդակի բարձրացմանը: Այսպիսի մոտեցումը լիովին համապատասխանում է ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած՝ մարդկային գործոնի ակտիվացման դրույթին, որը գիտության ու տեխնիկայի պրոգրեսի հզոր խթան է:

Այժմ երկրում սկսվել է ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների նոր վերակառուցում, որը կոչված է որակապես վերափոխելու հասարակության նյութատեխնիկական բազան: Նախատեսվածն իրականացնել կարելի է միայն արտադրության ինտենսիվացման ճանապարհով, գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումների հիման վրա:

---

# ՆԵՐՔԻՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԻ ՀԱՇՎԻՆ

**Գ. ԱՎԱԳՅԱՆ**
*Աշխարհագրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր*

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ խնդիր դրեց իրականացնել ամբողջ գյուղատնտեսական արտադրության, ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ճյուղերի մասշտաբային փոխադրումը զարգացման ինտենսիվ ուղու: Դա առանձնապես վերաբերում է նաև մեր սակավահող հանրապետության գյուղատնտեսության հետագա զարգացմանը, որը հնարավոր է ապահովել միայն ինտենսիվացման միջոցով, մեծ մասշտաբներով ու արագացված տեմպերով: Այդ կենսական խնդրի իրականացման ուղին արտադրության կառավարման և տնտեսավարման մեթոդների կատարելագործումն է, ներքին ռեսուրսների և ռեզերվների արդյունավետ օգտագործումը, որն ամենայն սրությամբ դրվեց ՍՄԿԿ XXVII և ՀԿԿ XXVIII համագումարներում:

Ներքին ռեսուրսների լիովին և արդյունավետ օգտագործումը հնարավոր է յուրաքանչյուր կոնկրետ շրջանի (ռեգիոնի) բնատնտեսական և բնակեցվածության առանձնահատկությունները հաշվի առնելու պայմաններում: Լեռնային ռելիեֆ ունեցող մեր հանրապետությունն աչքի է ընկնում բնական պայմանների ամբողջ կոմպլեքսի զգալի բազմազանությամբ: Այսպես, Էջմիածին—Աշտարակ—Ապարան ընդամենը 50 կմ գծի վրա փոխվում են չորս բնական ուղղաձիգ գոտիներ (չոր տափաստան, լեռնային տափաստան, լեռնային մարգագետին, լեռնային տունդրա), որոնցից յուրաքանչյուրն ունի իր յուրահատուկ պայմանները:

Ըստ ուղղաձիգ գոտիականության նվազում են ցանքերը և բազմամյա տնկարկների զբաղեցրած տարածքը, գերակշռում են խոտհարքերն ու արոտավայրերը: Բնակավայրերը և բնակչությունը գլխավորապես տեղաբաշխված են համեմատաբար ցածրադիր հարթ տարածքներում և, ըստ ուղղաձիգ գոտիների, նվազում են բնակչության խտությունը և բնակավայրերի թիվը: Հանրապետության տարածքի գերակշիռ մասը, շուրջ 85 տոկոսը, կազմված է տարբեր թեքության լանջերից, որոնց տնտեսական օգտագործումը կապված է լրացուցիչ դժվարությունների և կապիտալ ներդրումների հետ: Դրան զուգընթաց, մշակովի տարածքը կազմված է փոքր և անկանոն ուրվագծով հողակտորներից, որոնք, հաճախ, իրարից բաժանված են դժվարանցանելի ձորերով և խորխորատներով: Մեր հանրապետությունում մշակովի հողակտորների միջին չափը կազմում է 5 **հա,** իսկ մոտ 50 տոկոսը կազմված է մինչև 3 **հա** հողակտորներից: Հողակտորների նման չափերի և անկանոն կոնֆիգուրացիայի հետևանքով տրակտորները տարեկան կատարում են շուրջ 2 **մլն կմ** դատարկ վազք:

Լեռնային տարածքի բնական պայմանների այս առանձնահատկությունները պահանջում են գյուղատնտեսական արտադրության համապատասխան տեղաբաշխում, մասնագիտացում և կազմակերպման ճկուն ձևերի ու մեթոդների կիրառում: Ներքին ռեսուրսները խելացիորեն և նպատակային օգտագործելու հաշվին արտադրության արդյունավետության բարձրացման նպատակով քննարկենք մեր հանրապետությունում խոշոր եղջերավոր անասնաբուծության տեղաբաշխման, մասնագիտացման և կառավարման կատարելագործման մի քանի հարցեր:

Տավարաբուծության տեղաբաշխումը, նեղ մասնագիտացումը և արդյունավետությունը մեծապես պայմանավորված են բնական կերային բազայով, ճախրի կառուցվածքով և մսի ու կաթի սպառման նկատմամբ ներկայացվող կոնկրետ պահանջներով: Հայտնի է, որ գլխավորապես արոտային պահպանման վրա հիմնված



տավարաբուծությունը, որպես կանոն, մասնագիտանում է մսատու, իսկ մսուրայինը՝ կաթնատու ուղղությամբ: Լեռնային շրջաններում, որտեղ սովորաբար գերակշռում են արոտավայրերը, նոսր է բնակչությունը, մեծ չէ թարմ կաթի նկատմամբ եղած պահանջը: Այնտեղ, որտեղ քիչ են կամ բացակայում են արոտավայրերը և խիտ է բնակեցվածությունը, հատկապես գերակշռում է քաղաքային բնակչությունը, և բնականաբար մեծ է թարմ կաթի նկատմամբ պահանջը: Ուստի կաթնատու ուղղությամբ մասնագիտացվող տնտեսությունների տավարի նախրում մեծ պետք է լինի կովերի տեսակարար կշիռը:

Մեր հանրապետությունում նման տարբերակված հիմնավոր մոտեցում հանդես չի բերվել: Դա նշանակում է, որ անտեսվում են կոնկրետ բնատնտեսական առանձնահատկությունները և լիովին չեն օգտագործվում ներքին ռեսուրսները: Ինչպես ՀԿԿ XXVIII համագումարում իր զեկուցման մեջ իրավացիորեն նշեց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, «Լուրջ թերություններ կան հանրային հոտի վերարտադրության կազմակերպման գործում: Մի շարք շրջաններ անբավարար են կատարում կովերի գլխաքանակի ավելացման մասին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության կառավարության համատեղ որոշումները: Վերջին տարիներս հանրային հոտր մեջ կովերի տեսակարար կշիռը չի անցնում 32—33 տոկոսից: ...1985 թվականին հանրապետությունում կովերի ստերջությունը կազմել է 22 տոկոս»:

Բնատնտեսական պայմանների և թարմ կաթի նկատմամբ ունեցած պահանջների ռեգիոնալ տարբերությունների համեմատ բարձրադիր և կտրված մակերևույթով շրջանների տնտեսությունների տավարի նախրում կովերի տեսակարար կշիռը կարող է լինել փոքր, իսկ համեմատաբար ցածրադիր և հարթ մակերևույթով տնտեսությունների նախրում՝ մեծ:

Տավարաբուծության այդպիսի մասնագիտացման արդյունավետությունը լեռնային շրջաններում հիմնավորվում է նաև այնպիսի կարևոր փաստով, ինչպիսին են կովերի կաթնատվության տարբերությունները ըստ ուղղաձիգ բարձրության: Ապացուցված է, որ լեռնային բարձրադիր գոտում մակերևույթի անհարթության, օդի նոսրության, ինչպես նաև օրվա ընթացքում եղանակի կտրուկ փոփոխության հետևանքով նվազում է կովերի կաթնատվությունը: Այդպիսի եզրակացությունը հիմնավորվում է նաև ՀՍՍՀ-ում ըստ վարչական շրջանների մեկ կովի միջին կաթնատվության տվյալներով: Պարզվում է, որ լեռնային շրջաններում այդ ցուցանիշը զգալիորեն ցածր է (10—30 տոկոսով) հանրապետության միջինից (2.089 **կգ**) և 20—50 տոկոսով ցածր հարթ մակերևույթով և համեմատաբար ցածրադիր շրջանների միջին ցուցանիշից: Բացառություն է կազմում միայն Ղուկասյանի շրջանը, որտեղ շրջանի ներսում տնտեսությունները մասնագիտացնելու և նրանց միջև տնտեսական նպատակային արտադրական կապեր ստեղծելու միջոցով վերջին 5 տարում բավական բարձրացել է կովերի միջին կաթնատվությունը (2.356 **կգ**), որը, սակայն, դարձյալ զիջում է համեմատաբար ցածրադիր հարթ մակերևույթով շրջանների միջին ցուցանիշին: Այդ փաստը ևս վկայում է այն մասին, որ տնտեսությունների նեղ մասնագիտացման միջոցով նույնիսկ լեռնային բարձրադիր շրջաններում, ինչպիսին տվյալ դեպքում Ղուկասյանի շրջանն է, հնարավոր է զգալիորեն բարձրացնել կովերի միջին կաթնատվությունը: Այստեղից պարզ է դառնում, թե դա կաթնատվության բարձրացման ինչպիսի խոշոր ռեզերվ կարող է լինել հատկապես հարթ մակերևույթով համեմատաբար ցածրադիր շրջաններում:

Այնուամենայնիվ, ինչո՞ւ մինչև այժմ այդքան ակնհայտ շահավետություն խոստացող առաջարկությունը չի ներդրվել: Եթե շիտակ ասենք, իսկ կուսակցությունն այժմ առավել քան երբևէ դա է պահանջում մեզանից, այստեղ խանգարող գործոններ են հանդիսացել պլանավորման գոյություն ունեցող կարգը, վարչատերիտորիալ կառուցվածքը և աշխատողների հոգեբանական կաշկանդվածությունը: Հայտնի է, որ ըստ գործող պլանավորման կարգի, բոլոր շրջաններին և տնտեսություններին իջեցվում են մսի, կաթի և այլ մթերքների գրեթե համաչափ պլաններ, իսկ շրջանների և տնտեսությունների ղեկավարներն էլ ամեն կերպ ձգտում են իրենց ենթակայության վարչական տարածքի սահմաններում իրականացնել առաջադրանքները՝ չփորձելով տնտեսական և տեխնոլոգիական կապեր ստեղծել նույն վարչական շրջանի մեջ մտնող ուրիշ տնտեսությունների հետ, էլ չենք խոսում վարչա-

կանորեն այլ շրջանի մեջ մտնող, սակայն տերիտորիալ առումով կից տնտեսության հետ կապեր ստեղծելու մասին: Ըստ էության, այն տպավորությունն է ստացվում, որ գյուղական շրջանների և տնտեսությունների սահմանները ստանձնել են «դեմարկացիոն գծի» դեր:

Այժմ կուսակցությունը գիտության բնագավառի և կառավարման ղեկին կանգնած աշխատողների առջև խնդիր է դրել որոնել, գտնել և շարժման մեջ դնել այն բոլոր լծակները, որոնք կնպաստեն ներքին ռեսուրսների լիարժեք օգտագործման հաշվին բարձրացնելու երկրի էկոնոմիկան, արտադրության արդյունավետությունը:

Մեր ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ տավարաբուծության խելամիտ և նպատակահարմար տեղաբաշխումը և արտադրության նեղ մասնագիտացումը միայն Հայկական ՍՍՀ-ում կտան տասնյակ միլիոնավոր ռուբլիների տնտեսական օգուտ: Դիմենք կոնկրետ փաստերի:

Ախուրյանի շրջանում կոլտնտեսությունների, սովխոզների և պետական մյուս տնտեսությունների տավարի նախրում կովերի տեսակարար կշիռը 1985 թ. հունվարի 1-ի դրությամբ կազմել է 26,8, իսկ հարևան Արթիկի շրջանում՝ 31,2 տոկոս, կովերի միջին կաթնատվությունը առաջինում՝ 2.440, երկրորդում՝ 1.768 **կգ**: Պարզ է, որ անարդյունավետ է հոտի կառուցվածքը Ախուրյանի շրջանում: Նույնիսկ եթե պայմանականորեն ընդունենք, որ կովերի տեսակարար կշիռը Ախուրյանի շրջանում ևս հասցվի 31,2 տոկոսի (որը նույնպես շատ ցածր ցուցանիշ է), ապա առանց լրացուցիչ ծախսերի կարելի է ստանալ ավելի քան յոթ հարյուր հազար **կգ** կաթ: Բայց չէ որ կարելի է նաև Ախուրյանի շրջանը մասնագիտացնել հիմնականում կաթնատու, իսկ Արթիկի շրջանը՝ մսատու ուղղությամբ, և այդ նպատակով խոշոր եղջերավոր անասունների այլ խմբերից 3,5 հազար գլուխ տեղափոխել առաջինից երկրորդը, իսկ վերջինից էլ 3 հազար գլուխ կովեր՝ առաջինը[1]: Եվ դարձյալ առանց լրացուցիչ ծախսերի, այդ թվում՝ նաև առանց լրացուցիչ կերի, Ախուրյանի շրջանում հնարավոր կլինի կաթի արտադրանքը ավելացնել 2.016 հազար **կգ**-ով: Եթե նկատի ունենանք, որ տնտեսության նեղ մասնագիտացման դեպքում մեկ կովի միջին կաթնատվությունը Ախուրյանի շրջանի տնտեսություններում կարող է բարձրանալ և հասնել հանրապետության ամենաբարձր ցուցանիշին (Շահումյանի շրջանում՝ 3.500 **կգ**), ապա այդ շրջանում կաթի արտադրության ընդհանուր ծավալը կավելանա շուրջ 17 միլիոն **կգ**-ով, այսինքն՝ ավելի քան կկրկնապատկվի: Հետևաբար, Ախուրյանի և Արթիկի շրջաններում, միասին վերցրած, կաթի ընդհանուր արտադրանքը կաճի ավելի քան 50 տոկոսով: Երկու շրջանների նման մասնագիտացումը շահավետ է նաև արտադրանքի ինքնարժեքի իջեցման առումով, որը համահնչուն է ՀԿԿ XXVIII համագումարի առաջադրած պահանջին՝ «հետևողականորեն պակասեցնել գյուղատնտեսական արտադրանքի արտադրության թե՛ նյութական և թե դրամական ծախսումները, իջեցնել ինքնարժեքը»: Պարզվում է, որ կաթի արտադրանքի մեկ ցենտների ինքնարժեքը կազմում է. Ախուրյանի շրջանի կոլտնտեսություններում՝ 32.17 ռ., սովխոզներում՝ 33,77, իսկ Արթիկի շրջանում համապատասխանաբար՝ 41,05 ռ. և 35,73 ռ. և միայն ինքնարժեքների տարբերության հաշվին ստացած օգուտը կհասնի առնվազն 700 հազար ռուբլու: Պակաս կարևոր չէ նաև այն հանգամանքը, որ մեկ քառ. **կմ**-ի վրա ապրում է Ախուրյանի շրջանում 453 մարդ (Լենինականի բնակչությամբ), Արթիկի շրջանում՝ 92 մարդ (Արթիկ քաղաքի բնակչությամբ) և, բնականաբար, Ախուրյանի շրջանի տնտեսությունները իրենց վրա պիտի վերցնեն արագորեն աճող Լենինականի բնակչությանը թարմ կաթնամթերքներով բավարարելու գործը:

Սահմանակից այս երկու շրջանների բնատնտեսական պայմանները և դեմոգրաֆիական իրավիճակը համակողմանի հաշվի առնելու օրինակով հանրապետության մյուս շրջանների խմբավորման և համապատասխան մասնագիտացման շնորհիվ ռեալ հնարավորություն է ստեղծվում ավելի լրիվ և նպատակային օգտագործել ներքին ռեսուրսները և դրանց հաշվին հասնել բարձր արդյունքի: Այդ մասին են վկայում հետևյալ հաշվարկները.

*1 Փոխանակվող անասնագլխաքանակի տարբերությունը երկու շրջանների միջև բացատրվում է այն հանգամանքով, որ 1 գլուխ կովը շուրջ 20 տոկոսով ավելի կերամիավոր է ծախսում, քան տավարի մյուս սեռահասակային խմբերի 1 գլուխը:*



Հարթ մակերևույթով խտաբնակ 13 շրջանների կոլտնտեսություններում և պետական տնտեսություններում պահվում է 188,8 հազար գլուխ խոշոր եղջերավոր անասուն, այդ թվում՝ 60,8 հազար գլուխ կով, նախրի մեջ կովերի տեսակարար կշիռը կազմում է 32,2 տոկոս: Նպատակահարմար է այդ շրջաններից խոշոր եղջերավոր այլ խմբերից 100 հազար գլուխ անասուն տեղափոխել լեռնային շրջանների հանրային տնտեսությունները և դրա դիմաց վերջիններից 80 հազար գլուխ կով տեղափոխել նշված 13 շրջանների, գլխավորապես հարթ մակերևույթով, տնտեսություններ:

Երկու խումբ շրջաններում անասնաբուծության նման մասնագիտացման շնորհիվ կաթի ընդհանուր արտադրանքը հանրապետությունում կավելանա՝ մեկ կովի հաշվով 740 **կգ**-ով (դա ցածրադիր և բարձրադիր շրջանների մեկ կովի միջին կաթնատվության առկա տարբերությունն է), իսկ 80 հազար գլուխ կովերի հաշվով՝ 59,2 հազար տոննայով: Բայց պիտի ընդունել, որ նեղ մասնագիտացման դեպքում կաթնատու ուղղությամբ տնտեսություններում մեկ կովի միջին կաթնատվությունը առկա 2.500 **կգ**-ի դիմաց կարող է ավելի բարձրանալ և, ասենք, հասնել 3.000 **կգ**-ի: Այս տարբերակով կաթի ընդհանուր արտադրանքը կաթնատու ուղղությամբ մասնագիտացող շրջանների կոլտնտեսություններում և պետական տնտեսություններում կավելանա 99,2 հազար տոննայով կամ մոտ 30 տոկոսով:

Փորձը վկայում է, որ նպատակահարմար է անասնապահական տնտեսություններում ունենալ երկու ուղղություն՝ զուտ կաթնատու և զուտ մսատու: Ընդ որում կաթնատու ուղղություն ունեցող տնտեսությունները պահում են միայն կաթնատու կովեր և անասունների մյուս խմբերը հանձնում են մսատու ուղղության տնտեսություններին: Ապացուցված է, որ 2.500 կգ կաթ տվող երկու կովի վրա շուրջ 1,5 անգամ շատ կեր է ծախսվում, քան 5.000 **կգ** կաթ տվող մեկ կովի վրա:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ նման մասնագիտացման դեպքում շահում են նաև մսատու ուղղության տնտեսությունները, մանավանդ լեռնային բարձրադիր շրջաններում: Լեռնային շրջաններում հորթերն ավելի արագ են աճում և առողջ լինում: Ուստի մեր հանրապետությունում նպատակահարմար է հորթերի աճեցումը կազմակերպել լեռնամարգագետնային գոտում, իսկ դրանց բտումը և երինջներին կովացու հասակի հասցնելը կազմակերպել միջին գոտու տնտեսություններում:

Հանրապետությունում այս ուղղությամբ որոշ քայլեր արվել են: Նաիրիի շրջանի Ջրավանի տավարի բտման համալիրը, որը տեղադրված է միջին գոտում, փաստորեն կարող է բտման տակ վերցնել ամբողջ Արարատյան գոգավորության տնտեսություններում ստացված հորթերը: Սակայն ավելի արդյունավետ կլինի հորթերի աճեցման տնտեսություն կազմակերպել Ապարանի և Արագածի շրջաններում, որտեղ ամառային արոտների հաշվին աճեցված հորթերը 4—5 (կամ 6—7) ամսական հասակում հանձնվեն Ջրավանի համալիրին՝ դրանց բտումը կազմակերպելու նպատակով: Կասկած չի հարուցում, որ այս դեպքում զգալիորեն կիջնի նաև մսի արտադրանքի ինքնարժեքը Ջրավանի համալիրում:

Ստորին գոտու հարթ մակերևույթով և խտաբնակ, արոտավայրեր չունեցող տնտեսությունները նպատակահարմար է մասնագիտացնել կաթի և հորթերի արտադրության գծով: Հասկանալի է, որ նման դեպքում նվազում են նաև կաթի փոխադրումների վրա արվող ծախսերը:

Խոշոր եղջերավոր անասունների տարբեր խմբերի փոխանակումները կարելի է իրականացնել կա՛մ դրամական գնահատմամբ՝ համապատասխան փոփոխություն մտցնելով տնտեսությունների պլանների մեջ, կա՛մ էլ այդ տնտեսությունները տնտեսական կոոպերացման միջոցով միասնաբար իրականացնեն կաթի ու մսի արտադրության պլանները:

Ագրարային հատվածում կառավարման ու տնտեսավարման նոր մեթոդների կիրառումը, ագրոարդյունաբերական համալիրի կառավարման միասնական մարմինների ստեղծումն անհրաժեշտ է ամրապնդել գործուն տնտեսական մեխանիզմով, որի հիմնական նպատակը պետք է լինի կոլտնտեսությունների և սովխոզների ինքնուրույնության ընդլայնումը, նրանց շահագրգռության, պատասխանատվության մեծացումը՝ վերջնական արդյունքի համար:

# ՀԱԿԱՊՐՈՊԱԳԱՆԴԱՆ ԿՈԼԵԿՏԻՎՈՒՄ

**Վ. ԴԱՇՅԱՆ**
«Լույս» արտադրամիավորման
կուսկոմիտեի քարտուղար

**ՍՄԿԿ**-Ի ԳԱՂԱՓԱՐԱԴԱՍՏԻԱՐԱԿՉԱԿԱՆ աշխատանքի հիմնական ոլորտներից է հակապրոպագանդան, հետևողական և կազմակերպված պայքարը բուրժուական գաղափարախոսության քայքայիչ գործունեության դեմ։ Իմպերիալիզմի սանձազերծած «հոգեբանական պատերազմը», ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, չի կարող որակվել այլ կերպ, քան որպես ագրեսիայի, ինֆորմացիոն իմպերիալիզմի հատուկ ձև... դա նաև պատերազմի քաղաքական-հոգեբանական ուղղակի նախապատրաստություն է, որը, բնականաբար, ոչ մի ընդհանուր բան չունի հայացքների իսկական համադրման, գաղափարների ազատ փոխանակման հետ, որի շուրջը փարիսեցիություն են անում Արևմուտքում։

Բուրժուական գաղափարախոսության դեմ պայքարի իր ծրագրում ՍՄԿԿ-ն խնդիր է դնում ժողովուրդներին հասցնել ճշմարտությունը ռեալ սոցիալիզմի, Սովետական Միության ներքին ու արտաքին քաղաքականության մասին, ակտիվորեն պրոպագանդել սովետական ապրելակերպը, հարձակողաբար, փաստարկված կերպով բացահայտել իմպերիալիզմի հակաժողովրդական, անմարդկային բնույթը, նրա շահագործողական էությունը։

Հակապրոպագանդայի կազմակերպման գործում չափազանց լուրջ անելիքներ ունեն սկզբնական կուսկազմակերպությունները։ Նրանք այդ աշխատանքը գլխավորապես ծավալում են աշխատավորական կոլեկտիվներում, իսկ վերջիններս, ինչպես հայտնի է, վճռական դեր են խաղում իրենց անդամների գիտական աշխարհայացքի ձևավորման, նրանց աշխատանքային ու հասարակական ակտիվության բարձրացման, բարոյական համոզմունքների ամրապնդման ու հոգևոր կերպարի կազմավորման գործում։ Աշխատանքային կոլեկտիվի դաստիարակչական դերը չափազանց կարևոր է հենց այն իմաստով, որ անհատը, քաղաքացին մեծ մասամբ կրում է տվյալ սոցիալական միջավայրի, կոնկրետ դեպքում՝ այդ նույն կոլեկտիվի ազդեցությունը։

«Լույս» արտադրամիավորման կուսկոմիտեն, սկզբնական կազմակերպությունները գաղափարադաստիարակչական աշխատանքում ջանքերն առաջին հերթին ուղղում են կոլեկտիվում բարոյահոգեբանական առողջ մթնոլորտի ապահովմանը, այն հրատապ խնդիրների լուծմանը, որոնք բխում են երկրի սոցիալ-տնտեսական զարգացման ներկա փուլի պահանջներից։ Այդ ասպարեզում մեզ համար գործողության մարտական ծրագիր են ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումները, նրա ընդունած փաստաթղթերը։

Միավորման կուսկոմիտեն և գլխամասային ձեռնարկության՝ Երևանի էլեկտրալամպերի գործարանի, կուսկազմակերպությունը ստեղծել են հակապրոպագանդիստական գործունեության հստակ համակարգ։ Այդ ասպարեզում հաշվի են առնվում կոլեկտիվի անդամների կրթական, տարիքային առանձնահատկությունները, սոցիալական կազմը։ Ելնելով դրանից՝ մշակել ենք հակապրոպագանդայի ձևերը և ուղիները, դասախոսությունների, զրույցների թեմատիկան, ընտրել համապատասխան գրականություն, այդ աշխատանքն իրականացնելու կարողություն ունեցող կադրեր։ Այդ գործում մենք պատշաճ ձևով օգտագործում ենք սոցիոլոգիական ուսումնասիրությունների տվյալները։ Այդպիսի հետազոտություններից մեկից ստացված ինֆորմացիան մշակվեց հաշվողական կենտրոնում։ Պարզվեց, որ կոլեկտիվի անդամները բաժանորդագրվել են ավելի քան յոթ հազար օրինակով 96 անուն թերթերի ու հանդեսների, յուրաքանչյուր երրորդն օգտվում է գեղարվեստական, տեխնիկական կամ քաղաքական գրականության գրադարաններից։ Լամպագործների մոտ 60 տոկոսը մինչև 30 տարեկան երիտասարդներ են, 64 տոկոսը՝ կանայք, 91 տոկոսն ունեն ընդհանուր, միջնակարգ-մասնագիտական և բարձրագույն կրթություն, 87 տոկոսը տիրապետում է ռուսերենին։

Կոլեկտիվի կազմի կրթական ու սոցիալական առանձնահատկությունները հաշվի առնելով՝ կուսկոմիտեն քննարկեց այդ հարցը և մշակեց հակապրոպագանդիստական աշխատանքի կազմակերպական կառուցվածքը, դրա ձևերն ու ուղիները։ Ստեղծեցինք գործարանային խորհուրդ, որի կազմում ընդգրկվեցին գաղափարական առումով փորձառու ղեկավար աշխատողներ, վաստակաշատ բանվորներ։ Խորհուրդը պարբերաբար քննարկում է հակապրոպագանդիստական աշխատանքի կարևոր հարցերը, պլանավորում և անցկացնում խոշոր միջոցառումներ՝ ուղղված կոլեկտիվի անդամների քաղաքական զգոնության բարձրացմանը։ Օրինակ, նրանց շրջանում մեծ հետաքրքրություն առաջացրին «Պրոպագանդայի և հակապրոպագանդայի հրատապ պրոբլեմները» գիտագործնական կոնֆերանսը, «Սովետական ապրելակերպը», «Գաղափարախոսական պայքարը և երիտասարդությունը» հրապարակային դասախոսությունները, «Մարդը և օրենքը» հեռուստատեսային հարցուպատասխանի երեկոն, որոնց մասնակցեցին «Գիտելիք» ընկերության դասախոսներ, ՀԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատողներ։

Սկզբնական կազմակերպություններում կուսկոմիտեի որոշմամբ ստեղծվել են հակապրոպագանդայի հատուկ խմբեր, որոնք կոորդինացնում և հրահանգում են այդ ոլորտում տարվող աշխատանքը։

Կուսկոմիտեն մշտական հոգատարություն է ցուցաբերում մարդկանց գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության նկատմամբ, ջանում է գործնականում ապահովել դրանց սերտ միասնությունը, դաստիարակության ամբողջ գործի նկատմամբ կոմպլեքսային մոտեցումը։ Վերջին հաշվով մեր նպատակն է կոլեկտիվի անդամներին զինել մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով, նրանց իրազեկ պահել կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության հրատապ խնդիրներին։

Կոմունիստական դաստիարակության կարևորագույն օղակը, իհարկե, կուսակցական ուսուցման և աշխատավորության տնտեսագիտական կրթության համակարգն է, որի նպատակը առաջին հերթին մարդկանց գիտական աշխարհայացքի ձևավորումն ու ամրապնդումն է, հասարակական զարգացման օրենքների իմացությամբ, կուսակցության քաղաքականության հստակ ըմբռնմամբ նրանց զինումը։ Այսօր մեր կազմակերպությունում գործում է կուսակցական ուսուցման և տնտեսագիտական կրթության ամբողջական ու հստակ համակարգ, որը ներառում է մոտ 200 քաղդպրոց ու խմբակ, տեսական սեմինար։

Կուսակցական ուսուցման համակարգում, բնականաբար, կարևոր տեղ է հատկացվում նաև հակապրոպագանդայի հարցերին։ Մարդկանց մեջ գիտամատերիալիստական աշխարհայացքի ձևավորման, սովետական հայրենասիրության դաստիարակման մեծ հնարավորություններ են ընձեռում ՍՄԿԿ պատմության, քաղաքատնտեսության, գիտական կոմունիզմի դասընթացները,

որոնցում ծրագրային թեմաներին զուգահեռ ուսումնասիրվում են ձեռնարկության տեխնիկատնտեսական գործունեության արդյունքները։

Միավորման տնտեսագիտական հետազոտությունների բյուրոն յուրաքանչյուր եռամսյակ մշակում է ինֆորմացիոն բյուլետեն, որը պրոպագանդիստներին, դասախոսներին, քաղինֆորմատորներին, ագիտատորներին հարուստ ու բազմաբնույթ նյութեր է տրամադրում կոլեկտիվի արտադրական ցուցանիշների, սոցիալական զարգացման, այդ թվում աշխատավարձի, բնակարանային շինարարության և բազմաթիվ այլ հարցերի մասին։ Անցած հնգամյակում, օրինակ, էլեկտրալամպերի գործարանում մեկ աշխատողի ամսվա միջին աշխատավարձը բարձրացել է 34 ռուբլով։ Հնգամյակի ընթացքում տարբեր բնույթի պարգևատրումների ձևով կոլեկտիվի անդամներին տրվել է մոտ 36 միլիոն ռուբլու գումար։ Սեփական փորձից ելնելով՝ կարող ենք ասել, որ կոլեկտիվի կյանքից վերցված նման նյութերի օգտագործումը մեծապես բարձրացնում է հակապրոպագանդիստական աշխատանքի արդյունավետությունը։

Մեր ծավալած հակապրոպագանդիստական աշխատանքում կարևոր տեղ է հատկացվում գիտական աթեիզմին, որի սիստեմատիկ կուրս է մտցված մարքսիզմ-լենինիզմի հիմունքներն ուսումնասիրող դպրոցներում։ Այստեղ սեմինարներ են անցկացվում «Լենինյան աթեիստական ժառանգությունը և արդի ժամանակաշրջանը», «Աթեիզմի զարգացումը որպես մարդկության հոգևոր առաջընթացի օրինաչափություն», «Աթեիզմը և կրոնը ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում», «Կոմունիստական դաստիարակության պրոբլեմները և կրոնական նախապաշարումների հաղթահարումը» և այլ թեմաներով։

Սեմինարների, դպրոցների, դասընթացների արդյունավետությունը, նրանց հնարավորությունների լիարժեք օգտագործումը մեծ չափով պայմանավորված են պրոպագանդիստական կադրերի կարողություններով, փորձով, մեթոդական վարպետության աստիճանով։ Կուսկոմիտեն ձգտում է, որպեսզի հակապրոպագանդայի խնդիրները ունկնդիրներին պարզաբանվեն ոչ թե վերացական օրինակներով, քարոզչական մեթոդներով, այլ կոլեկտիվի կյանքի հետ սերտորեն կապակցված, նրանից վերցրած կոնկրետ, համոզիչ փաստերով։ Նման ձևով է պարապմունքները վարում ՀՍՍՀ կուլտուրայի վաստակավոր գործիչ, տնտեսագիտական հետազոտությունների բյուրոյի վարիչ Ա. Արզումանյանը։ Նրա ղեկավարած խումբն ուսումնասիրում է զարգացած սոցիալիզմի տեսության ու պրակտիկայի հարցերը։ Պրոպագանդիստը պարապմունքի է ներկայանում բազմակողմանիորեն նախապատրաստված։ Դրանում նրան օգնում են և՛ ավելի քան քսանամյա հարուստ փորձը, և՛ այն, որ նա լավ գիտի արտադրությունն ու մարդկանց։ Նախապես մշակելով ճյուղի, միավորման, գործարանի, արտադրամասի տեխնիկատնտեսական ցուցանիշները՝ նա դրանք հմտորեն զուգակցում է ծրագրային թեմայի հետ, հարստացնում այն ձեռնարկության սոցիալական զարգացման կոնկրետ փաստերով ու տվյալներով։ Ա. Արզումանյանը ծագած հարցերին տալիս է փաստարկված պատասխաններ։ Այդ ամենի շնորհիվ պարապմունքները սովորաբար անցնում են հետաքրքիր, ունկնդիրների բարձր ակտիվության պայմաններում։ Արտադրամասի կոլեկտիվը, որը տարեկան թողարկում է մոտ 20 միլիոն էլեկտրալամպ, հաջողությամբ է կատարում ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, ակտիվորեն մասնակցում ձեռնարկության հասարակական-քաղաքական կյանքին։ Դրանում մեծ է նաև պրոպագանդիստ Ա. Արզումանյանի ավանդը, որի նախկին ունկնդիրներ Լ. Բադալյանը, Ս. Գալստյանը, Ն. Խաչատրյանը այսօր իրենք են պրոպագանդիստական աշխատանք կատարում։

Հաշվի առնելով գաղափարախոսական աշխատանքի բարդությունը՝ կուսկոմիտեն առաջնահերթ նշանակություն է տալիս պրոպագանդիստական կադրերի ընտրության և ուսուցման գործին։ Ամեն տարի նրանց կազմը վերանայվում և համալրվում է բարձր որակավորում և քաղաքական պատրաստականություն ունեցող մասնագետներով, արտադրության ղեկավար աշխատողներով, որոնցից շատերը, ի դեպ, ՀԿԿ Կենտկոմի մարքսիզմ-լենինիզմի հա-



մալսարանի շրջանավարտներ են։ Այժմ միավորման մոտ 200 պրոպագանդիստների 80 տոկոսն ունի բարձրագույն կրթություն, 70 տոկոսը՝ պրոպագանդիստական աշխատանքի հինգ տարուց ավելի փորձ, 80 տոկոսը՝ ՍՄԿԿ անդամ է, 75 տոկոսը՝ ղեկավար աշխատող։ Գլխավոր ինժեների տեղակալ, տեխնիկական գիտությունների թեկնածու, տեսական սեմինարի ղեկավար Ս. Ազոյանի, գլխավոր դիրեկտորի տեղակալ, գիտական կոմունիզմի դպրոցի պրոպագանդիստ Է. Բաբայանի, տարափաթեթման արտադրամասի պետ, մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի պրոպագանդիստ Գ. Մկրտչյանի և շատ ուրիշների վարած պարապմունքներն անցնում են հետաքրքրական, աշխույժ ձևով։ Նրանց ունկնդիրներից շատերը բանիմաց ու փորձառու ագիտատորներ են, իրենց զրույցներում մերկացնում են սովետական ապրելակերպի, սովետական աշխատավորի մասին բուրժուական պրոպագանդայի կեղծիքն ու սուտը։

Հակապրոպագանդային մեծ տեղ է հատկացվում ագիտացիոն աշխատանքի բնագավառում։ Քաղինֆորմատորների ու ագիտատորների անցկացրած կոլեկտիվ կամ անհատական զրույցների, դասախոսությունների ընթացքում, միտինգներում, լոզունգների, պլակատների, բազմատպաքանակ թերթի, քաղլուսկաբինետի հակապրոպագանդայի անկյան միջոցով կուսկոմիտեն ձգտում է կոլեկտիվի անդամների գիտակցությանը հասցնել կարևոր հասարակական-քաղաքական և ժողովրդատնտեսական խնդիրների էությունը, նպաստել դրանց լուծմանը։ Մեզ մոտ բանավոր ագիտացիայով զբաղված են 200 ագիտատորներ ու քաղինֆորմատորներ։ Նրանց զրույցների թեմատիկայում առանձնակի տեղ է հատկացվում սոցիալիստական հասարակարգի, սովետական ապրելակերպի առավելությունների պրոպագանդման հարցերին։ Այդ աշխատանքը, որպես կանոն, կատարում են կոլեկտիվում մեծ հեղինակություն վայելող մարդիկ, որոնց թվում քիչ չեն ռացիոնալիզատորներն ու գյուտարարները, վարպետ-դաստիարակները, ինժեներատեխնիկական աշխատողները։

Հանրապետության վաստակավոր ռացիոնալիզատոր, Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանակիր, նորոգող-փականագործ Հարություն Հարությունյանը նաև վաստակաշատ ագիտատոր է, վարպետ-դաստիարակ։ Նա ոչ միայն զրույցներով ու ելույթներով իր աշակերտներին և ունկնդիրներին դաստիարակում է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, այլև իր անձնական լավ վարքագծով ու գործելակերպով օրինակ ծառայում նրանց համար։ Վերջերս իր արժեքավոր ռացիոնալիզատորական առաջարկություններից մեկի պարգևավճարը, ավելի քան 500 ռուբլի, նա փոխանցեց խաղաղության ֆոնդին։ Նույն ձևով է վարվել ապակու ծառայության ինժեներ Մարիետա Սահակյանը։ Նման փաստերն ու օրինակները, որոնք խոսում են սովետական մարդու վսեմ առաքինությունների մասին, հարուստ ու համոզիչ նյութ են տալիս մեր պրոպագանդիստներին ու ագիտատորներին։

Յուրաքանչյուր տարի կոլեկտիվի անդամների համար կարդացվում է շուրջ 240 դասախոսություն՝ հասարակական-քաղաքական, գիտության ու տեխնիկայի, արվեստի, գրականության, մշակույթի և այլ թեմաներով։ Դրանց զգալի մասը նվիրված է հակապրոպագանդայի հարցերին։ Դասախոսություններով հանդես են գալիս հանրապետության անվանի գիտնականներն ու մասնագետները, ինչպես նաև կուսկոմիտեի դասախոսական խմբի անդամները։

Անհատի քաղաքացիական հասունությունը, աշխարհընկալումը, սոցիալ-քաղաքական հայացքները, բարոյական իդեալները մեծապես պայմանավորվում են տվյալ սոցիալական միջավայրով, մարդկային փոխհարաբերություններով, անհատի առջև ծառացած դժվարությունների, խոչընդոտների ու պրոբլեմների հաղթահարման ու լուծման հնարավորություններով։ Մարդը հաճախ հոռետեսական տրամադրության մեջ է ընկնում սոցիալական, կենցաղային բարդությունների ու դժվարությունների պատճառով։ Այդ իմաստով էլ արտադրական կոլեկտիվը պետք է մեծ հոգատարությամբ շրջապատի իր յուրաքանչյուր անդամին, օգտագործի բոլոր հնարավորությունները՝ լավագույն ձևով լուծելու ոչ միայն աշխատանքի, այլև կենսապայմանների բարելավման,

ուսուցման, ազատ ժամանակի օգտագործման, հանգստի, առողջության, բնակարանի հետ առնչվող բազմաբնույթ հարցերը։ Հիշեմ այսպիսի մի օրինակ. տարիներ պառաջ երիտասարդ մի կին՝ Թերեզա Ներսիսյանը, եկավ էլեկտրալամպերի գործարան՝ աշխատանքի ընդունվելու խնդրանքով։ Պարզվեց, որ ընտանեկան շատ վատ կացության մեջ է, միակ աղջնակի հետ ապրում է բնակարանային վատթար պայմաններում։ Պարույրների արտադրամասում ընդունվեց աշխատանքի, կոլեկտիվը հոգատարությամբ շրջապատեց նրան, գործընկերները քաջալերում, հուսադրում էին, աջակցում ով ինչպես կարող էր։ Դիրեկցիան, կուսկոմիտեն և արտադրամասային կուսկազմակերպությունը ևս նեցուկ եղան անօգնական կնոջը։ Նա ապահովվեց բնակարանով, նրա համար ստեղծվեցին ակտիվ և լավ աշխատանքի պայմաններ։ Թերեզան ընտելացավ կոլեկտիվին, սիրեց ընկերներին և հմտացավ իր մասնագիտության մեջ, դարձավ առաջավոր, վարպետ-դաստիարակ, շատերին սովորեցրեց պարույրագործի մասնագիտությունը, զինվորագրվեց կոմունիստական կուսակցությանը։ Այժմ նա պարույրների արտադրամասի կուսբյուրոյի քարտուղարն է, որպես պատգամավոր մասնակցել է Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարին, ընտրվել ՀԿԿ Կենտկոմի անդամ։ Ահա սովետական իրականության վառ ու ցայտուն օրինակ, որին չես հանդիպի կապիտալի աշխարհի ոչ մի երկրում։

Կամ մեկ ուրիշ օրինակ. ապակու արտադրամասի բանվորուհիներ Զարիկ Հարությունյանը և Թամարա Ավանեսյանը անցել էին կենսաթոշակի, սակայն ձեռնարկությունում պահպանել էին բնակարանային պայմանների բարելավման նրանց հերթը։ Եվ երբ նրանք հրավիրվեցին բնակարանների բաշխման հանձնաժողով և իրազեկ դարձան, որ իրենց բնակարան է հատկացվում, հաճելիորեն զարմացան։ Իսկ զարմանալու ոչինչ չկար, քանի որ նրանք ոչ առաջինն էին և ոչ էլ վերջինը, որ կենսաթոշակի անցնելուց հետո ապահովվում են բնակարանով։ Բնակարանային հարցին մեզ մոտ մեծ կարևորություն է տրվում։ Անցած հնգամյակի ընթացքում, օրինակ, միավորման 295 աշխատավորներ, այդ թվում կենսաթոշակի անցած նախկին մի շարք աշխատակիցներ ստացել են բնակարաններ, 20.770 մարդ բուժվել կամ հանգստացել են առողջարաններում, հանգստյան տներում, պրոֆիլակտորիումներում։ Ընդ որում շատերին ուղեգրերը տրվել են անվճար։

Կոլեկտիվի անդամների գաղափարաքաղաքական համոզմունքների ձևավորման, հոգևոր աճի, գիտակցական կարգապահության ամրապնդման գործում ըստ ամենայնի կարևորվում է նաև նրանց հանրակրթական և մասնագիտական ուսուցումը։ Գործարանում կազմակերպվել է հերթափոխային միջնակարգ դպրոց, որտեղ յուրաքանչյուր տարի սովորում են 100—120 պատանիներ ու աղջիկներ։ Նրանք այնուհետև կարող են ուսումը շարունակել մեզ մոտ գործող տեխնիկական ուսումնարանում, էլեկտրատեխնիկական տեխնիկումում, ճյուղային մինիստրության կադրերի որակավորման բարձրացման ինստիտուտի անդրկովկասյան մասնաճյուղում, Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի լույսի աղբյուրների և լուսատեխնիկական սարքերի բաժնում։ Այդ հաստատություններն ստեղծվել են մեր միավորման բազայի վրա, դիրեկցիայի ու կուսկոմիտեի նախաձեռնությամբ։ Ընդհանուր հաշվով յուրաքանչյուր տարի միավորման մոտ 450 բանվոր-ծառայողներ աշխատանքին զուգահեռ սովորում են միջնակարգ և բարձրագույն ուսումնական հաստատություններում։ Ձեռնարկության ղեկավարությունը, կուսկոմիտեն ձգտում են ոչ միայն անհրաժեշտ պայմաններ ստեղծել նրանց աշխատանքի և ուսման համար, այլև մեծ հոգատարություն են հանդես բերում նրանց հետագա առաջընթացի նկատմամբ։ Գլխավոր դիրեկտորի տեղակալ, տնտեսագիտության թեկնածու Վ. Բարսեղյանը, կուսկոմիտեի քարտուղարի տեղակալ Գ. Սարգսյանը, լյումինեսցենտային լամպերի հավաքման արտադրամասի պետ Վ. Հարությունյանը ժամանակին եղել են բանվոր-ուսանողներ։ Այդպիսի ճանապարհ են անցել նաև արտադրության շատ հրամանատարներ, բաժինների վարիչներ, առաջատար ինժեներներ ու կոնստրուկտորներ։



Կոլեկտիվի անդամների կոմունիստական դաստիարակության, ինչպես նաև հակապրոպագանդայի արդյունավետության կարևոր նախապայմաններից մեկը սոցիալական միջավայրի բարելավումն է։ Կոլեկտիվի սոցիալական զարգացման հարցը լուծվում է պլանավորված կարգով։ Կուսկոմիտեն, տնտեսական ղեկավարությունը սոցիալական զարգացման պլանը կազմելիս առաջնորդվում են այն սկզբունքով, որպեսզի կոլեկտիվի անդամները հնարավորության սահմաններում առավելագույնս օգտվեն իրենց իսկ ստեղծած բարիքներից, ունենան աշխատանքի, հանգստի, բուժման, ազատ ժամանակի արդյունավետ օգտագործման լավագույն պայմաններ։ Այդ նպատակներին են ծառայում սննդի, հանգստի, բուժման, ազատ ժամանակի օգտագործման, առևտրի և կենցաղային այլ ծառայությունների բազմաթիվ օբյեկտներ։ Էլեկտրալամպերի գործարանի հասարակական սննդի ութ ճաշարաններն ու բուֆետները լիովին բավարարում են կոլեկտիվի անդամների պահանջները, գիշերային հերթափոխում և տաք արտադրամասերում աշխատողները, թվով 1.400 մարդ, ստանում են անվճար սնունդ։ Գործարանում ստեղծված են պաբնային և արդյունաբերական ապրանքների չորս խանութ, դեղորայքի վաճառքի կետ, լվացքատուն, կոշիկի նորոգման արհեստանոց, անվճար վարսավիրանոցներ։ Կոլեկտիվի անդամների երեխաները լիովին ընդգրկված են մանկապարտեզներում ու մանկամսուրներում։ Այս բնագավառում մենք հոգսեր չունենք։

Սոցիալիստական ապրելակերպին բնորոշ է կոլեկտիվի անդամների ազատ ժամանակի արդյունավետ կազմակերպումը։ Արտադրության մարդը պետք է խելամտորեն անցկացնի իր հանգիստը աշխատանքից հետո։ Լավ աշխատողին նաև լավ հանգիստ է հարկավոր։ Այս առումով ևս մեզ մոտ զգալի գործ է արվել։ Միավորումն ունի 510 տեղով հանգստյան տներ ու առողջարաններ Կիրովականում, Արզականում, Ջերմուկում, Երևանում, պիոներական ճամբար ու մանկական առողջարան՝ Կիրովականում։ Դրան զուգահեռ յուրաքանչյուր տարի կոլեկտիվի մոտ 600 անդամներ համապատասխան ուղեգրերով մեկնում են Միության տարբեր առողջարաններ, հանգստյան տներ կամ տուրիստական ուղեգրերով շրջագայում եղբայրական հանրապետություններում և արտասահմանյան երկրներում։

Միավորումում այժմ գործում են սպորտային 12 խմբակ ու սեկցիա, գեղարվեստական ինքնագործունեության վեց խումբ, որոնցում ընդգրկված են ավելի քան 800 լամպագործներ, նրանց ընտանիքների անդամներ։ Ազատ ժամանակի արդյունավետ օգտագործման մեծ հնարավորություններ են ընձեռում նաև տեխնիկական, մասսայական, քաղաքական լուսավորության հարուստ գրադարանները, կարմիր անկյունները։ Արդյունավետ է օգտագործվում տուրիզմը։ Ամեն տարի մեր գործարանն են այցելում ավելի քան 400 արտասահմանյան քաղաքացիներ։ Նրանք մեծ հետաքրքրությամբ են ծանոթանում մեր բանվորների աշխատանքի ու հանգստի պայմաններին, նրանց ապրելակերպին, կոլեկտիվի սոցիալական զարգացման հեռանկարներին։ Տարեկան մոտ 60—70 լամպագործներ այցելում են արտասահմանյան երկրներ։ Վերադարձից հետո նրանք իրենց տպավորություններով, զրույցներով հանդես են գալիս աշխատավորական կոլեկտիվներում, «Լամպագործ» բազմատպաքանակի էջերում։

Տասնմեկերորդ հնգամյակի ընթացքում մեր միավորման ձեռք բերած հաջողություններն արժանացան ՀԿԿ XXVIII համագումարի բարձր գնահատականին։ Կոլեկտիվն անցած հնգամյակի արդյունքներով պարգևատրվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով, իսկ նրա հազարից ավելի անդամներ արժանացան կառավարական պարգևների, հնգամյակի սոցիալիստական մրցության հաղթողի կրծքանշանի։ Այսօր ավելի քան 100 բանվորներ տեղական սովետների դեպուտատներ են, ՀԿԿ շրջանային, քաղաքային կոմիտեների անդամներ, իսկ Լենինի շքանշանակիր, ՍՍՀՄ և ՀՍՍՀ պետական մրցանակների դափնեկիր բրիգադավար Պավել Քալաշյանը հանրապետության Գերա-

*գույն սովետի դեպուտատ է, «Պատվո նշանի» շքանշանակիր բանվորուհի Թեբեզա Ներսիսյանը, ինչպես նաև, ՀԿԿ Կենտկոմի անդամ:*

*Սովետական քաղաքացու աշխատանքի, հանգստի, ուսման, նրա սահմանադրական իրավունքների ու պարտականությունների դրսևորման, սովետական ապրելակերպի առավելությունների մասին կոլեկտիվի կյանքից վերցրած օրինակները տպավորիչ, համոզիչ ու արդյունավետ են դարձնում հակապրոպագանդան:*

*Այսպիսով, աշխատավորական կոլեկտիվում հակապրոպագանդայի կուսակցական ղեկավարումը, սոցիալիստական արտադրական հարաբերությունների զարգացումը, գիտության ու տեխնիկայի առաջընթացը, կոմունիստական դաստիարակության նկատմամբ կոմպլեքսային մոտեցումը, սոցիալական հարցերի համակողմանի լուծումը այն հիմնարար նախադրյալներն են, որոնք վճռականորեն օժանդակում են նաև կոլեկտիվի անդամների սոցիալական ու հոգևոր կողմնորոշմանը:*

*Սակայն պետք է խոստովանել, որ աշխատավորական կոլեկտիվներում հակապրոպագանդան ՍՄԿԿ XXVII համագումարի պահանջներով կազմակերպելու գործում ոչ բոլոր հնարավորություններն են արդյունավետ օգտագործվում:*

*Հակապրոպագանդիստական աշխատանքի արդյունավետությունը պայմանավորված է պրոպագանդիստական կադրերով: Ատեստավորումը ցույց տվեց, որ նրանց մի մասը սիստեմատիկաբար չի հարստացնում գիտելիքները, զրույցներն ու զեկուցումները չի թարմացնում նոր փաստերով ու տվյալներով:*

*Մեր կարծիքով, քաղաքական գրականության մեջ ևս հակապրոպագանդիստական հարցերը անբավարար են լուսաբանվում, հարկ եղած չափով հաշվի չեն առնվում բնակչության առանձին խավերի առանձնահատկությունները, քիչ է հատկապես այդ խնդիրներին վերաբերող մայրենի լեզվով գրականությունը: Ցանկալի է, որ այդ հարցերով զբաղվող մասնագետները և առաջատար դասախոսները ավելի հաճախ հանդես գան աշխատավորական կոլեկտիվներում, քաղինֆորմատորների ու ագիտատորների առջև, մեթոդական անհրաժեշտ օգնություն ցույց տան նրանց:*

*Գաղափարախոսական աշխատանքի այս կարևոր բնագավառում ծավալած աշխատանքում մենք պետք է միշտ ելնենք ՍՄԿԿ XXVII համագումարի այն պահանջից, որ այստեղ «Հարկավոր է հարձակողականություն թե՛ այն բանում, ինչը վերաբերում է գաղափարախոսական դիվերսիաների մերկացմանը և թե սոցիալիզմի ռեալ նվաճումների, սոցիալիստական ապրելակերպի մասին ճշմարտացի ինֆորմացիան տեղ հասցնելում»:*

---



# ԵՂԲԱՅՐ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ ԿՈՎԿԱՍԻ ՀԱՄԱՐ ՄՂՎԱԾ ՊԱՅՔԱՐՈՒՄ

**Տ. ԴՐԱՄԲՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ տարիներին հիտլերյան զավթիչների դեմ մղվող պայքարում սովետական ժողովրդի մարտական և քաղաքական կազմակերպիչը, առաջնորդն ու դաստիարակը կոմունիստական կուսակցությունն էր: ՍՄԿԿ-ի ղեկավարությամբ ֆաշիզմի դեմ հաղթանակը կոփում էին սովետական բոլոր մարդիկ, մեր բազմազգ երկրի բոլոր ժողովուրդները:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին ժողովուրդների լենինյան բարեկամությունը հիտլերյան Գերմանիայի դեմ Սովետական Միության տարած հաղթանակի գլխավոր աղբյուրներից մեկն էր: Այդ հաղթանակը գործնականում համոզիչ կերպով հավաստեց լենինյան հայտնի դրույթը սոցիալիստական կարգի առավելությունների մասին, որի օրոք յուրաքանչյուր ժողովրդի շահերն անքակտելիորեն կապված են սովետական երկրի բոլոր ժողովուրդների ընդհանուր շահերի հետ:

Կովկասի համար մղված ճակատամարտը (1942 թ. հուլիս—1943 թ. հոկտեմբեր) մեծ Հայրենականի նշանակալից իրադարձություններից էր: Կովկասյան գլխավոր լեռնաշղթայի լեռնանցքներում մղված կատաղի պաշտպանական մարտերում առավել ցայտուն դրսևորվեցին Սովետական Միության ժողովուրդների մեծ բարեկամությունը, նրանց բարոյաքաղաքական միասնությունն ու համախմբվածությունը: Ռուս և մեր երկրի մյուս ժողովուրդների հետ Անդրկովկասի ժողովուրդների ավանդական բարեկամությունն ավելի ցայտունորեն դրսևորվեց ընդհանուր թշնամու դեմ մղվող հերոսական պայքարում:

Ֆաշիստական Գերմանիայի ռազմաքաղաքական ղեկավարությունը Սովետական Միության դեմ պատերազմի իր պլանները մշակելիս մեծ հույսեր էր կապում սովետական ժողովուրդներին միմյանց հակադրելու հետ: Հիտլերյան պարագլուխները հույս ունեին, թե գերմանաֆաշիստական ու բուրժուաազգայնական պրոպագանդային կհաջողվի ոչ ռուս ազգերին ոտքի հանել ընդդեմ ռուսների, ռուս ժողովրդին զրկել երկրի մյուս ժողովուրդների աջակցությունից և դրանով իսկ նրան, որպես ՍՍՀՄ-ի առաջատար ազգի, մեկուսացնել: Միաժամանակ ֆաշիստական վայ-տեսաբաններն ու նրանց գործակալները հույս ունեին, թե իրենց կհաջողվի ազգային պառակտում բորբոքել Անդրկովկասի ժողովուրդների միջև, նրանց հրահրել միմյանց դեմ և, այդպիսով երկրի հարավում թուլացնելով կարմիր բանակի թիկունքը, հասնել հեշտ հաղթանակի:

Սակայն թշնամին չարաչար սխալվեց: Հյուսիսային Կովկասի և Անդրկովկասի ժողովուրդներն իրենց հայրենիքի վրա կախված ահեղ վտանգի պահին առավել սերտորեն համախմբվեցին կոմունիստական կուսակցության շուրջը՝ դրանով իսկ ցուցադրելով իրենց հավատարմությունը ժողովուրդների լենինյան բարեկամության իդեալներին:

Դրա համոզիչ ապացույցը եղավ Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի կոմկուսների Կենտրոնական կոմիտեների նախաձեռնությամբ 1942 թ. օգոստոսի 23-ին Թբիլիսիում կայացած Անդրկովկասի ժողովուրդների հակաֆաշիստական միտինգը: Անդրկովկասի ժողովուրդների գաղափարաքաղաքական կյանքում այդ միտինգը եղավ այն կարևոր իրադարձությունը, որն ակնբախորեն մի նոր փուլ նշանավորեց ռուս ժողովրդի, Սովետական Միության մյուս ժողովուրդների հետ Վրաստանի, Ադրբեջանի ու Հայաստանի եղբայրական ժողովուրդների մարտական համախմբվածության գործում:

Անդրկովկասի ժողովուրդների հակաֆաշիստական միտինգում ունեցած ելույթներում մասնակիցներն իրենց հանրապետությունների աշխատավորների անունից հավաստիացրին կոմունիստական կուսակցությանը, որ Անդրկովկասի ժողովուրդներն իրենց բոլոր ուժերը կնվիրաբերեն թշնամու ջախջախման գործին: Ընդունված դիմումում նշվում էր, որ «չկա աշխարհում մի այնպիսի ուժ, որը կարողանար անջատել միմյանցից Անդրկովկասի ժողովուրդներին, նրանց պոկել ռուս մեծ ժողովրդից... մեր ավագ եղբորից... Մենք երբեք գլուխներս չենք խոնարհի գերմանական գիշատիչ ավազակ-իմպերիալիստների առաջ... Մենք գիտենք, մենք հաստատ հավատում ենք, որ թշնամին կջախջախվի»:

Անդրկովկասի ժողովուրդների հակաֆաշիստական միտինգի նյութերը լայնորեն քննարկվում էին կուսակցական կազմակերպություններում և ձեռնարկությունների կոլեկտիվներում, ուսումնական հաստատություններում, կոլեկտիվ և պետական տնտեսություններում, լուսաբանվում մամուլի էջերում, ռադիոյով հաղորդվում Անդրկովկասի բոլոր ազգերի ու ազգությունների լեզուներով:

Մեկ ամիս անց, 1942 թ. սեպտեմբերի 27-ին, Գրոզնիում կայացավ Ադրբեջանի, Վրաստանի ու Հայաստանի երիտասարդության բազմահազարանոց հակաֆաշիստական միտինգը: Արտահայտելով Անդրկովկասի հանրապետությունների երիտասարդ հայրենասերների անխախտ կամքը, միտինգի մասնակիցները հանդիսավոր երդում տվեցին սովետական հայրենիքին՝ իրենց բոլոր ուժերը, երիտասարդական ողջ կրակը, եռանդն ու կամքը նվիրաբերել ատելի թշնամու ջախջախման գործին:

Թբիլիսիում և Գրոզնիում կայացած հակաֆաշիստական միտինգները հսկայական մոբիլիզացնող և դաստիարակչական նշանակություն ունեցան: Միտինգների մասնակիցների, սովետական ժողովուրդների ներկայացուցիչների, այդ թվում նաև կարմիր բանակի մարտիկների բոցաշունչ ելույթները, որոնք տոգորված էին հիտլերյան զավթիչների դեմ ազատագրական պատերազմի արդարացիության խոր հավատով, այդ միտինգներում ընդունված փաստաթղթերը շատ բանով օգնեցին սովետական մարդկանց՝ ավելի հստակորեն հասկանալու ֆաշիզմի էությունը, զգալու երկրի վրա կախված վտանգի ողջ խորությունը:

Կովկասի համար մղված ճակատամարտի ընթացքում Անդրկովկասի կուսակցական կազմակերպությունները հսկայական աշխատանք ծավալեցին մեր երկրի ժողովուրդների բարեկամության գաղափարների պրոպագանդման, նրանց ինտերնացիոնալ դաստիարակության նպատակով: Այդ աշխատանքի ձևերն ու մեթոդները խիստ բազմազան էին:

Ինչպես բանավոր, այնպես էլ տպագիր ագիտացիայում գլխավոր ուշադրությունը նվիրվում էր Անդրկովկասի ժողովուրդների ու ռուս ժողովրդի բարեկամության պրոպագանդմանը, կոնկրետ օրինակներ էին վկայակոչվում անդրկովկասյան եղբայրական ժողովուրդների անցյալից:

Ինչպես հայտնի է, Անդրկովկասի ժողովուրդների պատմական ճակատագիրը սերտորեն կապված է միմյանց հետ և իրենց հարևան ժողովուրդների, հատկապես ռուս ժողովրդի պատմական ճակատագրի հետ:

Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի ժողովուրդները լավ են հիշում, որ հենց ռուս ժողովուրդն ու նրա փառապանծ 11-րդ բանակը օգնեցին իրենց՝ ազատվելու մուսավաթականների, դաշնակցականների և մենշևիկների հակաժողովրդական, բուրժուաազգայնական կառավարություններից, որոնք երկրամասի ժողովուրդներին հասցրել էին մինչև ֆիզիկական ոչնչացման եզրը:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին, մասնավորապես Կովկասի համար մղված ճակատամարտի ծանր օրերին Անդրկովկասի հանրապետությունների ժողովուրդները մեկ անգամ ևս ամբողջ աշխարհին ցույց տվեցին ինչպես իրենց միա-



համուռ միասնությունը, անխախտ բարեկամությունը ռուս ժողովրդի հետ, այնպես էլ իրենց անվերապահ նվիրվածությունը կոմունիստական կուսակցությանն ու սովետական պետությանը: Ահա թե ինչու Անդրկովկասի հանրապետությունների կուսակցական կազմակերպություններն իրենց ամենօրյա ագիտացիոն-մասսայական աշխատանքում այդքան մեծ ուշադրություն էին նվիրում ռուս ժողովրդի պատմական դերի, նրա հետ երկրամասի ժողովուրդների բարեկամության պատմական արմատների լուսաբանմանն ու ցուցադրմանը, գերմանաֆաշիստական զավթիչների դեմ մղվող մարտերում նրա աչքի ընկած փառապանծ որդիներին ու դուստրերին:

Հարյուրավոր որակյալ դասախոսներ, զեկուցողներ ու ագիտատորներ Անդրկովկասի հանրապետությունների Կ(բ)Կ Կենտկոմների որոշմամբ կուսակցության խոսքը հասցնում էին աշխատավոր լայն մասսաներին, մերկացնում ֆաշիստական պրոպագանդայի նենգ պլանները, որոնց նպատակն էր քայքայել մեր երկրի ժողովուրդների միասնությունն ու համախմբվածությունը, գժտեցնել նրանց ռուս մեծ ժողովրդի հետ:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին երկրի հզոր ռազմական էկոնոմիկայի ստեղծման գործում վճռական դերը պատկանում էր ռուս ժողովրդին: Ռուսաստանյան Ֆեդերացիան պատերազմի տարիներին տվել է ողջ երկրի արդյունաբերական արտադրանքի ավելի քան 80 տոկոսը: Արդեն այս պերճախոս թվով երևում է այն հսկայական ներդրումը, որ ռուս ժողովուրդը կատարեց թշնամու դեմ հաղթանակի ընդհանուր գործում: Հենց ՌՍՖՍՀ-ի արդյունաբերությունը կատարեց ռազմաճակատը զենքով, ռազմամթերքով ու հանդերձանքով ապահովելու գլխավոր և վճռական դերը: Թիկունքի ռուս աշխատավորների յուրաքանչյուր հայրենասիրական նոր նախաձեռնություն, որի նպատակն էր երկրի ռազմական էկոնոմիկայի հետագա ամրապնդումը, անհապաղ հավանության էր արժանանում և տարածվում ամբողջ երկրով մեկ, այդ թվում նաև Անդրկովկասի աշխատավորների շրջանում: Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի աշխատավորները ջերմորեն պաշտպանեցին ու կենսագործեցին Կույբիշև քաղաքի աշխատավորների՝ կարմիր բանակի գլխավոր հրամանատարության ֆոնդի համար պլանից դուրս արտադրանք տալու հայրենասիրական նախաձեռնությունը:

Անդրկովկասի ժողովուրդները լավ էին հասկանում, որ առանց ռուս ժողովրդի և ՍՍՀՄ մյուս ժողովուրդների օգնության իրենք երբեք չէին կարող դիմագրավել մինչև ատամները զինված ֆաշիստական հրոսակներին: Նրանք քաջ գիտակցում էին, որ Կովկասի համար մղվող ճակատամարտում միայն կարմիր բանակի հաղթանակն է ի վիճակի կանխելու հայ, վրաց և ադրբեջանական ժողովուրդների ստրկացումը հիտլերյան զավթիչների կողմից:

Կովկասի համար մղվող ճակատամարտի դժնդակ օրերին Անդրկովկասյան և Հյուսիս-Կովկասյան ռազմաճակատների բանակներում ուս-ուսի մարտնչում էին ռուսներ և ուկրաինացիներ, բելոռուսներ և վրացիներ, օսեր և հայեր, ուզբեկներ և լատիշներ, ադրբեջանցիներ և դաղստանցիներ: Ռազմաճակատը ժողովուրդների բարեկամության ամրապնդման, միահամուռության ու հավատարմության մի յուրատեսակ քննություն էր:

«Սովետական Միության ժողովուրդների՝ խաղաղ ժամանակ գուրգուրված իսկական բարեկամությունը,— գրել է Մ. Ի. Կալինինը,— վառ հրով բորբոքվեց պատերազմի տարիներին... Այդ բարեկամությունը կոփվեց ծանր պատերազմական փորձություններում: Բնական է, որ այն հատկապես զգացվում է ռազմաճակատում, որտեղ մարդ անընդհատ ենթարկվում է վտանգի և որտեղ վստահությունը կողքի ընկերոջ նկատմամբ պետք է լինի լիակատար: Ռազմաճակատը մի փորձաքար է, որով մարդու բազմաթիվ այլ զգացմունքների թվում փորձության են ենթարկվում նաև հավատարմությունն ու բարեկամությունը: Սովետական Միության ժողովուրդներն այդ փորձությանը դիմացան ոչ միայն թիկունքի համերաշխ աշխատանքով, այլև իրենց որդիների վարքագծով ռազմաճակատի առաջավոր գծերում: Ասենք, այլ կերպ չէր էլ կարող լինել: Մեր բանակը մի եղբայրական ընտանիք է» (М. И. Калинин. О коммунистическом воспитании. М., 1956, стр. 335):

Կովկասի համար մղված կատաղի պաշտպանական մարտերում, կարմիր բանակի մյուս զորամիավորումների հետ կողք-կողքի, գերմանաֆաշիստական հրոսակախմբերի դեմ քաջաբար մարտնչում էին Անդրկովկասի հանրապետություններում

կազմված զորամիավորումները, այդ թվում ազգային դիվիզիաները. հայկական 89-րդ, 408-րդ և 409-րդ, ադրբեջանական 223-րդ, 416-րդ և 402-րդ, վրացական 392-րդ, 394-րդ և 414-րդ հրաձգային դիվիզիաները: Այս զուտ ազգային կազմավորումներից բացի, Անդրկովկասյան ռազմաճակատի զորքերի կազմում մարտնչում էին 18 այլ միավորումներ, որոնք համալրված էին Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի աշխատավորներից, որոնցում կովկասյան ազգությունների մարդիկ անձնակազմի 40—70 տոկոսն էին (տե՛ս А. П. Артемьев. Братский боевой союз народов СССР в Великой Отечественной войне. М., 1975, стр. 47): Վրաստանի տարածքում վերոհիշյալ զուտ ազգային դիվիզիաներից բացի, կազմավորվեցին նաև 406-րդ, 242-րդ, 296-րդ և 349-րդ հրաձգային դիվիզիաները, իսկ Հայաստանում՝ 261-րդ և 390-րդ հրաձգային դիվիզիաները: Բավական է նշել, որ 1941 թ. հունիսից մինչև 1942 թ. ապրիլը զորակոչվել և ռազմաճակատներում մարտնչում էին 600 հազար վրացիներ, ադրբեջանցիներ և հայեր, իսկ 1942 թ. հուլիսին, այսինքն՝ Կովկասի համար մղվող ճակատամարտի սկզբին, միայն Անդրկովկասյան ռազմաճակատի կազմում կային 75 հազար 108 հայեր, 71 հազար 464 վրացիներ և 66 հազար 161 ադրբեջանցիներ*:

Կարմիր բանակի գերագույն գլխավոր հրամանատարության զորակայանը, հաշվի առնելով Կովկասի համար մղվող ճակատամարտի բացառիկ կարևոր նշանակությունը, մշտական ուշադրություն էր դարձնում Անդրկովկասյան ռազմաճակատին: Իր հիշողություններում Անդրկովկասյան ռազմաճակատի նախկին հրամանատար, բանակի գեներալ Ի. Վ. Տյուլենևը գրել է. «1942 թվականի նոյեմբերի 15-ին գերագույն գլխավոր հրամանատարն ինձ կանչեց Մոսկվա: Ես նրան զեկուցեցի Գիզելի օպերացիայի մասին: Ընկեր Ստալինն ինձ լսելուց հետո գոհ մնաց ռազմաճակատի զորքերի գործողություններից: Այդ ժամանակ էլ նա հարցրեց ազգային զորամասերի վիճակի մասին, այն մասին, թե նրանք ինչպես են իրենց դրսևորում մարտում: Ես զեկուցեցի, թե ազգային զորամասերի կազմավորումը իրեն արդարացրեց: Վրացական, հայկական և ադրբեջանական զորամիավորումները կռվում են մեծ արժանապատվությամբ, անսասանորեն, ինչպես ամբողջ զորքը: Կովկասի և Անդրկովկասի ազգությունները ռազմաճակատին մեծ օգնություն են ցույց տալիս: Ամենուրեք ստեղծվում են աշխարհազորայինների ջոկատներ, որոնք գտնվում են պաշտպանության սահմանագծերում: Այստեղ ընկեր Ստալինը նկատեց. «Մենք Մոսկվայում մի փոքր նյարդայնացանք Անդրկովկասյան ռազմաճակատի համար: Բայց շուտով հարձակման կանցնենք հարավում» («Военный вестник», 1974, № 7):

Կովկասի համար պաշտպանական մարտերում ազգային զորամիավորումները ցուցաբերեցին իսկական անձնուրացություն և հերոսություն: Արդեն Կովկասի համար մղվող մարտերի առաջին փուլում (1942 թ. հուլիս—օգոստոս) **ՍՍՀՄ կառավարությունը** շքանշաններով ու մեդալներով պարգևատրեց հազարավոր կովկասցի մարտիկների:

Կուսակցությունն ու կառավարությունը Կովկասի պաշտպանությունն ամրապնդելու համար ձեռնարկեցին մի շարք շտապ միջոցներ: Կարմիր բանակի գերագույն գլխավոր հրամանատարությունը այստեղ տեղափոխեց գվարդիական զորամասեր, որոնք առավելապես կազմված էին ռուս, ուկրաինացի և բելոռուս զինվորներից ու սպաներից: Ուրալից, Սիբիրից և երկրի այլ շրջաններից դեպի Կովկաս էր հասցվում մարտական տեխնիկա, զինամթերք և հանդերձանք: Կուսակցության ու կառավարության այդ օպերատիվ միջոցները Անդրկովկասի ժողովուրդների շրջանում առաջացրին հայրենասիրության հզոր վերելք, ավելի ամրապնդեցին նրանց հավատը ժողովուրդների բարեկամության մեծ ու անհաղթ ուժի նկատմամբ:

Կովկասի համար մղված մարտերում ռուս ժողովրդի հարյուրավոր ու հազարավոր քաջորդիներ իրենց անունը հռչակեցին գեներալներ Ն. Կիրիչենկոյի և Ա. Սելիվանովի՝ Դոնի և Կուբանի կազակներից բաղկացած գվարդիական հեծելազորային կորպուսների կազմում, Ա. Արշինցևի Իրկուտսկյան դիվիզիայի գվարդիականների շարքերում, Յ. Կուննիկովի և Դ. Գորդեևի ծովային հետևակազորի բրիգադներում, Մ. Կիսելյովի հերոս սահմանապահների զորամասերում, Վ. Ֆիլիպովի տանկային զորքերում, Պ. Կոնոնենկոյի սիբիրյան զրահագնացքներում:

* ЦАМО СССР, ф. 209, оп. 1063, д. 29, лл. 1—26:



Կովկասի համար մղված ճակատամարտում ռուս ժողովրդի որդիների ցուցաբերած հերոսության մասին են վկայում հետևյալ փաստերը. կռիվներում կատարած սխրանքների համար կառավարական պարգևի արժանացած Անդրկովկասյան ռազմաճակատի 19.300 հրամանատարներից 12.260-ը, Սովետական Միության հերոսի բարձր կոչմանն արժանացած 45 հոգուց 23-ը և Լենինի շքանշանի արժանացած Կովկասի 154 պաշտպաններից 107-ը ռուսներ էին (տե՛ս А. Гучмазов, М. Трасkунов, К. Цкитишвили. Закавказский фронт Великой Отечественной войны, Тбилиси, 1971, стр. 256): Այս պերճախոս փաստերը վառ ապացույցն են այն բանի, որ հենց ռուս ժողովուրդը վճռական դեր խաղաց ֆաշիստական ստրկացման վտանգից Կովկասի ժողովուրդներին պաշտպանելու գործում:

Անդրկովկասյան ռազմաճակատի քաղվարչության հետ համատեղ Անդրկովկասի հանրապետությունների կոմկուսների Կենտկոմները հսկայական քրտնաջան աշխատանք ծավալեցին Կովկասի ժողովուրդները ներկայացնող զինվորների գաղափարաքաղաքական դաստիարակության գործում: Սկզբում ոչ ռուս ազգությունների զինվորների շրջանում քաղդաստիարակչական աշխատանքը և մարտական կանոնադրությունների ու հրամանների ուսումնասիրությունը դժվարությունների էին հանդիպում օբյեկտիվ պատճառներով՝ շատ զորամիավորումներում կովկասցի զինվորները վատ գիտեին կամ բոլորովին չգիտեին ռուսաց լեզուն, չէին հասկանում իրենց հրամանատարների կարգադրություններն ու հրամանները:

Ադրբեջանի Կ(բ)Կ Կենտկոմը 1942 թվականի հուլիսին ու հոկտեմբերին ադրբեջանցի զինվորների շրջանում քաղդաստիարակչական աշխատանքն ուժեղացնելու վերաբերյալ մի շարք որոշումներ ընդունեց: Ձեռնարկված միջոցների շնորհիվ Ադրբեջանում, պարտուսի բոլոր ուսումնական կետերում և ստորաբաժանումներում, մտցվեց ռուսաց լեզվի ուսուցում: Միաժամանակ կուսակցության Կենտկոմի, մարզկոմների ու շրջկոմների ապարատներից ռազմաճակատ ուղարկվեցին որպես քաղաշխատողներ ու քաղագիտատորներ կոմունիստ ադրբեջանցիներ (տե՛ս В. А. Мурадян. Боевое содружество. Баку, 1964, стр. 96—97):

Վրաստանում կուսակցական կազմակերպությունները ևս անցկացրին մի քանի կուսակցական մոբիլիզացիաներ, որի շնորհիվ վրացական դիվիզիաներ կուսակցական-քաղաքական աշխատանքի ուղարկվեցին փորձառու կուսակցական, սովետական և կոմերիտական աշխատողներ (տե՛ս Очерки истории Коммунистической партии Грузии, ч. II, Тбилиси, 1963, стр. 197):

1942 թ. հոկտեմբերին Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի բյուրոն քննարկեց «Հայ կարմիրբանակայինների շրջանում տարվող կուսակցական-քաղաքական աշխատանքում Հայկական ՍՍՀ կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների կողմից Անդրկովկասյան ռազմաճակատի ռազմական խորհրդին և քաղվարչությանը օգնություն ցույց տալու մասին» հարցը*: Այդ որոշման համաձայն Հայաստանի կոմկուսի Կենտկոմը Անդրկովկասյան ռազմաճակատի քաղվարչության տրամադրության տակ ուղարկեց դասախոսական խմբեր: Հայաստանում հրապարակվեցին բրոշյուրների շարքեր, համառոտ ռազմական ռուս-հայերեն զրուցագիրք: Այդ նույն ժամանակվանից ի վեր Անդրկովկասյան ռազմաճակատի քաղբաժնի օրգան «ԲԳԿԲ-ի մարտիկ» թերթն սկսեց լույս տեսնել նաև հայերեն, վրացերեն և ադրբեջաներեն լեզուներով (տե՛ս **Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության ուրվագծեր,** Ե., 1967, էջ 521):

Ռուս ժողովրդի հետ Անդրկովկասի ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդման, ոչ ռուս ազգության զինվորների ինտերնացիոնալ դաստիարակության և փառապանծ պատմական ավանդույթների պրոպագանդման գործում մեծ դեր խաղաց կարմիր բանակի գլխավոր քաղվարչության հրավիրած՝ ոչ ռուս ազգության զինվորների շրջանում աշխատող ռազմաճակատային ագիտատորների համաբանակային խորհրդակցությունը և այնտեղ Մ. Ի. Կալինինի ելույթը:

«Երբ գերմանական ֆաշիստներն սկսում էին պատերազմը,— ասել է Մ. Ի. Կալինինը,— նրանք մեզ մարդ չէին համարում... Հիմա, մեր հարվածներից հետո, ֆաշիստներն ավելի շատ են սկսել հասկանալ, թե ինչ է իրենից ներկայացնում

* *ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր ՄԼԻ-ի Հայկական մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 1, ց. 030, գ. 281, թթ. 1—3:*

Սովետական Միությունը։ Նախկինում նրանք մեր բոլոր մարտիկներին համարում էին ռուսներ, իսկ հիմա տեսան, որ մարտիկները, ընդ որում լավ մարտիկները, ոչ միայն ռուսներ են, այլ և՛ թուրքմեններ, և՛ ղազախներ, և՛ ուզբեկներ, և՛ ադրբեջանցիներ և այլն։ Նախկինում գերմանացիները կարծում էին, թե ուկրաինացիներն ու բելոռուսներն ուրախությամբ կդիմավորեն իրենց և ոտքի կելնեն ընդդեմ ռուսների։ Մնացած ազգություններին գերմանացիներն առհասարակ հաշվի չէին առնում։

Պատերազմը ցույց տվեց, որ Սովետական Միությունը ժողովուրդների միասնական, համերաշխ ընտանիք է, որ մենք այնպիսի համախմբվածություն ունենք, որպիսին աշխարհը դեռևս չի տեսել... Կարմիր բանակում ներկայացված բոլոր ազգությունների զինվորներն անձնվիրաբար պաշտպանում են իրենց հայրենիքը, հիանալի են կռվում, ցուցաբերում են մեծագույն արիություն և հերոսություն։ Այդ բոլորը մեր թշնամիները երբեք չէին սպասում» (М. И. Калинин. О коммунистическом воспитании и воинском долге. Сборник речей, докладов. М., 1967, стр. 583)։

Կովկասի համար ճակատամարտի պատմությանը հայտնի են մարտական համերաշխության և անձնվիրության շատ օրինակներ, որ Անդրկովկասի ժողովուրդների զավակները ցուցաբերել են ռուս, ուկրաինացի և մեր երկրի մյուս ժողովուրդների զավակների հետ միասին։ Նրանք Կովկասի լեռնանցքներում իրենց թափած արյունով ավելի ամրապնդեցին ու բազմապատկեցին ռուսական բանակի կազմում մարտնչած իրենց հայրերի ու պապերի մարտական ավանդույթները, մոտեցրին հաղթանակի օրը։

Ինչպես հայտնի է, ռազմաճակատային եղբայրությունից ավելի ուժեղ բարեկամություն չկա, և այսօր չի՛ կարելի առանց հուզմունքի կարդալ ռուս զինվոր Վասիլևի նամակը, որ նա 1942 թ. հոկտեմբերին հոսպիտալից գրել է իր զորամասի հրամանատարին. «Խնդրում եմ իմ ընկերներին պատմել հետևյալը. մարտում ես գտնվում էի զինվոր Առուշանյանի կողքին։ Նա չորս անգամ վիրավորվեց, բայց չէր ցանկանում թողնել կռվի դաշտը։ Ճանապարհին Առուշանյանը կապեց իմ վերքը և տեսնելով, որ մեր արյունները խառնվեցին, ասաց. «Հիմա մենք եղբայրներ ենք, մեր սովորույթի համաձայն՝ արյունակից եղբայրներ»։ Այդ խոսքերը հավերժ կմնան իմ հիշողության մեջ»*։

Անդրկովկասի հանրապետությունների ժողովուրդներն իրենց անձնուրաց աշխատանքով թիկունքում և քաջագործություններով Կովկասի համար մղված ճակատամարտում նոր էջ գրեցին իրենց սոցիալիստական վերածննդի փառապանծ պատմության մեջ։ Սովետական Միության բոլոր ժողովուրդների միաձույլ բարոյաքաղաքական միասնությունն ու համախմբվածությունը դիմացան դաժան փորձություններին և ապացուցեցին ողջ աշխարհին, որ սովետական սոցիալիստական հասարակարգը ազգերի զարգացման, բազմազգ պետության ժողովուրդների համագործակցության ամենանպատակահարմար ձևն է։

«Հաղթանակի ակունքները,— մեծ Հաղթանակի 40-ամյակին նվիրված զեկուցման մեջ ասաց Մ. Ս. Գորբաչովը,— սոցիալիզմի էության մեջ են, սովետական ապրելակերպի մեջ, Հայրենական մեծ պատերազմի համաժողովրդական բնույթի մեջ։ Պատերազմը, որպես մեծագույն փորձություն, անսովոր ցայտունությամբ և իրողությամբ հաստատեց, որ հենց ժողովրդական զանգվածներն են պատմության վճռորոշ ուժը։ Մասսայական հերոսություն ցուցաբերելով մարտերում և աշխատանքում՝ իրենց սոցիալիստական հայրենիքը պահպանում և պաշտպանում էին տարբեր ազգությունների սովետական մարդիկ։ Նրանց համախմբում և ոգեշնչում էր ռուս մեծ ժողովուրդը, որի արիությունը, տոկունությունը և աննկուն բնավորությունը հաղթանակի հասնելու անխորտակելի կամքի ոգեշունչ օրինակ էին»։

Կովկասի համար մղված ճակատամարտում եղբայր ժողովուրդների համագործակցությունը սոցիալիստական հասարակության բարոյաքաղաքական միասնության վառ դրսևորումներից է։

---

* ЦАМО СССР, ф. 224, оп. 958, д. 58, л. 39։



# ԱՆԴՐԿՈՎԿԱՍՈՒՄ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԻՐԱԴՐՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

## (ՊԱՏՄԱԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՎԵՐԼՈՒԾՈՒԹՅՈՒՆ)

Ս. ԳԱԼՈՅԱՆ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԱՏՄԱԳԻՏԱԿԱՆ-ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ գրականության զարգացման բոլոր փուլերում մեծ ուշադրություն է նվիրվել Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պատմության մշակմանը։ Այդ նպատակով հրապարակվել են ուրվագծեր երկրամասի և տեղական կուսակցական կազմակերպությունների պատմության մասին, գրվել կոլեկտիվ աշխատություններ, պաշտպանվել դիսերտացիաներ, հրապարակվել բազմաթիվ մենագրություններ ու հոդվածներ, փաստաթղթերի և նյութերի ժողովածուներ։

Պատմագիտական-կուսակցական գրականության մեջ առանձնահատուկ ուշադրություն է նվիրվել Անդրկովկասի հեղափոխական իրադրության պրոբլեմին, այսինքն՝ 1917 թ. նոյեմբերից մինչև 1918 թ. փետրվարն ընդգրկող ժամանակաշրջանում Անդրկովկասում բոլշևիկների կողմից իշխանությունը գրավելու հնարավորության հարցին։ Կան այնպիսի ուսումնասիրություններ, որոնցում տեղական պայմանների սխալ գնահատման հետևանքով (երկրամասի տնտեսական հետամնացությունը, պրոլետարիատի սակավաթվությունն ու թուլությունը, բնակչության ազգային խայտաբղետությունը, մանրբուրժուական կուսակցությունների գերակշռությունը իշխանության երկրամասային մարմիններում և այլն) պաշտպանվում է այն կարծիքը, թե Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո ևս անհնարին էր Անդրկովկասում հակահեղափոխական բլոկի իշխանությունը տապալել զինված ապստամբության միջոցով։ Ուստի պաշտպանվում է այն տեսակետը, որը արդարացնում է նշված ժամանակամիջոցում Անդրկովկասում իշխանության համար բոլշևիկների մղած խաղաղ պայքարը։

Ուսումնասիրողների մյուս, գերակշռող մասն իրավամբ նշում է, որ Անդրկովկասում հեղափոխական իրադրության պայմաններում բոլշևիկները, հենվելով կովկասյան բանակի հեղափոխական զորամասերի վրա, ռեալ հնարավորություն ունեին տապալելու հակահեղափոխական բլոկը և երկրամասում հաստատելու սովետական իշխանություն, եթե ճիշտ տակտիկա կիրառեին հեղափոխական պայքարում։

Ռուսաստանում հեղափոխական պրոցեսի զարգացման մեջ շրջադարձային եղան հուլիսյան դեպքերը։ Էսէռների ու մենշևիկների ուղղակի աջակցությամբ հուլիսյան ճգնաժամը լուծվեց հակահեղափոխության օգտին։ Կասեցվեց հեղափոխության խաղաղ զարգացումը։ Այդ պայմաններում կուսակցա-

կան նոր տակտիկայի մշակմանն էր նվիրված ՌՍԴԲ(բ)Կ VI համագումարը։ Հենվելով Վ. Ի. Լենինի Քաղաքական դրությունը հոդվածի, Լոզունգների առթիվ, Հեղափոխության դասերը բրոշյուրների վրա, համագումարը քաղաքական նոր իրադրությունում մշակեց բոլշևիկների հեղափոխական ստրատեգիան և տակտիկան։ Համագումարի որոշումները սահմանեցին զինված ապստամբության կուսակցության կուրսը։

ՌՍԴԲ(բ)Կ VI համագումարի պատմական որոշումները մարտական ծրագիր հանդիսացան ամբողջ կուսակցության, այդ թվում և Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների համար։ Այդ փաստի գնահատման հարցում սովետական պատմագիտական-կուսակցական գրականության մեջ գոյություն ունի կարծիքների կատարյալ միասնություն։

Կուսակցական նոր տակտիկայի պաշտպանության օգտին միահամուռ արտահայտվեց ՌՍԴԲ(բ)Կ Կովկասյան երկրամասային I համագումարը։ Ընթացիկ մոմենտի մասին Ստ. Շահումյանի զեկուցումը և համագումարի բանաձևերն ըստ էության նվիրված էին երկրամասում աշխատավորներին զինված ապստամբության նախապատրաստելու հարցին։ Այդ կարծիքի պաշտպանության մասին են վկայում Ստ. Շահումյանի մի քանի արտահայտություններ, որոնք զետեղված են ընթացիկ մոմենտի մասին նրա զեկուցման մեջ և համագումարում ունեցած մյուս ելույթներում։ Նա նշում էր, որ հուլիսյան դեպքերից հետո «կարելի էր խոսել իշխանությունը գրավելու մասին միայն, բայց ոչ նրա անցման մասին», «կհրավիրվի Սահմանադիր ժողով թե ոչ, այն կարող է կանգնել քաղաքացիական պատերազմի փաստի առաջ» և «մեր խնդիրն է՝ գլխավորել հեղափոխությունը և իշխանությունը վերցնել մեր ձեռքը» (Ստ. Շահումյան, Երկերի լիակատար ժողովածու հինգ հատորով, հ. 3, «Հայաստան» հրատ., 1978, էջ 266—267)։

Պատմաբաններից շատերը, որոնք ուսումնասիրել են Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունների երկրամասային I համագումարի նյութերը, այն կարծիքին են, որ համագումարը պաշտպանել է կուսակցության զինված ապստամբության կուրսը, քննարկել այդ խնդրի գործնական իրականացման հարցերը։

Սակայն, դրա հետ միասին, պատմագիտական-կուսակցական գրականության մեջ հակադիր և չհիմնավորված տեսակետ են առաջադրել Մ. Ցերցվաձեն և Ռ. Մանուկյանը։ Ելնելով այն հանգամանքից, որ Ստ. Շահումյանի զեկուցման մեջ և համագումարի բանաձևում չկան «զինված ապստամբություն» բառերը, նրանք պաշտպանում են այն կարծիքը, որ համագումարը չէր դնում երկրամասում զինված ապստամբություն նախապատրաստելու հարցը, այլ, ընդհակառակը, կանգնած էր խաղաղ ճանապարհով սովետական իշխանության հաղթանակի տեսակետին (М. В. Церцвадзе, Революционное движение в Грузии в 1914—1917 гг., ч. 2. Тбилиси, Сабчота Сакартвело, 1960, стр. 233, *Մանուկյան Ռ. Ա.*, Բոլշևիկների հեղափոխական աշխատանքը կովկասյան բանակում *(փետրվար 1917— փետրվար 1918 թ.)։ Երևան, «Միտք», 1969, էջ 175—176)։*

Անհրաժեշտ է նշել, որ Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո, հեղափոխական իրադրության առկայությամբ Անդրկովկասում բոլշևիկների կողմից իշխանության նվաճման հնարավորության հարցը եղել է ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի գիտական խորհրդի կողմից Անդրկովկասի պատմաբանների հետ համատեղ՝ Բաքվում կազմակերպված «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության պատմությունը» գիտական կոնֆերանսի մասնակիցների ուշադրության կենտրոնում։ Ա. Հակոբյանի, Ա. Էլչիբեկյանի զեկուցումներում առաջադրվում էր այն տեսակետը, ըստ որի 1917 թ. հոկտեմբերից մինչև 1918 թ. մարտն ընդգրկող ժամանակաշրջանում Անդրկովկասում ռեալ հնարավորություն չկար զինված ապստամբության միջոցով հակահեղափոխությունը տապալելու համար։ Նրանք նշել են, որ տվյալ պատմական ժամանակաշրջանում Անդրկովկասում իշխանության համար բոլշևիկների մղած պայքարն ընթանում էր սովետներում համառորեն և հետևողականորեն մեծամասնություն նվաճելու, դրանց կազմը փոխելու և սովետները հեղափոխա-



կան իշխանության իսկական մարմինների վերածելու ուղիով (տե՛ս «Вопросы истории», № 6, 1958, стр. 182—183, 185)։ Առանձնապես ուշագրավ է Ա. Սուրգուլաձեի արտահայտած կարծիքը։ Նշելով, որ 1917 թ. հոկտեմբեր—նոյեմբերին Անդրկովկասում զինված ապստամբությունը նախապատրաստված չէր, նա անհիմն է համարում երկրամասային կոմիտեի մի քանի գործիչների այն ենթադրությունը, թե հնարավոր էր ստիպել հակասովետական կոալիցիային՝ խաղաղ ճանապարհով ճանաչելու ժողովրդական կոմիսարների խորհրդի իշխանությունը։ Հետագայում Ա. Սուրգուլաձեն ավելի խորացրեց իր տեսակետն այդ հարցի մասին։ Նա զգալի աշխատանք է կատարել նշված ժամանակաշրջանում Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների հեղափոխական գործունեությունը լուսաբանելու նպատակով։ Սակայն Ա. Սուրգուլաձեի մոտ հանդիպում են հակասական դատողություններ, որոնց վերջնական նպատակն է պաշտպանել կուսակցության երկրամասային կոմիտեի քաղաքականությունը, որը բխում էր Անդրկովկասում հեղափոխության խաղաղ զարգացման հնարավորության վերաբերյալ թյուր կարծիքից։

Պատմաբանների Բաքվի կոնֆերանսում Անդրկովկասում հեղափոխական իրադրության պրոբլեմի գիտական լուսաբանման գործում սկզբունքային նշանակություն ունեցող հետևություններով հանդես եկան Լ. Խուրշուդյանը, Մ. Ցերցվաձեն, Ն. Ստուրուան։ Քննարկվող հարցի վերաբերյալ այդ պատմաբանների կարծիքը հանգում է այն բանին, որ, չնայած մի շարք յուրահատուկ գծերին, հեղափոխական շարժումն Անդրկովկասում զարգանում էր ամբողջ Ռուսաստանի համար միասնական, ընդհանուր ուղիով, և ոչ թե երկրամասի առանձնահատկությունները վճռական դեր կատարեցին Անդրկովկասում սովետական իշխանության համար մղված պայքարի տևական բնույթի գործում, այլ երկրամասի բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարության թույլ տված սխալները (տե՛ս նույն տեղը, էջ 188—189)։ Իր աշխատություններից մեկում Լ. Խուրշուդյանը նոր ձևով է լուսաբանել Անդրկովկասում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար բոլշևիկների մղած պայքարը։ Նա հանգում է մի շարք կարևոր հետևությունների, այն է՝ 1917 թ. վերջին 1918 թ. սկզբին Անդրկովկասում ստեղծվել էր հեղափոխական իրադրություն. այդ պայմաններում կուսակցության Կովկասյան երկրամասային կոմիտեն թույլ տվեց տակտիկական սխալ՝ պաշտպանելով իշխանության համար մղված պայքարի խաղաղ ուղին. երկրամասի բոլշևիկները չօգտագործեցին կովկասյան բանակի հեղափոխական պոտենցիալը և այլն (տե՛ս Լ. Ա. Խուրշուդյան, Ստեփան Շահումյան. Պետական և կուսակցական գործունեությունը 1917—1918 թվականներին։ *Ե., ԳԱ հրատ., 1959, էջ 100—188)։*

Անդրկովկասում հեղափոխական իրադրության հարցերին լուրջ ուշադրություն է նվիրել Մ. Ցերցվաձեն 1960 թվականին հրատարակած մենագրության մեջ (տե՛ս М. В. Церцвадзе, Революционное движение в Грузии в 1914—1917 гг, ч. 2, Тбилиси, 1960)։ Պատմաբանի առաջադրած տեսակետն ավելի հիմնավորված հնչեց «Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների պատմությունից» հոդվածում, որը նա գրել է Պ. Կոլցովի, Պ. Ռոդիոնովի և Ս. Խարմանդարյանի հետ համատեղ (տե՛ս «Вопросы истории КПСС», № 6, 1962, стр. 56—73)։ Հոդվածում տրված է այն պատմաբանների (Ա. Հակոբյան, Ա. Սուրգուլաձե) սխալ կարծիքի սկզբունքային գնահատականը, որոնք, ժխտելով հեղափոխական իրադրության առկայությունն Անդրկովկասում, նշում են զինված ապստամբության իրականացման անհնարինությունն այդ ժամանակաշրջանում։ Հոդվածի հեղինակներն այն կարծիքին են, որ Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպություններն իրոք ունեցել են տակտիկական ու քաղաքական սխալներ, և դրանցում գլխավորը եղել է սխալ կողմնորոշումը դեպի իշխանության խաղաղ նվաճումը 1917 թ. նոյեմբերից մինչև 1918 թ. փետրվարն ընկած ժամանակաշրջանում (տե՛ս նույն տեղը, էջ 66)։

Մեր կարծիքով, 1917 թ. նոյեմբերյան դեպքերն Անդրկովկասում՝ պատգամավորական ժողովի ցրումը, Թիֆլիսի զինանոցի հանձնումը մենշևիկներին, վկայում էին կուսակցության երկրամասային կոմիտեի անդամների մեծ

մասի տակտիկական և քաղաքական սխալների մասին. Նրանք հույս ունեին տեղական և բանակային սովետների վերընտրություններ կազմակերպելու միջոցով ստիպել Անդրկովկասի հակահեղափոխական բլոկին, Բաքվի և Հյուսիսային Կովկասի օրինակով, ճանաչել ժողովրդական կոմիսարների խորհրդի իշխանությունը։ Սակայն դրա համար պայմաններ Անդրկովկասում չկային։ 1917 թ. նոյեմբերին աշխատավորներին անհապաղ բացահայտ զինված ելույթի նախապատրաստելու օգտին արտահայտվեցին Ստ. Շահումյանը և բոլշևիկյան մի քանի գործիչներ։ Երկրամասային կոմիտեի անդամների մեծ մասը մերժեց այդ առաջարկությունը։ Հենց այդ հանգամանքը դրդեց Շահումյանին նոյեմբերի 23-ին և 25-ին կուսակցության Կենտկոմին տեղյակ պահելու Կովկասում տիրող գործերի վիճակի մասին, հույս ունենալով Լենինի և Կենտկոմի հեղինակության ուժով ստիպել կուսակցության երկրամասային կոմիտեի մեծամասնությանը՝ հրաժարվելու սխալ որոշումից։

Անդրկովկասում համազգային ճգնաժամի հասունացման պայմաններում բոլոր քաղաքական կուսակցությունների շրջանում բանակի վրա ամենից ավելի մեծ ազդեցություն ունեին բոլշևիկները։ Դրա վառ վկայությունն է Կովկասյան բանակի երկրամասային II համագումարը, որը «...անցավ բոլշևիկների հաղթանակի նշանաբանով» (Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 4, էջ 68)։

1918 թ. հունվարի առաջին օրերին Թիֆլիսում Սարիղամիշից ստացվում էին զեկուցագրեր, որոնք վկայում էին կայազորի բոլշևիկյան զինվորների հեղափոխական տրամադրությունների ուժեղացման մասին, տեղում իշխանությունն իր ձեռքը վերցրած ռազմահեղափոխական կոմիտեի գործունեության, բոլշևիկյան բանաձևեր ընդունած բազմաթիվ միտինգների ու ժողովների մասին (տե՛ս Հ. Ս. Մելիքյան, Հոկտեմբերյան հեղափոխությունը և կովկասյան բանակը, «Հայաստան» հրատ., 1970, էջ 561—567)։ Կովկասյան բանակի զորահրամանատար, գեներալ Օդիշելիձեի զեկուցագրերից մեկում ասված էր. «Կան տեղեկություններ, որոնք ինձ են հասել լուրերի ձևով, որ բոլշևիկները Սարիղամիշում զորամասերի շրջանում ագիտացիա են մղում՝ նպատակ ունենալով շարժվել դեպի Թիֆլիս՝ Անդրկովկասյան կոմիսարիատը տապալելու համար» (մեջբերումն արված է ըստ К. М. Иванидзе, Славные страницы борьбы и побед. Тбилиси, 1975, стр. 143)։ Այն լուրերը, թե բոլշևիկները Սարիղամիշում զորքեր են հավաքում, որպեսզի ռազմահեղափոխական կոմիտեի գլուխ անցած շարժվեն դեպի Թիֆլիս՝ հակահեղափոխական կառավարությունը ցրելու համար, սկսել էին լայնորեն տարածվել Թիֆլիսում հունվարի երկրորդ կեսից։ Բնական է, որ այդ լուրերը խուճապ ու շփոթություն էին առաջացնում քաղաքի հակահեղափոխական հիմնարկություններում, առավել ևս, որ դրանք հիմքից զուրկ չէին։ Պետք է լիովին համաձայնել Հ. Մելիքյանի, Կ. Իվանիձեի և մյուս պատմաբանների հետ, որոնց կարծիքով այդ ժամանակաշրջանում կովկասյան բանակի՝ բոլշևիկացած զորամասերը ճանաչել էին ժողովրդական կոմիսարների խորհրդի իշխանությունը, պատրաստ էին առաջին իսկ կոչով օգնություն ցույց տալ բոլշևիկներին՝ անդրկովկասյան հակահեղափոխությունը բռնի կերպով տապալելու գործում (տե՛ս Հ. Ս. Մելիքյան, նշվ. աշխ., էջ 570, Կ. Մ. Իվանիձե, նշվ. աշխ., էջ 143, Г. Б. Гарибджанян, В. И. Ленин и большевики Закавказья. М., Политиздат, 1971, стр. 228 և այլն)։

Բայց վճռական ելույթի համար այդ չափազանց բարենպաստ պայմաններում բոլշևիկների երկրամասային կոմիտեում շարունակվում էին տարաձայնությունները իշխանության նվաճման ուղիների ու մեթոդների մասին։ Այդ իսկ ժամանակաշրջանում առանձնապես ցցուն կերպով դրսևորվում են կուսակցության երկրամասային կոմիտեի թույլ տված սխալներն ու վրիպումները, որը շարունակում էր իր մեծամասնությամբ պաշտպանել իշխանության հարցի խաղաղ լուծման հնարավորությունը և իշխանության համար մղված պայքարում ցուցաբերում դանդաղկոտություն, կործանարար անվճռականություն։

Իսկ ինչպիսի՞ն էին զինված ելույթի հակառակորդների փաստարկները։ Այս հարցի շուրջ հանգամանալից պատասխաններ են զետեղված երկրամասային կոմիտեի անդամներ Ֆ. Մախարաձեի և Մ. Օրախելաշվիլու հայտնի աշխատություններում։



Ֆ. Մախարաձեն նշել է, որ բոլշևիկյան կենտրոնը Թիֆլիսում լավ գիտեր, թե ինչ կարող էր նշանակել ռազմաճակատից վերադարձող զորամասերի հեղափոխական տրամադրությունը։ ՌՍԴԲ(բ)Կ Կովկասյան երկրամասային կոմիտեն կարող էր ռուսական զորամասերի դժգոհությունն օգտագործել մենշևիկա-էսէռա-դաշնակցական սովետների դեմ մղած իր պայքարում։ Բոլշևիկյան կենտրոնը կարող էր և իրավունք էլ կունենար այդ զորքերն օգտագործել որպես զինված ուժ՝ այդ սովետները ցրելու համար և իսկական սովետներ՝ սովետական իշխանություն ստեղծելու նպատակով։

«Այս հարցը,— գրում է Ֆ. Մախարաձեն,— ինքնըստինքյան ծառացավ բոլշևիկների երկրամասային կոմիտեում։ Կոմիտեի մի՝ թվապես աննշան մասն այդ զինված ուժի օգտագործումը համարում էր նպատակին հասնելու միջոց։ Բայց այդ ընկերները քիչ էին հաշվի առնում այն հանգամանքը, որ թեպետ զորքերը, ճիշտ է, դժգոհ էին անդրկովկասյան մարմինների գործողություններից, բայց նրանք ամենից առաջ ցանկանում էին վերադառնալ տները՝ ամենևին չմտածելով մնալ մեզ մոտ։ Ուստի նրանց օգտագործումը կորցնում էր ամեն մի իմաստ։ Ահա ինչու երկրամասային կոմիտեն ձայների հսկայական մեծամասնությամբ մերժեց հարցի այդպիսի դրվածքը...» (Ф. Махарадзе. Советы в борьбе за Советскую власть в Грузии, Тбилиси, 1927, стр. 114—115)։

Երկրամասային կոմիտեի մեծամասնության «փաստարկների» մասին ավելի հանգամանորեն ու հիմնավոր կերպով խոսում է Մ. Օրախելաշվիլին։ «Սարիղամիշի ռազմահեղափոխական կոմիտեն,— գրում է նա,— աշխատում էր արդեն բոլշևիկների ղեկավարությամբ և բոլշևիկների կովկասյան երկրամասային կոմիտեին կից զինվորական կազմակերպությունների բյուրոյի դիրեկտիվներով։ Թիֆլիսի բոլշևիկացած կայազորին մենշևիկները ելույթներից ետ էին պահում միայն անընդհատ զորացրումով և այն զինվորներին տուն ուղարկելով, որոնց մեջ այն ժամանակ ուժեղ ու անհաղթահարելի էր տուն գնալու ձգտումը. ռազմաճակատային բանակը, իրենից թոթափելով և խրամատներում թողնելով էսէռական խաբուսիկ պատրանքները, ավելի ու ավելի ձախանալով, արդեն շարժվում էր երկաթուղիներով, էշելոններով անցնելով Թիֆլիսի միջով։ Բլոկը որոշում է ընդունում վնասազերծել բոլշևիկացած բանակը ինչպես իր օգտի համար, այնպես էլ կենտրոնական Ռուսաստանի, իսկ առանձնապես Հյուսիսային Կովկասի և Դոնի հակաբոլշևիկյան ուժերի օգտի համար, որտեղ արդեն սկսել էին աշխուժանալ կազակական ատամանները» (Мамия Орахелашвили, Закавказские большевистские организации в 1917 г., Тбилиси, 1927, стр. 51)։ Ասվածից բխում է այն միանգամայն պարզ հետևությունը, որ կուսակցության երկրամասային կոմիտեն լրիվ պատկերացնում էր 1918 թ. վերջերին ստեղծված հեղափոխական պայքարի օբյեկտիվ պատկերը։ Այդ պայմաններում վճռական գործողությունների պահանջով հանդես եկավ կուսակցության երկրամասային կոմիտեի փոքրամասնությունը, որը պաշտպանում էր Ստ. Շահումյանի տեսակետը՝ հակահեղափոխական բլոկը տապալելու համար բռնի միջոցներ գործադրելու անհրաժեշտության մասին։ Այդ կապակցությամբ Մ. Օրախելաշվիլին գրում է, որ ոմանք «անհրաժեշտ ու հնարավոր էին համարում զորամասերի օգտագործումը Թիֆլիսը գրավելու և համաձայնողականների իշխանությունը տապալելու համար, բայց երկրամասային կոմիտեն հարցը այդ ոգով չէր լուծում ոչ թե այն պատճառով, որ անհանդուրժելի էր համարում այդպիսի հեղաշրջումը, այլ այն պատճառով, որ դեռևս հույսը դնում էր Հոկտեմբերյան հեղափոխության կրակից ծնված իշխանությունը չճանաչած բլոկի հակահեղափոխական դիրքավորման հետևանքով ստեղծված ճգնաժամի խաղաղ լուծման վրա» (Նույն տեղը, էջ 53)։

Այսպիսով, Թիֆլիսի զինանոցը աններելի կերպով մենշևիկներին հանձնելուց երեք ամիս հետո կուսակցության երկրամասային կոմիտեն դեռևս 1918 թ. հունվարին, Անդրկովկասում համազգային ճգնաժամի հասունացման պայմաններում, հույսը դնում էր իշխանության հարցի խաղաղ լուծման վրա։

Թվում էր, թե Ֆ. Մախարաձեի և Մ. Օրախելաշվիլու վերոհիշյալ փաստերը պարզ ցույց են տալիս, որ կուսակցության երկրամասային կոմիտեն, թույլ տալով տակտիկական սխալ, 1918 թ. հունվարին ևս պաշտպանում էր իշխանության համար խաղաղ պայքարի նախկին կուրսը։ Բայց, որքան էլ տարօրինակ է, Ա. Սուրգուլաձեն, լինելով երկրամասային կոմիտեի խաղաղ տակտիկայի հետևողական պաշտպան, փորձ է անում ապացուցելու, որ «երբ բանակային զորամասերը շարժվեցին ռազմաճակատից, երկրամասային կոմիտեն պահը ձեռնտու համարեց Թիֆլիսը գրավելու համար և, մշակելով ապստամբության կոնկրետ պլան, ձեռնամուխ եղավ պրակտիկ գործողությունների՝ իշխանությունը զինված ուժով գրավելու համար» (այս փաստաթուղթն առաջին անգամ հայտնաբերել է Ս. Կվաշաձեն. տե՛ս Սուրգուլաձեի վերը նշված աշխ., էջ 93)։ Այդ նպատակով նա բերում է մի քաղվածք կուսակցության երկրամասային կոմիտեի անդամ Ա. Աթաբեկյանի հուշերից, որտեղ նա վկայում է հետևյալի մասին. «Զինված ապստամբության հարցը շատ հաճախ էր դրվում երկրամասային կոմիտեում։ Դրա քննարկմանը մասնակցում է երկրամասային կոմիտեի անդամների մի մասը միայն։ Շահումյանը և Ջափարիձեն Բաքվում էին, իսկ մենք՝ 9 հոգի, խիստ գաղտնի կերպով էինք դնում այդ հարցը։ Այնուհետև Պետրոգրադից մեզ մոտ ուղարկեցին երկու կոմիսարների։ Նրանց ազգանունները ես չեմ հիշում։ Մեկը գնդացրորդ էր, իսկ մյուսը՝ լավ զինվորական մասնագետ, որին Վ. Ի. Լենինը հանձնարարել էր մեզ ինֆորմացիա տալ Թիֆլիս քաղաքը գրավելու մասին. «Տեղեկություններ ստանալով անմիջականորեն Վ. Ի. Լենինի կողմից ուղարկված կոմիսարից, մենք ակտիվ քայլեր ձեռնարկեցինք։ Գնդացրորդին նստեցրինք կառք։ Նա պետք է մեզ ազդանշան տար։ Իսկ ես Ֆիլիպի հետ գտնվում էի սակրավորների գումարտակում։ Այդ գնդացրորդը պետք է ապստամբություն բարձրացներ զինանոցում և մեզ ազդանշան տար։ Մենք երեք օր նստած էինք այդ գումարտակում։ Սակայն պարզվեց, որ գնդացրորդին ձերբակալել են զինանոցի ճանապարհին։ Իսկ Հավլաբարում գտնվում էին ուրիշ ընկերներ, որոնք պետք է դուրս բերեին այնտեղ գտնված գնդերը։ Երեք օր հետո մենք իմացանք, որ ապստամբությունը ձախողվել է» (Ա. Ն. Սուրգուլաձե, նշվ. աշխ., էջ 92—93)։

Այս փաստաթուղթը չի կարող արդարացում ծառայել Ա. Սուրգուլաձեի վերը բերված կարծիքի համար, որովհետև, նախ, Ա. Աթաբեկյանի հուշերը լույս չեն սփռում զինված ապստամբության հարցի շուրջը երկրամասային կոմիտեում եղած տարաձայնությունների վրա, երկրորդ, քիչ հավանական է, որ Թիֆլիսի կայազորը ցրելուց և մենշևիկների կողմից զինանոցը զավթելուց հետո երկրամասային կոմիտեի անդամները կարողանային հույս դնել զինանոցում հնարավոր ապստամբության վրա, երրորդ, միանգամայն անընդունելի է այն անհոգությունը, որով կուսակցության ղեկավարները կարող էին վերաբերվել ապստամբությանը, գնդացրորդին ուղարկելով «ապստամբություն բարձրացնելու զինանոցում և ազդանշան տալու», չորրորդ, այս հարցում լրիվ համաձայն լինելով Հ. Մելիքյանի հետ, կարծում ենք, որ փաստաթղթում անհիմն կերպով անտեսված է Ստ. Շահումյանի, Գ. Կորգանովի, Բ. Շերոնդաևի, Ն. Կուզնեցովի գործունեությունը (տե՛ս Г. С. Меликян. Источниковедение и историография революционного движения Кавказской армии в 1914—1918 гг., Ереван, изд. Армпединститута им. Х. Абовяна, 1972, стр. 27), հինգերորդ, Մախարաձեի մասնակցությունը զինված ապստամբության նախապատրաստմանը քիչ հավանական է՝ ելնելով այն կարևոր փաստից, որ նրա իսկ վկայությամբ կուսակցության երկրամասային կոմիտեն «ձայների հսկայական մեծամասնությամբ մերժեց հարցի այդպիսի դրվածքը» և այլն։ Մեր կարծիքով, Ա. Աթաբեկյանի հուշերում եղած տեղեկությունները կրում են հակասական բնույթ, ուստի և պահանջում են պատմաբանի խոր ու քննադատական մոտեցում։

Սակայն Ա. Սուրգուլաձեն բերված փաստաթուղթը մեկնաբանում է հետևյալ կերպ. «Այս փաստաթուղթը շատ բանով հետաքրքրական է։ Դա վկայում է այն մասին, որ ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրամասային կոմիտեն երբեք իշխանության խաղաղ նվաճման տակտիկայի կույր կողմնակից չի եղել, ինչ-



պես ենթադրում են մի քանի ուսումնասիրողներ։ Նա միշտ իր գործողությունները ենթարկում էր կոնկրետ պայմաններին» (Ա. Ն. Սուրգուլաձե, նշվ. աշխ., էջ 93)։

Մեր կարծիքով, այս հետևությունը լրիվ հակասում է երկրամասային կոմիտեի անդամ Մ. Օրախելաշվիլու այն կարծիքին, որ Անդրկովկասի բոլշևիկները հետագայում հասկացան 1918 թ. հունվարին ունեցած իրենց տակտիկայի սխալականությունը։ Եթե պատմաբանը կարծում է, որ հունվարին զինված ելույթը հակահեղափոխական կոմիսարիատի դեմ արդարացված էր, ապա դրանով նա չի համաձայնում կուսակցության երկրամասային կոմիտեի անդամների մեծամասնության կարծիքին, որոնք աննպատակահարմար էին համարում օգտագործել «արտաքին ուժերը»՝ դեռևս հույսները դնելով ճգնաժամի խաղաղ լուծման վրա։ Այսպիսով, մեջբերելով պատմական նշանակալի փաստաթուղթ, որը վկայում է Թիֆլիսում զինված ապստամբություն նախապատրաստելու երկրամասային կոմիտեի անհաջող փորձի մասին, Ա. Սուրգուլաձեն դրանով իսկ հակասում է իր իսկ այն կարծիքին, որ անհիմն է ընդունել կովկասյան երկրկոմի ինչ-որ ճակատագրական սխալների, 1917—1918 թթ. հեղափոխական գործունեության մեջ նրա սխալ քաղաքականության մասին (տե՛ս նույն տեղը, էջ 93)։

Մեր կարծիքով, 1918 թ. հունվարին Անդրկովկասում ստեղծված բարենպաստ պայմաններում երկրամասային կոմիտեն ռեալ հնարավորություն ուներ, հենվելով ռուսական հեղափոխական զորքերի վրա, տապալել Անդրկովկասյան հակահեղափոխական կոմիսարիատը։ Անդրկովկասում սովետական իշխանության հաստատման համար մղված պայքարում երկրամասային կոմիտեն Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո երկու անգամ իրար ետևից ցուցաբերեց աններելի դանդաղկոտություն, իր մեծամասնությամբ պաշտպանելով իշխանության խաղաղ նվաճման չարդարացված տակտիկան, թույլ տվեց կոպիտ սխալ, իրեն վերջնականապես զինաթափ արեց հակահեղափոխական տեռորի սպառնալիքի հանդեպ։

1918 թ. փետրվարի 10-ին, Անդրկովկասյան սեյմի գումարման օրը, արյունալի հաշվեհարդար կատարվեց Թիֆլիսի Ալեքսանդրյան այգում բոլշևիկների խաղաղ միտինգի մասնակիցների նկատմամբ։ Այդ արյունահեղ ոճրագործությունն առաջացրեց աշխատավորների զայրույթն ու վրդովմունքը։ «Թիֆլիսի պրոլետարիատն արդեն գնահատել է կոմիսարիատի գործունեությունը, գործադուլով հանդես գալով նոր դահիճների ու բռնադատիչների դեմ...,— գրում է Ստ. Շահումյանը,— Անդրկովկասյան կոմիսարիատը, որը ստեղծել է հազարավոր ռուս զինվորներ գնդակահարող Ելիզավետպոլի հակահեղափոխությունը (խոսքը Շամխոր և Ելիզավետպոլ կայարանների միջև ռուսական հեղափոխական զինվորներով էշելոնների վրա կատարված հարձակման մասին է— Ա. Գ.), որը պատժիչ արշավախմբեր է ուղարկում Վրաստանի գյուղացիների դեմ ու մահմեդական գավառները և գնդակոծում է բանվորներին Թիֆլիսում, պետք է որ տապալվի» (Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 4, էջ 160)։

Սաստկացած հակահեղափոխական ռեպրեսիաները վերջ դրեցին բոլշևիկների երկրամասային կոմիտեում եղած տարաձայնություններին։ Բոլշևիկների ձերբակալություններն ու հալածանքները, գնդակահարություններն Ալեքսանդրյան այգում, որոնք բացեցին շատերի աչքերը, նշանակում էին հեղափոխության «խաղաղ ժամանակաշրջանի» ավարտը։

Չնայած այն բանին, որ ՌՍԴԲ(բ)Կ Կովկասյան երկրամասային կոմիտեն պատրաստակամ էր հանդես գալու ժողովրդական կոմիսարների խորհրդի վճռական պաշտպանությամբ և վերջ դնելու անդրկովկասյան հակահեղափոխությանը, սակայն այդ նպատակն անիրականալի էր։ Անդրկովկասում տվյալ պահին չկար հեղափոխական այն ուժը, որի վրա հենվելով բոլշևիկները կարողանային լուծել առաջադրված խնդիրը, այսինքն՝ հենվելով կովկասյան բանակի ռուս հեղափոխական զինվորների վրա։ Չէ՞ որ, ինչպես նշում էր Ստ. Շահումյանը, «...կամայական կազմավորումներով, զորացրումով և գնդերի ազգայնացման սիստեմով» պաշտպանողական ու ազգայնական կուսակցու-

թյունները «լիակատար կազմալուծում մտցրին բանակի շարքերում» (Նույն տեղը, էջ 83)։

Դեռ 1872 թ. սեպտեմբերին, Ամստերդամում կայացած միտինգում հանդես գալով Հաագայի կոնգրեսի մասին ճառով, Կարլ Մարքսը մատնանշում էր. «Մենք գիտենք, որ հարկավոր է հաշվի նստել առանձին երկրների հաստատությունների, բարքերի ու ավանդույթների հետ... որտեղ բանվորները կարող են իրենց նպատակին հասնել խաղաղ միջոցներով։ Բայց նույնիսկ եթե դա այդպես է, մենք պետք է նաև ընդունենք, որ մայրցամաքի երկրների մեծ մասում հեղափոխության լծակ պետք է ծառայի ուժը. հենց ուժն էլ հանդիսանում է այն, որին ժամանակավորապես մենք պետք է դիմենք՝ վերջնականապես աշխատանքի տիրապետություն հաստատելու համար» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր երեք հատորով, հ. 2, «Հայաստան» հրատ., 1973, էջ 392)։

Այս խորիմաստ ցուցումը այժմեական նշանակություն ունի նաև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո Անդրկովկասում սովետական իշխանություն հաստատելու հնարավորությունը վերլուծելիս։ Հիրավի, Անդրկովկասում 1917 թ. վերջերից, հեղափոխական իրադրության պայմաններում, որը 1918 թ. սկզբին վերաճեց համազգային ճգնաժամի, բոլոր օբյեկտիվ հնարավորությունները կային իշխանության զինված նվաճման համար։ Երկրամասի աշխատավորներն ավելի ու ավելի վճռականորեն էին պաշտպան կանգնում Հոկտեմբերյան հեղափոխությանը, պահանջում էին ճանաչել ժողովրդական կոմիսարների խորհրդի իշխանությունը, նրա պատմական դեկրետները, վճռական բողոք էին հայտնում բուրժուանացիոնալիստական կուսակցությունների հակահեղափոխական բլոկի հակաժողովրդական քաղաքականության դեմ։ Անդրկովկասում, 1917 թ. վերջին, վճռականորեն բոլշևիկների և աշխատավորական զանգվածների պաշտպանությամբ հանդես եկավ հեղափոխական կովկասյան բանակը, որը մեծ խանդավառությամբ ընդունեց ժողովրդական կոմիսարների խորհրդի առաջին դեկրետները հաշտության մասին, հողի մասին և այլն։ Սակայն, իշխանության նվաճման մեթոդների հարցում կուսակցության երկրամասային կոմիտեում եղած տարաձայնությունները, նրա տատանողականությունը հեղափոխության վճռական պահերին բացասաբար անդրադարձան հեղափոխական պայքարի վրա։

Անդրկովկասյան հակահեղափոխությունը, սկսելով պատգամավորական ժողովի ցրումից և Թիֆլիսի զինանոցը զինված ուժով զավթելուց, կովկասյան հեղափոխական բանակի ռուս զինվորների արյունահեղ ճանապարհումից, կայազորի ինքնակամ կազմացրումից, ազգային զորամասերի ստեղծումից, Ալեքսանդրյան այգում բոլշևիկյան խաղաղ միտինգի հաշվեհարդարից, Անդրկովկասի հակահեղափոխական սեյմի ստեղծումից՝ զգալի վնաս պատճառեց հեղափոխական ուժերին երկրամասի կենտրոնում։

1918 թ. սկզբից հեղափոխական պայքարի կենտրոնը լրիվ փոխադրվեց Բաքու, որի հերոսական պրոլետարիատը բոլշևիկների գլխավորությամբ նոր էջեր գրեց սովետական իշխանության համար Անդրկովկասի աշխատավորների մղած հեղափոխական պայքարի փառապանծ պատմության մեջ։

---



# ՌԵԳԻՈՆԱԼ ԷԿՈԼՈԳԻԱՆՈՈՍՖԵՐԱՅԻՆ ԳԻՏԱՓՈՐՁԻ ԳԱՂԱՓԱՐԻ ՀԻՄՆԱՎՈՐՄԱՆ ՇՈՒՐՋԸ

**Է. ՄԱՐԳԱՐՅԱՆ**
փիլիսոփայական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ առաջ քաշեց երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու և արդյունավետ դարձնելու ստրատեգիական ծրագիրը։ Այդ ծրագրի հետ լիովին համահնչուն է էկոլոգիական-նոոսֆերային գիտափորձերի անցկացման գաղափարը, որը ծնվել է որպես ՍՍՀՄ ԳԱ կենսոլորտի գծով գիտական խորհրդի՝ Հայկական ՍՍՀ-ում կոմպլեքսային կենսանոոսֆերային հետազոտություններ կատարելու առաջարկի տրամաբանական շարունակություն։ Այս գաղափարը ձևակերպվել է, երբ նախապատրաստվում էր հիշյալ առաջարկի քննարկմանը նվիրված խորհրդակցությունը (Երևան, 1984 թ. նոյեմբեր)։ Նրա հիմքում Վ. Ի. Վերնադսկու կոնցեպցիան է նոոսֆերայի, որպես կենսոլորտի հատուկ, բանականության օգնությամբ փոխակերպվող վիճակի մասին, այսինքն՝ այն ոլորտի, որն ընդգրկում է մեր մոլորակի վրա կյանքի բոլոր ձևերը, ներառյալ մարդկանց հասարակական կյանքը։

Սույն գաղափարի էությունն այն է, որ սահմանափակ «ռեգիոնալ հրապարակներում» գործնականում կոմպլեքս կերպով բացահայտվեն ժամանակակից գիտության ու տեխնիկայի պոտենցիալ հնարավորությունները բնօգտագործման համակարգային օպտիմալացման մեջ՝ ձեռք բերված փորձն այլ ռեգիոններում հետագայում օգտագործելու հեռանկարով։ Ընդ որում կենտրոնական խնդիրը պետք է լինի բնօգտագործման մի այնպիսի եղանակ մշակելը, որը հասարակական զարգացման հետզհետե արագացող տեմպերի պայմաններում չտանի դեպի բնական կոմպլեքսների իրքնավերականգնման պոտենցիալի ավերում, այլ նպաստի բնության համար առողջ միջավայրի ստեղծմանը (այս խնդրի մասին ավելի մանրամասն տե՛ս В. П. Казначеев. Очерки теории и практики экологии человека. М., 1983; П. Г. Олдак. Равновесное природопользование. Взгляд экономиста. Новосибирск, 1983)։

Էկոլոգիանոոսֆերային գիտափորձերի համար ընտրվելիք ռեգիոնները պետք է բավարարեն մի շարք պահանջներ։ Մասնավորապես դրանք, բացի նշանակալից չափով էկոլոգիական լարվածությունից, պետք է ունենան համեմատաբար ոչ մեծ, լանդշաֆտային առումով բազմազան տերիտորիաներ, էկոնոմիկայի, գիտության և կրթության զարգացման բավականին բարձր մակարդակ։ Մասնագետների կարծիքով Հայկական ՍՍՀ-ին բնորոշ է նշված և մի շարք այլ պահանջվող հատկանիշների համակցությունը։

Էկոլոգիանոոսֆերային գիտափորձերը պետք է հանգամանորեն նախապատրաստված լինեն ընտրված ռեգիոնում կատարված սիստեմատիկ ու բազմակողմանի հետազոտություններով, այսինքն՝ իրական էկոլոգիանոոսֆերային գիտափորձին պետք է նախորդի հետազոտական գիտափորձը՝ արտահայտված ռեգիոնի համա-

պատասխան համակարգային-օպտիմալացման մոդելներում։ Առայժմ խոսք կարող է լինել սոսկ այդ հետազոտական փուլի, ավելի ստույգ՝ նրա անհրաժեշտ նախադրյալների ստեղծման մասին։

Դրանց մեջ ելակետայինը ռեգիոնում կոմպլեքսային էկոլոգիանոոսֆերային հետազոտությունների անցկացման ընդհանուր ծրագրի մշակումն է։ Վերոհիշյալ խորհրդակցության որոշումների համաձայն, այդպիսի ծրագրերի երկու տարբերակներ արդեն ստեղծվել են անցած տարվա գարնանը։ Դրանից հետո, սակայն, քննարկվող հետազոտությունների իրագործման ուղղությամբ նկատելի առաջխաղացում չի եղել։ Օբյեկտիվորեն դա կարելի է բացատրել խնդրի անսովորությամբ, եզակի կոմպլեքսայնությամբ ու բարդությամբ, այն նշանակալից դժվարություններով, որոնք առաջ են գալիս էկոլոգիանոոսֆերային գիտափորձի իրագործման ճանապարհին։ Չէ՞ որ ի տարբերություն սովորաբար անցկացվող սոցիալական գիտափորձերի, որոնցում առանձնացվում են հասարակական կյանքի առանձին կողմերը, տվյալ դեպքում բնօգտագործման տեսանկյունից փորձի մեջ գործնականում պետք է ներգրավվեն նրա բոլոր հիմնական ոլորտները։

Իսկ դժվարություններ օրինաչափորեն առաջ են գալիս սկզբունքորեն ամեն մի նոր խնդիր առաջադրելիս, քանի որ նրա իրագործումն իսկ հակասության մեջ է մտնում գործունեության արդեն ձևավորված նմանակների և ավանդույթների հետ։ Եվ որքան այն ավելի կոմպլեքսային բնույթի է, այնքան ավելի նշանակալից են դժվարությունները։ Այսպես, օրինակ, երկրի էկոնոմիկան ինտենսիվ զարգացման ռելսերի վրա փոխադրելը վիթխարի դժվարությունների հետ է կապված հենց այն պատճառով, որ ստիպված պետք է հաղթահարել սոցիալ-տնտեսական առավելապես էքստենսիվ զարգացման երկար ժամանակվա ընթացքում գոյացած նմանակների հսկայական իներցիան։ ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումները միանշանակ կերպով վավերացրին այդ հսկայական սոցիալ-տնտեսական փոխակերպումը, քանի որ այն միանգամայն անհրաժեշտ է սոցիալիստական զարգացման տվյալ փուլի համար։

Սկզբունքորեն բանն այդպես է նաև այս դեպքում։ Էկոլոգիական պրոբլեմի կոմպլեքսային լուծման անհրաժեշտությունից չես կարող խույս տալ։ Բնավ պատահական չէ, որ ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերում մեծ ուշադրություն է դարձված այս հարցին։ «Մեր առջև սուր կերպով ծառացած է բնության պահպանման և նրա ռեսուրսների ռացիոնալ օգտագործման խնդիրը»,— ասվում է XXVII համագումարին ներկայացված ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ։ Նշելով, որ սոցիալիզմը իր պլանային կազմակերպությամբ և մարդասիրական աշխարհայեցողությամբ ընդունակ է ներդաշնակություն մտցնել հասարակության և բնության փոխհարաբերությունների մեջ, Մ. Ս. Գորբաչովը միևնույն ժամանակ նշում է այն հանգամանքը, որ մի շարք ռեգիոններում բնական միջավայրի վիճակը տագնապ է հարուցում, և որ բնության պահպանության գործում անհանդուրժելիորեն դանդաղ են օգտագործվում գիտատեխնիկական նվաճումները։

Այդ նվաճումների կոմպլեքսային օգտագործման ուղիների որոնումը, բնականաբար, պետք է սկսել հենց այն ռեգիոններից, որոնք տագնապալի են։ Դրանց թվին է պատկանում, ինչպես հայտնի է, Հայկական ՍՍՀ-ն։ Եվ եթե էկոլոգիանոոսֆերային գիտափորձերի անցկացման խնդիրը օրակարգային է դարձվում հասարակական պրակտիկայի գոյություն ունեցող վիճակի թելադրանքով, իսկ ժամանակակից գիտությունը և տեխնիկան այդ բանի համար բավականաչափ պոտենցիալ են պարունակում, ապա ուրեմն, տվյալ գաղափարին պետք է վերաբերվել ամենայն լրջությամբ։ Նման բնույթի գիտափորձերի նախապատրաստման ու անցկացման պրոցեսները կարող էին չափազանց կարևոր փորձադաշտեր դառնալ, որոնք թույլ կտային կոմպլեքսային եղանակով նոր օղակներ մշակել ու ներդնել կառավարման մարմինների, գիտության, կրթության և այլ ոլորտների կառուցվածքում, որոնք անհրաժեշտ են սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու և արդյունավետ դարձնելու փուլի համար, իրագործելու այդ բանի համար պահանջվող վերափոխումներ։ Եվ դա պայմանավորված է էկոլոգիանոոսֆերային գիտափորձի առանձնահատուկ կոմպլեքսայնությամբ։ Նրա համար բնորոշ խնդիրների տիպն էլ հենց թույլ կտա դրանք լուծելիս դուրս գալու գործունեության, այդ թվում նաև գիտական գործունեության, ինտենսիվացման սկզբունքորեն նոր սահմանագծեր։



Սոցիալ-տնտեսական զարգացման ու ինտենսիվացման փուլի առանձնահատկությունն այն է, որ նրա արդյունավետությանը հասնելու բանալին ամբողջ հասարակական կյանքի մակարդակով ուղղակի կախման մեջ է այդ կյանքի օպտիմալ վիճակները, կապերն ու նրա զարգացման ստրատեգիաներն ի հայտ բերելուց։ Այդ են պահանջում ինչպես արդյունավետ զարգացման բուն բնույթը, որը հենվում է գործունեության զանազան տեղամասերի միջև կոոպերատիվ կապերի առավելագույնս օգտագործման վրա, այնպես էլ սոցիալ-տնտեսական զարգացման բուն ստրատեգիան, այսինքն՝ երկրին ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած հիմնադրույթները։ Չէ որ հասարակական զարգացման տեմպերի և, համապատասխանաբար, միջավայրի վրա մարդկային ազդեցության ուժերի աճին համեմատ մեծանում է նաև առաջ եկող բացասական՝արդյունքները նվազագույնի հասցնելու անհրաժեշտությունը։ Իսկ այդպիսի անհրաժեշտություն հնարավոր է հենց շնորհիվ զարգացման, և ամենից առաջ գիտատեխնիկական զարգացման, օպտիմալ տարբերակների հայտնաբերման։ Այդ խնդրի լուծումը անհրաժեշտաբար պահանջում է անցում հասարակական պրակտիկայի գերատեսչական օպտիմալացումից ընդհանուր համակարգային օպտիմալացման, որն արտահայտում է ողջ հասարակության շահերն ու պահանջմունքները, և նրա համապատասխան մասերի զարգացումն այս վերջիններին ենթարկելը։ Դա էլ իր հերթին ենթադրում է գիտության կանխատեսող հնարավորությունների բազմապատկում, զարգացման հետազոտվող պրոցեսի հնարավոր տարբերակները «խաղարկելու» ընդունակություն՝ դրանց մեջ օպտիմալն ընտրելու նպատակով։ Ուստի կարելի է վստահորեն ասել, որ կառավարման ու պլանավորման արդյունավետության որակական բարձրացման ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած խնդիրները շատ բանով ուղղակի կախման մեջ են հասարակական պրոցեսների համակարգային օպտիմալացումը մոդելավորելու հնարավորությունների այժմեականացումից։ Ծնունդ առնելով համամարդկային բնույթի պրոբլեմներ լուծելիս, այն ստացավ գլոբալ մոդելավորում անվանումը (տե՛ս այդ մասին Марксистско-ленинская концепция глобальных проблем современности. Под ред. В. В. Загладина и И. Т. Фролова. М., 1985). Բայց նրա սկզբունքները կարող են և պետք է օգտագործվեն հասարակական կյանքի քննության ամենատարբեր մակարդակներում։

Լայն հեռանկարներ բացելով սոցիալական կառավարման պրակտիկայի առջև, մոդելավորման այդ տեսակը միաժամանակ պահանջում է գիտական գիտելիքի սկզբունքորեն նոր, գիտականորեն ինտեգրացումային տիպեր, որոնք ենթադրում են հասարակական, բնական և տեխնիկական գիտությունների սերտ կոոպերացում։ Եվ դա հատկապես վերաբերում է հասարակության՝ որպես մի բարդ ինքնակազմակերպվող հարմարվողական համակարգի մասին ամբողջական գիտելիքներին։

Գիտելիքների այս տեսակի արտադրությունը բավարար չափով չէր խթանվում սոցիալ-տնտեսական զարգացման անցած էքստենսիվ փուլում, երբ տեսադաշտում էին մարդկային գործունեության առավելապես մասնավոր արդյունքները։ Իսկ զարգացման ինտենսիվ փուլի համար այն բացառիկ կարևոր է դառնում։ Այդպիսի կարևորությունը պայմանավորված է մասնավորապես այն բանով, որ դա մի փուլ է, որին պետք է բնորոշ լինեն այնպիսի ճկուն կառուցվածքները, որոնք ունենան դեպի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուրսի իրագործման ընթացքում առաջ եկող պրոբլեմները ժամանակին հարմարվողաբար կողմնորոշվելու ունակություն։ Այդ կառուցվածքների ճկունության աստիճանն էլ ուղղակի կախման մեջ է գործունեության համապատասխան ձևերի ինտեգրացման մակարդակից և դրանց համար բնորոշ կոոպերատիվ կապերի չափից։ Ընդ որում հատուկ, վճռական դեր է ստանում գիտության և կրթության ճկուն ձևերի ստեղծման խնդիրը, քանի որ հասարակության առջև հառնող պրոբլեմների լուծումը անմիջական կախման մեջ է գիտելիքների արտադրվող ձևերից և մասնագիտություններից։

Բոլոր հիմքերը կան կարծելու, որ մենք վկա ենք գիտություն-կրթություն ամբողջական համակարգի մեջ սկսվող խոր փոխակերպման պրոցեսների, որոնք նշանավորում են միադիսցիպլինային տիպի գիտական ու կրթական մշակույթներից միջդիսցիպլինային տիպին կատարվող անցումը։ Սրա մշակման անհրաժեշտությունը թելադրված է ինչպես աշխարհում տիրող ընդհանուր վիճակով, որը կապված է

գլոբալ պրոբլեմների բարդ համակարգերի լուծման անհրաժեշտության հետ, այնպես էլ սոցիալիստական հասարակության զարգացման ժամանակակից փուլի հետ, որը հզոր համահավաք խթանիչներ է տալիս քննարկվող պրոցեսների զարգացմանը: Էկոլոգիանոոսֆերային գիտափորձի իրականացումն էլ հենց կարող է շատ կարևոր քայլ հանդիսանալ ելակետային բլոկների կոմպլեքսային և կոորդինացված կերպով ստեղծման համար, որոնք միջդիսցիպլինային կրթական կոմպլեքսի հիմքն են կազմում:

Ռեգիոնալ էկոլոգիանոոսֆերային գիտափորձի գաղափարի և հասարակական պրակտիկայի ինտենսիվացման խնդրի նշանակությունը ցույց տալու համար օգտվենք ամենից առաջ Հայկական ՍՍՀ-ում էկոլոգիանոոսֆերային հետազոտությունների ծրագրի մի նախագծից և բացահայտենք այդ հետազոտություններն իրագործելու դեպքում դրանց որոշ հնարավոր հետևանքները: Ծրագրի տվյալ տարբերակը կազմելիս նպատակահարմար դիտվեց առանձնացնել էկոլոգիանոոսֆերային հետազոտությունների 5 մեկնարկային խնդիրներ՝ ուղղված դրանց ելակետային նախադրյալների ստեղծմանը, և 7 հետազոտական պրոբլեմ: Դրանց մշակումը եղավ միջդիսցիպլինային սեմինարի գործունեության արդյունքը, որը ստեղծվեց Հայկական ՍՍՀ ԳԱ փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտի մշակույթի տեսության բաժնին առընթեր և գործեց 1985 թ. ապրիլ—մայիս ամիսներին:

**Առաջին մեկնարկային խնդիրը** կապված է էկոլոգիանոոսֆերային կենտրոնի կառուցվածքի մշակման և նրա փուլ առ փուլ ստեղծման հետ որպես մի հիմնարկության, որն ունակ է կատարելու հիմնարար էկոլոգիական հետազոտություններ, հանրապետությունում իրագործելու կոորդինացիոն ֆունկցիաներ գիտելիքի այդ բնագավառում և կոմպլեքս կերպով բնօգտագործման օպտիմալացման գործնական հանձնարարականներ մշակելու: Համապատասխանաբար **երկրորդ խնդրով** առաջարկվում է մշակել և սկսել իրագործել հանրապետությունում մի շարք նոր գիտաճյուղերի կոորդինացված զարգացման և քննարկվող հետազոտություններով զբաղվելու համար անհրաժեշտ կադրերի պատրաստման ու վերապատրաստման ծրագիրը: **Երրորդ խնդիրը** լծորդված է այն միջոցառումների ծրագրի մշակման հետ, որոնք պահանջվում են ռեգիոնի էկոհամակարգը գլոբալ կենսոլորտային մոնիտորինգի ընդհանուր համակարգի մեջ մտցնելու համար: **Չորրորդ խնդիրը** կապված է ծրագրվող հետազոտությունների գիտատեխնիկական և ինֆորմացիոն ապահովվածության ծրագրի մշակման ու իրագործման հետ: Վերջապես, **հինգերորդ խնդիրը** ուղղված է ռեգիոնի էկոլոգիական քարտեզագրման ծրագրի մշակմանը և իրագործմանը:

Նշված մեկնարկային խնդիրների լուծման համեմատ և դրա ընթացքում առաջարկվում է որոնումներ սկսել հետևյալ հետազոտական պրոբլեմների ուղղությամբ. 1. ռեգիոնի էկոհամակարգը (անտրոպոբիոգեոցենոզ) և նրա ամբողջական արտահայտման գիտական միջոցները, 2. ռեգիոնի էկոհամակարգի կենսաքիմիական վերլուծությունը (զանազան լանդշաֆտներում քիմիական տարրերի շրջապտույտի ու հաշվեկշռի կոմպլեքսային հետազոտությունը՝ մարդածին գործոնները հաշվի առնելով), 3. ռեգիոնի բնակչության էկոհամակարգային վերլուծությունը, 4. ռեգիոնի մշակույթի (մարդկային գործունեության եղանակի) էկոհամակարգային վերլուծությունը, 5. ռեգիոնի ռեսուրսների էկոհամակարգային վերլուծությունը, 6. ռեգիոնի տերիտորիալ կազմակերպման եղանակները, 7. ռեգիոնի ընդհանուր օպտիմալացված նոոսֆերային մոդելի ստեղծումը:

Բոլոր նշված պրոբլեմները ֆունկցիոնալ կապի մեջ են միմյանց հետ: Դրանց հետազոտման հիմքում դրվում է համակարգային-ինտեգրատիվ սկզբունքը, որի իրագործումը ենթարկված է ռեգիոնի էկոհամակարգի նոոսֆերային օպտիմալացման ընդհանուր խնդրին: Տվյալ սկզբունքի համաձայն անհրաժեշտ է փոխկապակցել առանձնացվող բաղադրամասերը և դրանք քննել այն ավելի ընդհանուր համակարգերի շրջանակներում, որոնց բաղադրիչներն են հանդիսանում հենց այդ առանձնացվող բաղադրամասերը:

Ինչ վերաբերում է բոլոր հետազոտական պրոբլեմների լուծման հիմքում դրվող ընդհանուր մեթոդին, ապա այդպիսին նշված համակարգային-օպտիմալացման կանխատեսումը մոդելավորելու մեթոդն է, որը հենվում է ուսումնասիրվող պրոցեսների



զարգացման զանազան երկընտրանքների վրա՝ գոյություն ունեցող պայմաններում առավել ընդունելին ընտրելու նպատակով: Բոլոր պրոբլեմների հետազոտությունները պետք է կատարվեն զուգահեռաբար և փոխկապակցված: Առանձին պրոբլեմների ուսումնասիրությունից ստացված արդյունքները իսկույն պետք է փորձարկվեն ընդհանուր մոդելում: Իսկ դա իր հերթին թույլ կտա մասնավոր մոդելներ ստեղծելու համար կատարելագործել այդ պրոբլեմների լուծման որոնումները, ինչպես նաև կարգավորել դրանց համակարգային փոխկապակցման մեխանիզմները:

Ընդհանուր ձևով այսպիսին է ռեգիոնում էկոլոգիանոոսֆերային հետազոտությունների առաջարկվող ծրագիրը: Ինքնին հասկանալի է, որ սա խնդրի լուծման հնարավոր մոտեցումներից մեկն է: Բայց սրանում արտահայտված են որոշ ընդհանուր պահանջներ, որոնք պարտադիր են խնդրի կոմպլեքսային առաջադրմանը հավակնող ցանկացած մոտեցման համար: Եվ դա վերաբերում է առաջին հերթին ուսումնասիրվող ռեգիոնի համակարգային-օպտիմալացման մոդելավորման նշված մեթոդին, առանց որի օգտագործման անկարելի է նույնիսկ մոտենալ քննարկվող խնդրին:

Եթե այս կապակցությամբ փորձենք պատասխանել, թե ինչ հետևանքների կհասցնի էկոլոգիանոոսֆերային հետազոտությունների իրագործումը, ապա վստահ կարելի է ասել հետևյալը: Ամենից առաջ դրանք կհանդիսանան հանրապետությունում արագացման և ինտենսիվացման ստրատեգիայի համար չափազանց կարևոր կառավարման և պլանավորման մեխանիզմի մշակման ու զարգացման խթանն ու պայմանը: Այդ մեխանիզմը կոչված է նախագծելու և մոդելավորմամբ կառուցելու սոցիալ-տնտեսական պրոցեսների օպտիմալ վիճակները, կապերն ու զարգացման ստրատեգիաները՝ արտահայտված հասարակական պրոցեսների մոդելավորման քննարկվող տեսքով: Իսկ դա իր հերթին կպահանջի համապատասխան մաթեմատիկական և քոմփյութերային ապահովման զարգացում:

Ընդհանրապես համակարգային-օպտիմալացման մոդելավորումը նշանավորում է վերը ցույց տրված գիտաինտեգրացումային տիպի գիտելիքների օգտագործման սկզբունքորեն նոր և ժամանակի ընթացքում ավելի ու ավելի ընդլայնվող կանալի մշակումը: Դրանով իսկ այդ մոդելավորումը պոտենցիալ կերպով դառնում է գիտական և, համապատասխանաբար, կրթական գործունեության արդյունավետացման բացառիկ կարևոր գործոն: Այդ տեսակետից համակարգային-օպտիմալացման մոդելավորումը հանդես է գալիս որպես միջճյուղային գիտական կուլտուրայի և կրթության կուլտուրայի նախակարապետ:

Էկոլոգիանոոսֆերային հետազոտությունները օրինաչափորեն կպայմանավորեն հանրապետությունում գիտելիքի մի ամբողջ շարք նորագույն, խիստ հեռանկարային ինտեգրացումային բնագավառների զարգացման անհրաժեշտությունը: Դրանցից են, օրինակ, սիներգետիկան (ինքնակազմակերպման ընդհանուր տեսությունը), նրա հետ սերտ կապված անհավասարակշիռ պրոցեսների թերմոդինամիկան, համարեցման և օպտիմալացման ընդհանուր տեսությունը, չխոսելով արդեն ընդհանուր էկոլոգիական տեսության մասին: Չնայած այն բանին, որ այս և սրանց հետ կապված տեսությունները կոչված են հանդես գալու որպես ժամանակակից գիտության համագիտական բազիս և պոտենցիալ կերպով կիրառելի են ինչպես բնության օբյեկտների, այնպես էլ հասարակության նկատմամբ, դրանք մինչև այժմ սովորաբար մշակվել են առանձին բնական և տեխնիկական գիտությունների տեսանկյունից: Այդ բանին նպաստել են էկոնոմիկայի էքստենսիվ աճի նմանակները և աճի այդ տիպին համապատասխան գիտական զարգացումը, որոնց դեպքում, ինչպես արդեն ասվել է, իբրև կանոն, տեսադաշտում են գտնվում մարդկային գործունեության մասնավոր արդյունքները:

Երբ այդպիսի նմանակները իշխող էին, բուն հասարակական կյանքը սովորաբար ուսումնասիրվում է մասնագիտացված, մասնավոր, ասենք՝ տնտեսական չափանիշներով ղեկավարվելով: ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած ինտենսիվացման ստրատեգիայի դեպքում բացառիկ կարևոր նշանակություն են ստանում ինտեգրացումային մոտեցումները ինչպես հասարակության և բնության փոխազդեցությունները, այնպես էլ բուն հասարակական կյանքն ուսումնասիրելիս: Բնության նկատմամբ նախկին զուտ սպառողական մոտեցումը անխուսափելիորեն հանգեց-

նում էր, մի կողմից, հասարակության և, մյուս կողմից, բնության կենսաֆիզիկական միջավայրի հակադրմանը, նրանց միասնության և այն ստույգ հանգամանքի անտեսմանը, որ մարդկանց հասարակական կյանքը, լինելով կենսոլորտի, այսինքն՝ կյանքի ոլորտի բաղկացուցիչ մասը, պետք է ենթարկվի նրա որոշ գործառական ընդհանրական օրենքներին:

Դրանցից են, ամենից առաջ, կիբեռնետիկորեն ըմբռնված հարմարվողականության օրենքները, որոնք արտահայտում են համակարգի՝ ինքնապահպանման նպատակով հետադարձ կապի մեխանիզմի միջոցով միջավայրի պայմաններին համապատասխանեցվելու ունակությունը: Բնօգտագործման էքստենսիվ տիպի նշված առանձնահատկությունների հետևանքով մարդկանց՝ բնությունը վերափոխելու հետզհետե ավելի ուժգնացող ունակությունը բացարձակացվում էր ու հաշվի չէր առնըվում, որ այդ ունակությունն արտահայտում է մարդկանց համար բնորոշ այն առանձնահատուկ միջոցը, որով նրանք հասնում են հարմարվողական արդյունքի: Ուստի հասարակական կյանքի հարմարվողական բնույթի գիտական ըմբռնումը ստրատեգիապես շատ կարևոր է: Կարծում ենք, որ հասարակությունը ճիշտ կլինի բնութագրել որպես համապարփակ հարմարվողաբար հարմարեցնող համակարգ: Մեր առաջարկած այս բանաձևն այսօր ընդունում են շատ հետազոտողներ ըստ երևույթին այն պատճառով, որ դրանում արտացոլված է մարդկային հարմարվողականության պրոցեսի նշված կարևոր առանձնահատկությունը:

Բնական միջավայրի հետ հասարակության փոխազդեցության պրոցեսների գիտակցված, մշտապես ճշգրտվող ամբողջական կարգավորման աննախընթաց դժվարին խնդիրը, որն այսօր ծառացած է մարդկության առջև, անչափ բարդացրել է սոցիալական կառավարման ամբողջ պրոցեսը: Միաժամանակ այն պահանջում է որակապես նոր զանգվածային գիտելիքներ, որոնք անցյալում կամ բոլորովին չէին ստեղծվում, կամ հետազոտական ուշադրության կիզակետից դուրս էին: Եվ տեն առաջին հերթին սուր պահանջ զգացվեց սիստեմատիկաբար ըմբռնել և գիտակցաբար օգտագործել բնական միջավայրի հետ հասարակական կյանքի հարմարվողական փոխազդեցության նախկինում ընդհանուր առմամբ տարերայնորեն գործած օրենքներն ու մեխանիզմները:

Դրա համար էլ այսօր շատ կարևոր է միասնական սկզբունքների, հասկացությունների, չափանիշների հիման վրա մարդկային ակտիվությունը և կյանքի կենսաբանական ձևերի ակտիվությունը, ինչպես նաև նրանց առաջադրած տարբեր մակարդակների էկոլոգիական համակարգերի աբիոտիկական բաղադրիչների ինտեգրացված կերպով հետազոտել կարողանալը: Մեր օրերում պակաս կարևոր չէ բուն իսկ հասարակական կյանքի զանազան բաղադրիչների ու ենթահամակարգերի ինտեգրացումային հետազոտությունը: Տվյալ դեպքում վճռական նշանակություն է ձեռք բերում մարդկային գործունեության տնտեսական ու արտատնտեսական ոլորտների, ինչպես նաև այդ գործունեության կատարողական և սոցիալ-կարգավորիչ միջոցների միակողմանիորեն տարբերակված, ինքնակա ուսումնասիրման ավանդույթների հաղթահարումը: Միջոցներ, որոնք արտահայտված են, մի կողմից, նյութական տեխնիկայի, և, մյուս կողմից, ինստիտուցիոնալ, արժեքային-նորմատիվ համակարգերում:

Ստեղծված իրադրության մեջ հսկայական դեր ունեն կատարելու հասարակական գիտությունները: Կարծում ենք, որ հասարակագիտության գիտագործնական ներունակությունների բացահայտման մայրուղիները, կյանքի պրակտիկայի հետ նրա կապերի ուժեղացումը, որի անհրաժեշտությունը շեշտվեց XXVII համագումարին ներկայացված ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ, բնական և տեխնիկական գիտությունների հետ նրա ինտեգրացումային փոխգործողության մեջ են: Շատ կարևոր է հաշվի առնել, որ նշված ավանդույթները չէին կարող անհագին ծախսեր, մասնավորապես կառավարչական բնույթի ծախսեր չպահանջել: Դա արդեն բխում էր այն բանից, որ դրանք օրինաչափորեն պայմանավորում էին շատ երևույթների նշանակալի, իսկ հաճախ էլ կամայականորեն սահմանափակման միտումը: Թե ինչ բացասական հետևանքների են հասցնում կառավարչական ինֆորմացիայում արտացոլվող խզումը համապատասխան երևույթների մեկնաբանության և իրականում դրանց բնորոշ հատկությունների միջև, դեռ հարկավոր է պարզել: Չէ՞ որ այդ ինֆորմացիան օբյեկտիվորեն կոչված է ընդհանրացված և խտացված



ձևով արտահայտելու հասարակության կառավարման մեջ օգտագործվող սոցիալական փորձը:

Իբրև նշված միտումի վառ օրինակ կարող է ծառայել «տեխնոլոգիա» հասկացության օգտագործման ավանդույթը, որի համաձայն սույն հասկացությունը դեպքերի մեծամասնությամբ կցորդվում է սոսկ կենսաֆիզիկական օբյեկտների յուրացման և վերափոխման պրոցեսների հետ: Մինչդեռ իրականում տեխնոլոգիան այն եղանակներն ու դրանց համակարգերը կազմող միջոցներն են, որոնց շնորհիվ իրագործվում են գործունեության ցանկացած պրոցեսներ: Եվ մարդկային գործունեության կարգավորման այս տեսակետից քննության առնված միջոցները, որոնք արտահայտված են բարոյաիրավական ինստիտուտներում, նորմերում, արժեքներում, ոչ պակաս չափով են տեխնոլոգիական, քան կենսաֆիզիկական օբյեկտների վրա ազդելու միջոցները: Պատահական չէ, որ Կ. Մարքսը շատ լայն է օգտագործել «տեխնոլոգիա» հասկացությունը, բնութագրելով այն որպես բնության նկատմամբ մարդու ակտիվ վերաբերմունք, նրա կյանքի արտադրության անմիջական պրոցես և դրանցից բխող հոգևոր պատկերացումներ (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 23, с. 383): Դեռ ավելին, այս կապակցությամբ նա օրինաչափ է համարել խոսել նաև «բնական տեխնոլոգիայի», այսինքն՝ բուսական և կենդանական օրգաններր մասին:

Ի՞նչ է տալիս տեխնոլոգիայի այսպիսի լայն ըմբռնումը: Այն ստեղծում է հասարակական կյանքի տարբեր ոլորտների ինտեգրատիվ քննության տեսական կարևոր նախադրյալներից մեկը, քանի որ ապահովում է այդ կյանքի պրոցեսներն իրագործելու՝ միջոցների տեսանկյունից դրանց համադրելիության հստակ չափանիշը: Անհրաժեշտության դեպքում այն նաև հասարակական կյանքի և բնական պրոցեսների համադրելիության չափանիշ է ապահովում:

Այսպիսի մոտեցումը սիստեմատիկ կերպով հիմնավորելու և նրա հետազոտական ու կառավարչական հնարավորությունները բացահայտելու փորձ է կատարվել մշակույթի՝ որպես մարդկային գործունեության համապարփակ տեխնոլոգիայի (եղանակի), նրա յուրահատուկ հարմարեցուցիչ և օպտիմալացնող մեխանիզմի մասին մեր առաջարկած կոնցեպցիայում: Տեխնոլոգիայի այս մշակութաբանական մեկնաբանությունը թույլ է տալիս իրականության հետ համապատասխանեցնել նաև «մշակույթ» հասկացությունը, որը կարող է իրականում անչափ ավելի հարուստ բովանդակություն ունեցող երևույթներին ըստ նպատակահարմարության սահմանափակող մեկնաբանություն տալու վառ օրինակ ծառայել ուրիշներին: Ավելին, նման մեկնաբանությունը թույլ է տալիս պահանջվող խստություն հաղորդել տվյալ հասկացությանը՝ պայմաններ ստեղծելով այն կառավարչական կատեգորիա դարձնելու համար:

Մշակույթի լայն, համապարփակ (հասարակության շրջանակներում) բնույթը շատ լուրջ խոչընդոտ էր տվյալ երևույթի մասին բավականին խիստ մի ընդհանուր տեսություն ստեղծելու ճանապարհին ու նաև ստիպում էր այսպես թե այնպես սահմանափակել նրա ծավալն ու բովանդակությունը: Բայց մշակույթի այդ նույն հատկանիշը համապատասխան նախադրյալների դեպքում դառնում է մշակութաբանական տեսության բացառիկ մեծ ինտեգրացումային հետազոտական և կառավարչական հնարավորությունների աղբյուր:

Գործունեության այս կամ այն պրոցեսի օպտիմալացում նշանակում է տվյալ պայմաններում նրա իրագործման եղանակի կատարելագործում: Բայց եթե մշակույթը մարդկային գործունեության համապարփակ եղանակ (տեխնոլոգիա) է, ապա այդ գործունեության ցանկացած տեսակի կատարելագործումը հնարավոր է դառնում շնորհիվ այն փոփոխությունների, որոնք կատարվել են տվյալ երևույթի տարբեր օղակների վիճակներում: Իսկ քանի որ մշակույթը խիստ բարդ համակարգ է, որում այդ օղակները կառուցվածքային և գործառական առումով կապված են միմյանց, ապա էկոլոգիական և այլ կառավարչական ծրագրեր մշակելիս ու իրագործելիս մարդկային գործունեությունն օպտիմալացնելու և ջանքերը միավորելու խնդիրների համար այդ համակարգի իմացությունը չափազանց կարևոր է դառնում:

Այսպիսով, մշակույթի ամբողջական մեխանիզմի վրա ազդեցությունը, նրա զանազան օղակների համակարգային օպտիմալացումն ըստ էության նշանակում է ազդեցություն սոցիալական պրոցեսի վրա՝ այն պահանջվող ուղղություններով փոփո-

# ՎԱԼՅՈՒՏԱՅԻՆ ՀԱՄԱԿԱՐԳԻ ԿԱՅՈՒՆԱՑՄԱՆ ԱՊԱՐԴՅՈՒՆ ՃԻԳԵՐ

**Թ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ**

ԱՐԴԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ բնութագրվում է միջիմպերիալիստական հակասությունների նոր բռնկումներով: Ինչպես նշվեց կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված Քաղաքական զեկուցման մեջ, «Կապիտալիստական վերարտադրության պայմանների զգալի բարդացումը, ճգնաժամային պրոցեսների բազմազանությունը, միջազգային կոնկուրենցիայի սրվելը իմպերիալիստական մրցակցությանը հաղորդել են առանձնակի սրություն ու համառություն»:

Ձևայած արտադրության կապիտալիստական եղանակի արատների վերացմանն ուղղված բուրժուական կառավարությունների ու գաղափարախոսների բազում փորձերին, տնտեսական, վալյուտաֆինանսական և մյուս հակամարտ հակասություններն է՛լ ավելի են սրվում ու խորանում: Հսկայական չափով աճած արտադրողական ուժերի և կապիտալիստական արտադրահարաբերությունների միջև առկա կոնֆլիկտը նոր ծավալ է ստանում: Ուժեղանում է էկոնոմիկայի ներքին անկայունությունը, որն արտահայտվում է նրա աճի ընդհանուր տեմպերի դանդաղեցման, ցիկլային և կառուցվածքային ճգնաժամերի միահյուսման ու խորացման մեջ:

Կապիտալիստական ինտեգրացիան, ընթանալով տնտեսական և քաղաքական զարգացման անհամաչափության օրենքին խիստ համապատասխան, հանգեցնում է այն բանին, որ հաճախ մեկ առանձին երկրի կամ երկրների խմբի էկոնոմիկայի ներքին դժվարությունները վերաճում են միջիմպերիալիստական հակասությունների: Վերջիններս, իրենց հերթին, դրամավարկային և վալյուտային ճգնաժամերի առաջացման յուրահատուկ խթան են ծառայում: Մյուս կողմից, վալյուտավարկային հարաբերությունների ոլորտում գործերի անբարենպաստությունը բացասաբար է ազդում ներտնտեսական վիճակի, կապիտալիստական վերարտադրության բոլոր օղակների վրա:

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի զարգացմամբ վալյուտավարկային ոլորտը 70-ական թվականներին և 80-ական թվականների սկզբներին որոշակի էվոլյուցիա կրեց: Կապիտալիստական արտադրահարաբերությունների հաստատման սկզբնական փուլերում վալյուտային ճգնաժամերը հիմնականում սահմանափակվում էին առանձին երկրների կամ վալյուտային գոտիների շրջանակներում: Ներկայումս, տնտեսական կապերի հետագա ինտերնացիոնալացման և միջազգային տնտեսական հարաբերություններում արտաքին առևտրի դերի բարձրացման հետևանքով, առանձին վալյուտաների ճգնաժամային վիճակը գործնականորեն տարածվում է զարգացած կապիտալիստական մյուս երկրների ազգային դրամական միավորների վրա՝ ընդգրկելով կապիտալիզմի ողջ վալյուտային համակարգը:

Եթե նախկինում որևէ երկրի դրամական միավորի կուրսի կտրուկ անկումը տեղի էր ունենում տարերայնորեն և, որպես կանոն, ներտնտեսական հակասությունների, արտադրական անկումների, հումքային ու այլ ճգնաժամերի ազդեցության ներքո, ապա արդի պայմաններում կապիտալիստական պետությունը վալյուտային ինտերվենցիայի, վալյուտային սպեկուլյացիայի, ինչպես նաև «ճկուն» վալյուտային քաղաքականության օգնությամբ հասնում է ազգային կամ որևէ օտարերկրյա վալյուտայի կուրսի, այսպես կոչված, «արհեստական» բարձրացմանը կամ իջեցմանը: Այդ օպերացիաները տարբեր կերպ են ներգործում համաշխարհային գների վրա: Դրանց վերջնական նպատակը ազգային արտադրանքի մրցունակության բարձրացման համար բարենպաստ պայմաններ ստեղծելն է: Միաժամանակ այդ ամենը յուրատեսակ կատալիզատորի դեր է կատարում վալյուտավարկային ճգնաժամի խորացման գործում, որն իր հերթին գործող վալյուտային մեխանիզմի հարաբերությունների և արմատական վերակառուցման, պետական-մոնոպոլիստական կարգավորման համակարգի վերափոխման անհրաժեշտություն է առաջացրել:

Այդպիսի ռեֆորմի տարբերակների որոնումները բազմաթիվ նախագծեր են ծնել: Տարբեր ուղղությունների բուրժուական տնտեսագետները առաջ են քաշել վալյուտային մեխանիզմի վերակառուցման մի շարք նախագծեր, որոնց էությունն այն է, թե ինչը կարող է լինել միջազգային վալյուտային համակարգի հիմքը՝ ոսկի՞ն, թե՞ վալյուտավարկային միջոցները:

Բուրժուական տնտեսագետները, որոնք որպես միջազգային հաշվարկների գլխավոր միջոց ընդունում են ոսկու առաջնակարգ դերը ժամանակակից վալյուտային համակարգում, առաջարկել են սահմանափակել համաշխարհային վալյուտավարկային մեխանիզմը: Այդ տեսակետի համաձայն, «կարևոր» վալյուտաների վրա հիմնըված ոսկու դևիզային ստանդարտի համակարգը ուժեղացնում է այն ուժերի գործողությունը, որոնք ժամանակին հանգեցրին 1929—1933 թթ. համաշխարհային տնտեսական ճգնաժամին: Այնուհետև նրանք հաստատել են, որ վալյուտային համակարգն այնքան անկայուն է, որ միջպետական հարաբերություններում տնտեսական և ֆինանսական ցանկացած բարդացում ստանում է համաշխարհային բնույթ:

Գտնելով, որ միայն ոսկու նախկին դերի վերականգնումը կարող է կապիտալիստական աշխարհը փրկել վալյուտային աղետից և կապիտալի երկրների միջև հաստատել նորմալ վալյուտաֆինանսական հարաբերություններ, նրանցից ոմանք կարծում էին, թե բավական է, որ հիմնական վալյուտային պաշարներ ունեցող տասը խոշոր երկրներ պայմանավորվեն «անթույլատրելի» վալյուտային օպերացիաներն արգելելու մասին, և վալյուտաների կայունությունը կապահովվի:

Ոսկու նախկին դերի անկումը կապիտալիստական էկոնոմիկայի հակասությունների սրումից առաջացած օբյեկտիվ պրոցես է: Ազնիվ մետաղը միջազգային շըրջանառությունից դուրս է մղվել ոչ թե ԱՄՆ-ի ֆինանսական շրջանների ցանկությամբ, այլ այդ երկրի էկոնոմիկայում հակամարտությունները սրվելու հետևանքով և թղթադրամ դոլարի հետագա փոխանակումը ոսկով գործնականում դարձել է անհնարին:

Ըստ բուրժուական տնտեսագետների դեղատոմսերի, որպեսզի գործող վալյուտային մեխանիզմը դրվի հաստատուն հիմքի վրա, անհրաժեշտ է վերականգնել ԱՄՆ-ի, Ճապոնիայի և Արևմտյան Եվրոպայի «ոսկյա բազան», այլ կերպ ասած՝ այդ վալյուտաների փոխանակումը ոսկով: Բայց անգամ այդ դեպքում գերակշռությունը կլինի միայն մի քանի արդյունաբերապես զարգացած կապիտալիստական երկրների կողմում:

Ուռճացնելով «կազմակերպված կապիտալիզմի» հնարավորությունները՝ բուրժուական տնտեսագետներն առաջարկում են ոսկու մասին միջազգային կոնվենցիա կնքել, որի համաձայն մասնակից պետությունները կարող են ոսկի գնել և վաճառել անմիջականորեն կամ դոլարի միջոցով: Դժվար չէ համոզվել, որ նման առաջարկը զուրկ է հիմքից. Ցամայկայի 1976 թ. համաձայնագրով վերացվել է ոսկու պաշտոնական գինը: Սակայն մինչ այդ ակտն էլ ակնհայտ էր, որ «միջազգային շրջանառության մեջ ոսկու գների ամեն մի արհեստական կարգավորում անխուսափելիորեն վերածվում է արժեքի օրենքի նկատմամբ բռնության և հանգեցնում երբեմն քողարկված, բայց իրեն մշտապես զգացնել տվող վալյուտային ճգնաժամի երևույթների» (Стадниченко А. И. Валютный кризис на Западе. М., 1970, с. 226).

Ժամանակակից պետական մոնոպոլիստական կապիտալիզմի օրոք ոսկու ստանդարտին վերադառնալու մասին գաղափարն անգամ ռեալ չէ, քանի որ համաշխարհային կապիտալիստական էկոնոմիկայում ինտեգրացիոն պրոցեսների զար-

գացման արդի մակարդակի, արտադրության ինտերնացիոնալացման և երկրների միջև առկա տնտեսական փոխանակության վիթխարի անհավասարակշռության պայմաններում ոսկու պաշարները չեն կարող բավարարել վճարումների միջազգային միջոց լինելու պահանջները:

Քեյնսական ուղղության կողմնակիցները վալյուտավարկային համակարգի ճգնաժամի սրման հիմնական պատճառը տեսնում էին այն բանում, որ նրա դրամաթղթային բաղադրամասի դեր են կատարում առանձին երկրների ազգային դրամական միավորները, որոնք ենթարկված են ներտնտեսական հակասությունների ներգործությանը: Նրանք նախատեսել էին ազգային ռեզերվային վալյուտաները փոխարինել ինտերնացիոնալ դրամական միավորով, որը հանգեցնում է ոսկու դերի սահմանափակմանը և միջազգային շրջանառության մեջ նրա օգտագործման հետագա կրճատմանը: Այսպիսով, նրանց կարծիքով, կապիտալիզմի աշխարհը կընտանա միջազգային վճարման միջոցների հաստատուն ու վերահսկվող համալրման հուսալի աղբյուր, որն էլ, իբր, կկայունացնի արդի կապիտալիզմի վալյուտավարկային համակարգը:

Առաջարկվում էր նաև կապիտալիստական երկրների վալյուտային ռեզերվների միավորում՝ Միջազգային վալյուտային ֆոնդի հովանու ներքո: Հետագա տարիներին նախատեսվում էր բոլոր ռեզերվները հանձնել ֆոնդի անդամ երկրների օտարերկրյա վալյուտային՝ ի փոխանակումն նրա ավանդատվական պարտավորությունների, որոնք պետք է օգտագործվեն հաշվարկումներով և նրա վարկային ռեսուրսների աղբյուր հանդիսանան:

Այս պլանը ևս տնտեսագետների մեծ մասն անիրական համարեց:

Երևան են եկել նաև ռեֆորմի այլ նախագծեր, որոնք մի քանի երկրների համար նվազ արդյունավետ են (ինչպես օրինակ, Ֆ. Միտերանի պլանը անշահավետ է ԱՄՆ-ի համար) և այդ պատճառով չեն կարող միջազգային վալյուտային համակարգում արմատական բարեփոխումների հանգեցնել: Ֆրանսիայի պրեզիդենտն առաջարկել է կապիտալիզմի վալյուտային համակարգը կառուցել ոչ թե սոսկ դոլարի վրա, այլ վալյուտաների երրորդության՝ ԱՄՆ-ի դոլարի, էքյուի և ճապոնական իենի վրա:

Վալյուտավարկային ոլորտում մղվող պայքարն այսօր կրում է ոչ պակաս, իսկ երբեմն էլ առավել սուր բնույթ, քան ապրանքային շուկաներում: Վալյուտային ցնցումների հետևանքները ներգործում են կապիտալիստական երկրների արտաքին տնտեսական դիրքերի, զբաղվածության մակարդակի, տնտեսական պրոցեսների վրա:

70-ական թվականների սկիզբը համընկավ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ամերիկյան դոլարի առաջնության վրա ստեղծված Բրետտոն—Վուդի միջազգային վալյուտային հարաբերությունների համակարգի փլուզման հետ: Այդ համակարգի էվոլյուցիան և քայքայումը հանդիսացան ետպատերազմյան շրջանում կապիտալիզմի անհամաչափ զարգացման ու նրա՝ մրցակցության հիմնական կենտրոնների կազմավորման արտացոլումը:

Գործող մեխանիզմի վերակառուցման համար մղվող պայքարում ամերիկյան ստրատեգիայի կարևորագույն նպատակը դարձավ վալյուտային համակարգի վերափոխումն այնպիսի սկզբունքների հիման վրա, որոնք կպահպանեին դոլարի գերիշխող դիրքը և բարենպաստ պայմաններ կապահովեին ապրանքի ու կապիտալի շուկաներում ԱՄՆ-ի էքսպանսիայի համար: Սակայն չունենալով իր նպատակին հասնելու իրական հիմք՝ այդպիսի ստրատեգիան վալյուտավարկային համակարգում ստեղծել է քաոսային կացություն, հանգեցրել դրամական շրջանառության օրենքի ու արժեքի օրենքի խախտմանը, կապիտալիստական վալյուտաների ճգնաժամի և բազմաթիվ դևալվացիաների: Ստեղծված վիճակի կարգավորման համար միջազգային ֆինանսական շրջանների ձեռնարկած միջոցներն անարդյունավետ գտնվեցին. ճգնաժամը շարունակվում է: Դրա պատճառն այն է, որ ժամանակակից վալյուտային քաոսի հիմքում ընկած է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը:

ՍՄԿԿ XXVII համագումարի Քաղաքական զեկուցման մեջ նշվեց, որ «ընդհանուր ճգնաժամի ներկա փուլը ևս իր հետ կապիտալիզմի բացարձակ լճացում չի բերում, չի բացառում նրա էկոնոմիկայի աճի, գիտատեխնիկական նոր ուղղությունների յուրացման հնարավորությունները: Այն «թույլ է տալիս» կոնկրետ տնտեսական,



ռազմական, քաղաքական, այլ դիրքերի պահպանում, իսկ ինչ-որ տեղամասերում՝ նույնիսկ սոցիալական ռևանշի, նախկինում կորցրածը վերադարձնելու հնարավորություն: Բայց կապիտալիզմը, չունենալով աշխատավոր մասսաների շահերն արտահայտող պոզիտիվ նպատակներ ու կողմնորոշիչներ, ներկայումս բախվում է իր հակասությունների բոլոր խմբերի աննախադեպ միահյուսման, փոխադարձ ուժեղացման հետ: Սոցիալական և այլ կարգի փակուղիների այնպիսի քանակի հետ, ինչպիսին նա չի իմացել իր զարգացման բոլոր դարերի ընթացքում:

Սրվում են նախ և առաջ **աշխատանքի և կապիտալի** հակասությունները» (**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի Քաղաքական զեկուցումը,** էջ 21):

Հսկայական չափով աճած արտադրողական ուժերը, արտադրության և տեխնիկայի մեջ մշտապես տեղի ունեցող հեղաշրջումները չեն տեղավորվում բաշխման և հասարակական արտադրության արդյունքների յուրացման մասնավոր կապիտալիստական պատյանի մեջ:

Արտադրության կարգավորման իրենց փորձերում խոշոր ֆինանսական մոնոպոլիաներն ստեղծել են բազմաթիվ ֆինանսատնտեսական կազմակերպություններ, բայց այդպես էլ չեն կարողացել հասնել իրենց նեղ շահադիտական նպատակներին: Մրցակցային պայքարը խոշոր մոնոպոլիաների միջև չի թուլացել և ընդունել է ամենատարբեր ձևեր:

Ներկայումս նրանք անզուսպ կերպով ավելացնում են ռազմական ծախսերը, որոնք լուրջ հարված են ոչ միայն վալյուտավարկային համակարգին, այլև կապիտալիզմի ողջ էկոնոմիկային, որն «ապրում է բազմակողմանի հետագա դեգրադացիա: Այդ դեգրադացիան ուժեղանում է ռազմական նպատակներին հատկացվող միլիարդների հետևանքով»,— ՍՄԿԿ XXVII համագումարում իր ելույթում նշեց ԱՄՆ-ի կոմկուսի գլխավոր քարտուղար Գես Հոլը:

Առկա է այն կարծիքը, որ ժամանակակից վալյուտային ճգնաժամի պատճառները թաքնված են այդ համակարգի մեխանիզմի ու համաշխարհային ապրանքաշրջանառության պահանջների, վճարումների և հաշվարկային անհամապատասխանության մեջ, որի պատճառով էլ տվյալ համակարգի վերակառուցման նոր ուղիներ են որոնվում:

Բայց ինչո՞ւ: Այժմ, միջազգային հաշվարկներում ոսկին դուրս մղելուց հետո, վալյուտային համակարգը դադարել է համապատասխանել համաշխարհային առևտրի ու ապրանքաշրջանառության պահանջներին: Դրա պատճառը թաքնված է այն բանում, որ ցանկացած վալյուտային մեխանիզմ պետք է հենվի իրական արժեքային հիմքի վրա: Դոլարը ոսկով փոխարինելը ապահովվում էր ԱՄՆ-ի տնտեսական հզորությամբ: Քանի դեռ ԱՄՆ-ի էկոնոմիկան կայուն էր, մյուս երկրները, Բրետտոն—Վուդի համակարգի համաձայն, չէին առարկում հաշիվները վարել և վճարումները կատարել դոլարներով: Դեռ ավելին, նրանք ձգտում էին հայթայթել ավելի շատ դոլարներ և դրանցով ձեռք բերել այն ամենը, ինչ իրենց հարկավոր է: ԱՄՆ-ի էկոնոմիկան թույլ էր տալիս պահպանել ոսկու շուկայական գինը: Առանձին տարիներ ոսկու շուկայական գինը հավասարվել է պաշտոնական գնին և անգամ դրանից էլ ցածր է եղել: Մինչև 1971 թվականը ոսկու շուկայական գնի շեղումը պաշտոնական գնից չէր անցնում 20 տոկոսից: Բայց հենց որ ամերիկյան էկոնոմիկան սկսեց ճեղքվածք տալ, և ԱՄՆ-ը հարկադրված եղավ դադարեցնել դոլարը ոսկով փոխանակելը, այդ դրամական միավորի նկատմամբ վստահությունը նվազեց, և վերադարձը դեպի դոլարի ոսկյա հիմքը դարձավ անհնարին:

Այս պայմաններում ԱՄՆ-ի ֆինանսական շրջանների քաղաքականության ստրատեգիական ուղղությունը դարձավ ազնիվ մետաղի դերի սահմանափակման, վերջին հաշվով, նաև այն դրամական ոլորտից դուրս մղելու կուրսը: Դրանով իսկ է՛լ ավելի է սրվում երեք կենտրոնների պայքարը ոսկու և նրա դերի հարցի շուրջը:

Բրետտոն—Վուդի համաձայնագրի դրույթներին համապատասխան՝ ոսկու գինը պաշտոնապես իջեցնելու՝ հաստատուն կերպով արձանագրված բուն սկզբունքը նշանակում էր նրա դերի սահմանափակմանն ուղղված որոշակի քայլ:

Այդ ստրատեգիայի կարևորագույն դրդապատճառն էր դոլարի դերը որպես կապիտալիստական աշխարհի հիմնական միջազգային վճարումների միջոց պահպանելու և ընդլայնելու ձգտումը: Նման վիճակը թույլ էր տալիս ԱՄՆ-ի վճարման

հաշվեկշռի դեֆիցիտը ֆինանսավորել ամերիկյան ազգային վալյուտան այլ երկրների վզին փաթաթելու ճանապարհով և միջազգային ռեզերվներում բարձրացնել դոլարի տեսակարար կշիռը: Հենց այդ պատճառով ոսկու անփոփոխ գնին աջակցելու քաղաքականությունը ԱՄՆ-ի կառավարող շրջանների կողմից իրականացվում էր ընդհուպ մինչև 1971 թվականի դեկտեմբերը: Նույնիսկ հարկադրված լինելով կատարել երկու դևալվացիա՝ 1971 և 1973 թվականներին, ԱՄՆ-ը ոսկու պաշտոնական գնի սոսկ սիմվոլիկ բարձրացում իրականացրեց, որը նվազագույն չափով անգամ չէր համապատասխանում նրա գնի իրական փոփոխություններին:

Ոսկու «ռեաբիլիտացիան» ցանկացած գնով թույլ չտալու ԱՄՆ-ի ձգտումը բազմիմաստ ռեակցիա առաջացրեց իր պարտնյորների շրջանում և դարձավ բարդ հակասությունների ու փոխզիջումների օբյեկտ: Ոսկու դերի հարցում ԱՄՆ-ի առավել վճռական ընդդիմախոսը Ֆրանսիան էր, որը դեռևս 60-ական թվականների կեսին առաջարկեց որպես Արևմուտքի վալյուտային համակարգի հիմք պահպանել ոսկին: Հարկ է նշել, որ «կոլեկտիվ ռեզերվային վալյուտա» ստեղծելու գաղափարի նկատմամբ Ֆրանսիայի մոտեցումը ելնում էր ոսկու հավելում ստեղծելու անհրաժեշտությունից:

1968 թվականի մարտին «ոսկու պուլի» ցրման հետևանքով սահմանվեց նրա երկաստիճան գին՝ պաշտոնական և մասնավոր շուկայի: Ընդ որում նախատեսվում էր կենտրոնական բանկերի՝ ոսկով օպերացիաների դադարեցում մասնավոր շուկաներում՝ նպատակ ունենալով խոչընդոտել ոսկու հոսքը պետական ռեզերվներից:

Վաշինգտոնի ճնշման ներքո ընդունվեց մի որոշում, որը պարտավորեցնում էր ոսկով կատարվող բոլոր միջպետական օպերացիաներն իրականացնել նրա այն ժամանակվա պաշտոնական գնի հիման վրա:

ԱՄՆ-ի և նրա պարտնյորների միջև ոսկու առիթով տարաձայնությունները սկսեցին հատկապես սուր բնույթ կրել, երբ քննարկվում էր ազատ շուկայում օպերացիաներ կատարելու հարցը: Ամերիկյան կողմը պնդել է, որ պաշտոնական մարմինները կարող են ազատ շուկաներում միայն ոսկի վաճառել, բայց ոչ հայթայթել: Դրանով իսկ ամերիկյան ֆինանսական շրջանները մտադիր էին արագացնել ոսկու ապադրամայնացումը և այն սովորական ապրանքի վերածելը (Борисов С. М., Золото в экономике современного капитализма. М., 1984, с. 318—372):

Արևմտաեվրոպական երկրները, հատկապես Ֆրանսիան, հանդես եկան միայն ոսկու վաճառքի հարցում կենտրոնական բանկերի իրավունքները սահմանափակելու դեմ:

1976 թվականի հունվարին Միջազգային վալյուտային ֆոնդի նստաշրջանը որոշում ընդունեց՝ կենտրոնական բանկերին թույլատրել ազատ շուկաներում ոսկի գնել: Այսպիսով, թեպետ ԱՄՆ-ին հաջողվեց դեղին մետաղի գնի պաշտոնական վերացման ուղիով հասնել ձևական ապադրամայնացման, այնուամենայնիվ, Յամայկայի խորհրդակցության որոշումներում առկա էին նաև որոշակի զիջումներ նրա կողմից:

Ներկա պայմաններում ազատ շուկաներում ոսկի գնելու իրավունքը մի շարք երկրների կենտրոնական բանկերի համար նշանակում է իր վալյուտային ռեզերվների մի մասը վերածել ոսկու: Բացի այդ, կենտրոնական բանկերի ոսկու պաշարները՝ շուկայական գնի հիման վրա վերահաշված, զգալիորեն աճել են: Այս հանգամանքը հատկապես բարենպաստ ազդեցություն է ունեցել մի շարք արևմտաեվրոպական երկրների, առաջին հերթին ԳՖՀ-ի և Ֆրանսիայի, ոսկու վալյուտային ռեզերվների վրա: Կարելի է ասել, որ «Յամայկայի փոխզիջումը» պայքարի սոսկ նոր փուլ բացեց վալյուտային ստրատեգիայի զանազան ուղղությունների միջև: Եթե ԱՄՆ-ը, հենվելով այդ որոշումների վրա, միջազգային հաշվարկների ոլորտից ոսկին վերջնականապես դուրս մղելու կուրս վարի, ապա Ֆրանսիան և, բացառված չէ, մի քանի այլ կապիտալիստական երկրներ, կարող են ոսկին օգտագործել որպես միջազգային ռեզերվային և վճարման իրական միջոց:

Կարևոր է նշել, որ հռչակելով ոսկու ապադրամայնացում, Յամայկայի նստաշրջանի մասնակիցները շոշափելի քայլ չկատարեցին փոխառնելու հատուկ իրավունքների բազայի վրա միջազգային նոր ռեզերվային միջոցներ ստեղծելու ուղղու-



թյամբ: Դա, ըստ էության, նշանակում է, որ վալյուտային միջազգային ռեզերվների համակարգի ոչ մի վերակառուցում չի կատարվել: Դրանց գլխավոր բաղադրամասը առաջվա պես մնում է ամերիկյան դոլարը, որին հակազդելը մնում է Արևմտյան Եվրոպայի երկրների և Ճապոնիայի վալյուտային ստրատեգիայի կարևորագույն խնդիրներից մեկը: Ըստ երևույթին, որպես հակազդման միջոց կմնան ԱՄՆ-ի պարտնյոր-պետությունների ոսկու կենտրոնացված պաշարները:

Իմպերիալիստական «եռանկյունու» կենտրոնների միջև վալյուտային համակարգի վերակառուցման համար մղվող պայքարի հաջորդ կարևոր օբյեկտ է դարձել վալյուտային կուրսերի և դրանց կարգավորման մեխանիզմի պրոբլեմը: Չէ որ «վալյուտան յուրատեսակ նյարդային հանգույց է, որտեղ միավորվում են իմպերիալիստական պետությունների ներտնտեսական, ֆինանսական, դրամավարկային, արտաքին առևտրական և ռազմական քաղաքականության թելերը» (Суровцев В. И., Международная валютная ликвидность: проблемы и противоречия. М., 1983, с. 22—23):

Վալյուտային կուրսերի տատանման պրակտիկան, ազատ լինելով նախկին համակարգի մի շարք թերություններից, իր հերթին ունի խոցելի կողմեր: Վալյուտային կուրսերի անկայունությունը բացասաբար է անդրադառնում արտաքին առևտրի վիճակի, հատկապես երկարաժամկետ գործարքների կնքման վրա (Фаминский И. П., Современная международная торговля. М., 1981): Խորացող տնտեսական անկման պայմաններում այդ պարագան նպաստել է արտադրության և զբաղվածության հետագա կրճատմանը՝ հատկապես արտահանման գծով աշխատող ճյուղերում:

Վերջին ժամանակներս Արևմուտքում լայնորեն տարածված է «երեք լոկոմոտիվների» տեսությունը, որի համաձայն ԱՄՆ-ում, ԳՖՀ-ում և Ճապոնիայում տնտեսական աճի արագացումը դիտվում է որպես մյուս երկրներում լճացման երևույթների հաղթահարման պայման: Իրականում «լողացող» կուրսի պայմաններում նման փոխադարձ խթանման արդյունքը խիստ նվազում է: Բանն այն է, որ եթե անգամ ԳՖՀ-ն և Ճապոնիան զգալիորեն ընդլայնում են ներմուծումը, այլ երկրների արտահանողների ձեռքում արևմտագերմանական մարկի կամ ճապոնական իենի հարաճուն զանգվածը չի նշանակում իրենց երկրներում դրամական զանգվածի համապատասխան ավելացում, ինչպես նաև ներքին պահանջարկի ընդլայնում:

Ներմուծվող երկրների վալյուտային քանակն աճելու համեմատ արտասահմանում համապատասխանաբար պետք է նվազի նրա շուկայական կուրսը, որը հանգեցնում է այդ երկրների արտահանվող ապրանքների մրցունակության բարձրացմանը և սրում մրցակցությունը ապրանքային շուկաներում: Այդ երևույթը, վերջին հաշվով, հանգեցրել է այն բանին, որ տնտեսական զարգացման անհամաչափության օրենքի դրսևորման պատճառով ԱՄՆ-ը կորցրել է իր մենաշնորհային վիճակը կապիտալիստական աշխարհում:

80-ական թվականների սկզբին կապիտալիստական վալյուտավարկային համակարգի ռեֆորմի պրոբլեմը ձեռք է բերել առանձնահատուկ հրատապություն: Երևան են եկել նոր առաջարկություններ ու նախագծեր, որոնք համալրել են կապիտալիստական էկոնոմիկայի պետական-մոնոպոլիստական կարգավորման «զինանոցը»: Դա վերստին հաստատում է այն միտքը, որ «փորձելով հարմարվել փոփոխված իրադրությանը, մոնոպոլիստական բուրժուազիան մշտապես խուսավարում է» **(ՍՄԿԿ ծրագիր)**: Սակայն բոլոր այդ մանևրները տալիս են կարճատև ու մակերեսային արդյունք և չեն շոշափում կապիտալիստական վերարտադրության հիմքերը:

Հանդես գալով վալյուտային կուրսերի չափից ավելի տատանումների կանխման օգտին, Ֆրանսիան առաջարկել է ստեղծել, այսպես կոչված, «նպատակային գոտիներ» (կողմնորոշված դեպի ԱՄՆ-ի դոլարը, ճապոնական իենը և էքյուն), որտեղ նպատակահարմար է համարվում վալյուտաների կուրսերի տատանումների դիապազոնի կոնկրետ սահմանումը:

Արդյունաբերական յոթ առաջատար կապիտալիստական երկրների ղեկավարների՝ Ուիլյամսբերգի (1983 թ.) խորհրդակցությունում Ֆրանսիայի եռանդուն գործողությունների շնորհիվ ընդունվեց որոշում՝ միջազգային վալյուտային համակարգի գործունեությունը՝ բարելավելու հնարավորությունն ուսումնասիրելու վերաբերյալ:

Խորհրդակցության մասնակիցներն իրենց երկրների ֆինանսների մինիստրներին հանձնարարեցին սահմանել միջազգային վալյուտային համակարգի կատարելագործման պայմանները և պարզել, թե ինչ դեր է կատարում այդ գործում բարձր մակարդակի միջազգային վալյուտային կոնֆերանսը: Այս հանձնարարականին համապատասխան, 1983 թվականի աշնանը որոշում ընդունվեց հարցի ուսումնասիրման շրջանակներում կատարել հետազոտություններ այնպիսի ասպեկտների շուրջ, ինչպիսիք են վալյուտային կուրսերի կտրուկ տատանումների պատճառներն ու հետևանքները, անդամ-երկրների կողմից իրականացվող տնտեսական և վալյուտաֆինանսական քաղաքականությունը վերահսկելու ասպարեզում Միջազգային վալյուտային ֆոնդի դերի ուժեղացումը և այլն:

Կյանքը հերքել է Արևմուտքի կառավարող շրջանների այն պնդումը, թե իբր «լողացող» կուրսեր մտցնելը բացասական հետևանքներ չի ունեցել միջազգային առևտրի զարգացման և կապիտալի արտահանման համար, իսկ վալյուտային կուրսերի կայունացումը կապահովվի զարգացած իմպերիալիստական տերությունների տնտեսական ու ֆինանսական քաղաքականության կոորդինացման ճանապարհով: «Բայց ժամանակակից իմպերիալիզմի երեք կենտրոններն ինչպե՞ս հավաքել մի տանիքի տակ,— նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարի Քաղաքական զեկուցման մեջ,— եթե հենց իրենք՝ ամերիկացիները, ձեռնածություն անելով դոլարով ու տոկոսադրույքներով, դեմ չեն իրենց էկոնոմիկան սնելու Արևմտյան Եվրոպայի և Ճապոնիայի հաշվին»:

Միաժամանակ ԱՄՆ-ի պարտնյորները, դիմելով գիտատեխնիկական առաջադիմության արագացման զանազան ձևերի և մեթոդների, մի դեպքում կրճատում են իրենց ազգային էկոնոմիկաների և ԱՄՆ-ի տնտեսական աճի տեմպերի միջև առկա խզումը, իսկ մյուս դեպքում նաև գերազանցում ԱՄՆ-ի էկոնոմիկան կարևոր շատ ցուցանիշներով:

Սակայն այդ ամենը չի կարող հանգեցնել վալյուտային հակասությունների հարթեցման և տվյալ պրոբլեմի փոխշահավետ լուծման, քանի որ տարեցտարի է՛լ ավելի է խորանում կապիտալիստական պետությունների էկոնոմիկաների անկայունությունը, սրվում դրանց զարգացման անհամաչափությունը և անչափ դժվարանում է ոսկուն՝ որպես վալյուտային կուրսերի սահմանման արժեքային հիմքի, որևէ համարժեք գտնելը:

Այսպիսով, արդի կապիտալիզմի ոչ մի վերափոխում և խուսավարում չեն վերացնում և չեն կարող վերացնել նրա զարգացման օրենքները, չեն կարող վերացնել աշխատանքի ու կապիտալի, մոնոպոլիաների և հասարակության սուր հակամարտությունը:

Հետևաբար և ոչ մի ռեֆորմ չի կարող կանխել արտադրության կապիտալիստական եղանակի անհաշտելի հակասությունների ծնունդ հանդիսացող վալյուտավարկային համակարգի խրոնիկական ճգնաժամերը:

---

## Հոգևոր բարեկամության կապեր

# ՐԱՖՖԻՆ ԵՎ ՌՈՒՍԱՍՏԱՆԸ

**Հրանուշ ԴԱՐԲԻՆՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների թեկնածու**

ՐԱՖՖՈՒ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ, ինչպես և XIX դարի երկրորդ կեսի հայ գրականության, զարգացման ընթացքն ու բովանդակությունը մեծապես պայմանավորվեցին Ռուսաստանում սկիզբ առած ազատագրական շարժումներով, որոնք դարավերջին հանգեցրին որոշակի հեղափոխական իրադրության:

Ռուսական առաջավոր մտքի կենտրոններից հեղափոխական-դեմոկրատական գաղափարների ներթափանցումները ազգային ծայրամասերի հասարակական մտքի ոլորտները բուռն խմորումներ էին առաջացնում այնտեղ, ի վերջո հանգեցնելով Ռուսաստանի բոլոր ժողովուրդների առաջադիմական ուժերի համախմբմանը միասնական նպատակների շուրջը:

Սոցիալական և ազգային չարիքի դեմ մղվող պայքարի ասպարեզը այն բարեբեր հողն էր, որտեղ առաջավոր Ռուսաստանի զավակները, հանդիպելով ճնշվող ազգային փոքրամասնությունների ընբոստ ազատամարտիկների հետ, լիակատար փոխըմբռնում էին գտնում՝ սատարելով միմյանց, հզորանալով իրարով: Հակացարական տրամադրությունները, հասունանալով ու ծավալվելով, ինքնակալության կործանման լուրջ սպառնալիք էին դառնում, ամուր հիմքեր ստեղծում մեր երկրի բոլոր ժողովուրդների համախմբման ու եղբայրական բարեկամության համար: Այդ հանգամանքն արտացոլվում էր ո՛չ միայն հասարակական մտքի, այլև հոգևոր մշակույթի մեջ: Դրանով պիտի բացատրել ինչպես ռուսական, այնպես էլ ազգային գրականություններում բացահայտորեն արտացոլված հակացարական տրամադրությունները, միապետության կառավարման ապարատի, նրա արտաքին ու ներքին քաղաքականության սուր քննադատությունը:

Հայ գրականության մեջ ռուսական թեման զարգանում է միանգամայն հակադիր երկու ասպեկտներով: Մի կողմից՝ ցարական կարգերի ու ցարական չինովնիկության ուժեղ քննադատություն, մյուս կողմից, ի հակակշիռ այդ ըմբոստ բողոքի, բարեկամական ջերմ զգացմունքների դրըսևորումներ առաջադիմական Ռուսաստանի ու նրա աշխատավոր զավակների նըկատմամբ: Դրանք ըստ էության նույն երևույթի տարբեր կողմերն են, որոնք ամբողջանում են՝ ստեղծելով հայ և ռուս ժողովուրդների բարեկամության ու ազատագրական պայքարի համերաշխության անկեղծ մթնոլորտ: Պատահական չէ, որ հայ գրականության մեջ ազգային-ազատագրական շարժման գաղափարախոսության գեղարվեստական դրսևորումները սերտորեն առնչվում են ժողովուրդների բարեկամության, հատկապես առաջավոր Ռուսաստանից ներթափանցող հեղափոխական դեմոկրատական գաղափարների լիակատար ըմբռնման ու քաջալերման հետ:

«...Ազատությունը տրվում է այն ազգերին,— գրում է Րաֆֆին,— որոնք իրենց ազատությունը սրով պաշտպանել գիտեն: Առանց արյունի ազատություն չկա, որպես առանց զոհերի փրկություն» (Րաֆֆի, **Երկերի ժողովածու,** տասը հատորով, Հայպետհրատ, 1964, հ. 9, էջ 268): Դժվար չէ նկատել այն ուղղակի կապը, որ գոյություն ունի Րաֆֆու այս մտքի և ռուս հեղափոխական-դեմոկրատների՝ ազատության խնդիրը «կացնով վճռելու» արմատական հարցադրման միջև:

Րաֆֆին կյանքի դժվարին , ոլորապտույտ ճանապարհներով հասավ ռուս

հեղափոխական դեմոկրատների քարոզած այդ մեծ ճշմարտությանը: Մանկուց նա ականատես էր եղել բռնագաղթված իր հայրենակիցների նկատմամբ պարսից տիրակալների անօրինակ դաժանություններին, և մանուկ հոգում ցավը խիտ նստվածքներ էր տվել: Ծննդավայրի պատկերները հետագայում տեղի են տալիս նորանոր տըպավորությունների, ավելի ու ավելի ամբողջացնում իր ժողովրդի ողբերգական ճակատագրի ցավագին ընկալումները, որոնք և հետագայում կայուն հիմք են դառնում նրա դեմոկրատական աշխարհայացքի ձևավորման համար:

Ռուս և եվրոպական գրականության ազդեցությամբ ձևավորվեց Րաֆֆու գրական ճաշակը, մշակվեց հասարակական ակտիվ դիրքորոշում: Նա գործուն մասնակցություն էր ցուցաբերում գիմնազիայի (Թիֆլիս) ազատախոհ երիտասարդության կազմակերպած գաղտնի խմբակների աշխատանքներին: Այստեղ արդեն ստեղծվում են այն բոլոր բարենպաստ հանգամանքները, որոնք իր հայրենիքի, իր ժողովրդի բախտով մտահոգված երիտասարդին հետագայում պիտի տանեին դեպի առաջադիմական, հեղափոխական գաղափարներով տոգորված Ռուսաստանն ու նրա ազատագրական պայքարի գաղափարախոսները, որոնք ցարիզմի դեմ զինված պայքարի կոչ էին հնչեցնում, առաջադրում Ռուսաստանում բնակվող բոլոր ազգերի ու ազգությունների եղբայրական դաշինք ու համագործակցություն՝ ցարիզմի դեմ հաղթանակ տանելու համար:

Հայրենիքի հին ու նոր հիշատակներին հաղորդակցվելու ծարավը, բաժան-բաժան արված իր ժողովրդի կյանքը, կենցաղն ու բարքերը ուսումնասիրելու կենսական պահանջը Րաֆֆուն մղում են ուղևորություններ կատարելու պատմական Հայաստանի, ինչպես և Պարսկաստանի հայաշատ գավառներում: Այս ուղևորությունների ընթացքում գրողն իր համար հայտնագործեց մի շատ կարևոր ճշմարտություն. բռնապետական կարգերի պայմաններում դառնորեն հեծում են ո՛չ միայն հայ, այլև պարսիկ աշխատավորները. այս պարագան հարազատացնում, մտերմացնում է կողք-կողքի ապրող այլակրոն ու այլազգի այս տառապած մարդկանց, նրանց համախմբում իրար օգնելու, անհրաժեշտության դեպքում միմյանց սատարելու ցանկությամբ, որը և վեր է ածվում սովորույթի: Գրողի դիպուկ աչքից չի վրիպում նաև գայլային օրենքներով ապրող հայ և այլազգի մեծահարուստների բարեկամությունը: Մերկացնելով շահի ու եսամոլության այդ նողկալի աշխարհը՝ մարդկային բարոյական սկզբունքների այս իրարամերժ տարբերքից էլ նա հետագայում առանձնացնում է իր ստեղծագործությունների գրական նախատիպերը:

1858 թվականին նա կարդում է Խ. Աբովյանի **Վերքը:** Սրտի արյունով գրված այս գիրքը փոթորկել էր երիտասարդ հայրենասերի հոգին, նրա հայացքի դեմ պարզել մի նոր Հայաստան աշխարհ: Մեր ժողովրդի հարատևությունը փառաբանող այս ոգեշունչ հիմնում, որտեղ սկզբից մինչև վերջ անցնում է հայ և ռուս ժողովուրդների բարեկամության թեման, Րաֆֆին գտել էր իրեն հուզող ամենակարևոր հարցերի պատասխանը հայրենիքի ներկայի ու ապագայի մասին: Բայց այդ պատրաստի պատասխանները նա դեռ պիտի անցկացներ իր սեփական կենսափորձի միջով, իմաստավորեր իր ժողովրդի կյանքի վերջին տասնամյակների իրողություններով:

Անմիջական տպավորություններն ու անձնական դիտարկումները երիտասարդ գրողի համար դառնում են այն հիմնաքարերը, որոնք անհրաժեշտաբար լրացնում են Աբովյանի **Վերքի** միջոցով սեփական քաղաքական ճշմարիտ կողմնորոշումը: Նրա աշխարհայացքի ձևավորման վրա իր ուժեղ կնիքը դրեց նաև ազատագրական գաղափարներով տոգորված հայ հասարակական կյանքի ընդհանուր մթնոլորտը, որտեղ ուղղակի կամ անուղղակի զգացվում էր ռուս վաթսունականների հեղափոխական գաղափարների առկայությունը:

Րաֆֆին կարդացել, ուսումնասիրել էր Բելինսկու, Դոբրոլյուբովի ստեղծագործությունները և բարձր էր գնահատում նրանց քննադատական հանճարը: Արդեն համազգային ճանաչման հասած գրողը դա անում էր ո՛չ միայն խոսքով, այլև իր գրական ստեղծագործությամբ, գրականության ըսկզբունքային հարցերին վերաբերող բանավեճերում: Գրականության մեջ իր քաղաքացիական դիրքորոշումն ու գեղագիտական իդեալները հաստատելու համար նա վկայակոչում էր ռուս մեծ քննադատներին՝ որպես անառարկելի հեղինակությունների: Այսպես. իր **Պարոն Հայկունու կրիտիկան և «Կայծերը»** հայտնի հոդվածի տեսական դրույթները կառուցել է՝ ելնելով Բելինսկու «Московский наблюдатель»-ի քննադատության և գրական կարծիքների մասին ուսումնասիրության սկզբունքներից՝ գնահատելով նրան որպես «երևելի կրիտիկոս» (տե՛ս Րաֆֆի, **Գրականության մասին,** Ե., 1958, էջ 206—209, 229):

Նա մոտիկից ծանոթ է եղել նաև Չեռնիշևսկու ստեղծագործություններին, որդեգրել նրա ամենակարևոր սկզբունքները՝ ազատությունը զենքով նվաճելու նշանաբանը, Ռուսաստանի բոլոր ժողովուրդների շահերի ընդհանրության գաղափարն ու նրանց միասնության անհրաժեշտությունը ցարիզմի դեմ մղվող պայքարում: Պատահական չէ, որ Րաֆֆու դեմ թշնամաբար տրամադրված գրական քննադատությունը հատուկ կրքոտությամբ մատնանիշ էր անում նրա ստեղծագործության այն էջերը, որոնք հոգեհարազատ էին ռուս ժողովրդի հեղափոխական զավակների արտահայտած գաղափարներին: Այսպես, **Կայծերի** մասին գրած գրախոսականում Հայկունին ուղղակի պնդում էր, թե Րաֆֆու հերոսները ուզում են լինել և են Ալեքսանդր II թագավորի սպանությունը կազմակերպողների, հեղափոխականներ Ն. Ի. Կիբալչիչի, Ա. Ի. Ժելյաբովի ու նրանց ընկերների երկվորյակները: Դժվար չէ կռահել, թե սաստկացող ցարական ռեակցիայի պայմաններում, առանց այն էլ անհուսալիների ցուցակում գտնվող Րաֆֆու համար ինչպիսի ողբերգական հետևանքներով էր հղի այսպիսի համեմատությունը: Րաֆֆին հավատում էր իր ստեղծագործությունների վարակիչ ուժին և վստահ էր, որ դրանցում արծարծված ազատասիրական խոհերն ու տրամադրությունները, անկախ այսօրվա իր բացատրություններից, անվրեպ կգտնեն իրենց ճշմարիտ հասցեատերերին: Այդ պատճառով էլ, պահնորդական բաժնի ուշադրությունը շեղելու համար, ամեն կերպ ժխտում էր Հայկունու կարծիքն իր վեպերի գաղափարական նըպատակամիտվածության և, մասնավորապես՝ Չեռնիշևսկու հետ իր ստեղծագործական, գաղափարական հոգեհարազատության մասին: Սակայն դա նրա պատասխան հոդվածի միայն երևութական կողմն էր: Իրականում այն ուներ խոր ենթատեքստ, որն ի հայտ էր բերում անառարկելի ճշմարտությունը:

Հայկունին առաջինն էր, որ բացահայտեց Րաֆֆու գաղափարական, գեղագիտական աղերսները ռուս հեղափոխական դեմոկրատների և հատկապես Չեռնիշևսկու հետ: Թեև քննադատն այդ հարցը բարձրացնում էր չարանենգորեն, հեղինակին վնասելու բացահայտ դիտավորությամբ, այդուհանդերձ, օբյեկտիվորեն դա խիստ արժեքավոր հայտնություն էր: Այս փաստն ըստ էության ուշագրավ է ո՛չ միայն Րաֆֆու ստեղծագործության, այլև 70—80-ական թվականների հայ գրականության զարգացման միտումները բնութագրելու առումով: Ռուսաստանում ծավալվող հեղափոխական իրադարձություններն իրենց կնիքն էին դնում հայ գրականության զարգացման ընթացքի վրա:

Րաֆֆին իր նամակներից մեկում (Ալ. Աբելյանին, 1887 թ.) գրում է. «Իմ աշխատությունների նպատակը մինչև այսօր եղել է և պիտի լինի՝ մեր ժողովրդին նոր մտքեր տալ և նոր գաղափարների հետ ծանոթացնել» (հ. 10, էջ 609): Ժողովըրդին անհրաժեշտ այդ մտքերն ու գաղափարները նա քաղում էր ռուս հեղափոխական դեմոկրատների՝ Բելինսկու, Չեռնիշևսկու, Դոբրոլյուբովի, Նեկրասովի, ստեղծագործություններից, հայ ժողովրդի պատմական անցյալը, ներկան ու ապագան իմաստավորում այդ բարձր գաղափարների լույսի ներքո՝ իր ստեղծագործություններում հաճախ հասնելով գաղափարական ու գեղարվեստական զարմանալի նմանաձայնության, հատկապես Չեռնիշևսկու հետ:

Սկսած վաթսունական թվականներից՝ ռուսական լայնատարած պետության հասարակական կյանքի մթնոլորտը հագեցած էր Չեռնիշևսկիով: Մեծ մտածողի նկատմամբ կիրառվող հալածանքները, ապա և բանտն ու աքսորը հաջորդ տասնամյակներում ո՛չ միայն չկանխեցին նրա գաղափարների տարածումը, այլ ավելի ընդլայնեցին դրանց ոլորտները, ավելի ուժեղացրին դրանց քաղաքական ու գեղագիտական հիմքը: Ռուսաստանի երիտասարդության համար 60—80-ական թվականներն իրավամբ կարելի է չեռնիշևսկիական տասնամյակներ կոչել:

Չեռնիշևսկին հսկայական ազդեցություն ունեցավ նաև Ռուսաստանի բազմազգ ժողովուրդների, այդ թվում և Անդրկովկասի հասարակական-քաղաքական կյանքի վրա: Մոսկվայում, Պետերբուրգում և Ռուսաստանի այլ քաղաքներում սովորող հայ երիտասարդները, վերադառնալով հայրենիք, բերում էին Չեռնիշևսկու գործերը, տալիս իրենց բարեկամներին, կոլեկտիվ ընթերցանություններ կազմակերպում: **Ի՞նչ անելը** կատարում էր իր հաղթարշավը, պատասխանելով երիտասարդությանը հուզող ամենահրատապ հարցերին, դառնում ազատագրական պայքարի ոգեշնչման աղբյուր: Իր հայրենիքի, իր ժողովրդի ազատագրության հոգսերով ապրող երիտա-

սարդ Րաֆֆին չէր կարող չհայտնվել Չեռնիշևսկու երկրպագուների շարքերում։

Դատելով Րաֆֆու վեպերում տեղ գտած Չեռնիշևսկու դավանած գաղափարների արձագանքներից ու երկու գրողների երկերի գաղափարական, գեղարվեստական ընդհանրություններից, պիտի ենթադրել, որ վիպասանն **Ի՞նչ անել**-ի հեղինակին ծանոթ է եղել իր ստեղծագործական կյանքի առաջին իսկ քայլերից, կարդացել ու ոգևորվել է նրանով։

**Ռուս գրականության գոգոլյան շրջանի ուրվագծեր** հոդվածում Չեռնիշևսկին գրում էր. «...Մի՛ շտապեք դատապարտելու ռուս գրողին։ Օ՜հ, եթե իմանայիք, թե նրա տաղանդի զարգացման համար որքա՜ն անբարենպաստ են այն հանգամանքները և հարաբերությունները, որոնց շրջանակներում նա գործում է, դուք զարմանք կըհայտնեիք ո՛չ թե նրա անզորության, այլ նրա ուժի առթիվ. դուք կզարմանայիք ո՛չ թե այն բանից, որ նա ընթանում է դանդաղ և երերուն քայլերով, այլ այն բանից, որ նա դեռ մի ինչ-որ կերպ քայլում է» (Ն. Գ. Չեռնիշևսկի, **Ռուս գրականության գոգոլյան շրջանի ուրվագծեր,** Ե., 1953 թ., էջ 529)։

Այս մեկնությունն օգնում է հասկանալու նաև իր տաղանդի համար առավել անբարենպաստ պայմաններում գործող հայ գրողներին, մասնավորապես Րաֆֆուն, որն ստիպված ժխտում էր իր կապերը ռուս հեղափոխական դեմոկրատների գաղափարախոսության հետ, մինչդեռ հակառակն էր հաստատում գործով։

Լուրջ խորհուրդ կա այն բանում, որ երիտասարդ Րաֆֆին իր գրական երախայրիքը նվիրել է Չեռնիշևսկու գաղափարակից ու զինակից Միքայել Նալբանդյանի հիշատակին՝ մեծարելով նրան որպես անմահ, միշտ օրինյալ, հավիտենական հիշատակի արժանի, պաշտելի Տղամարդ։ Պետրոպավլովյան ամրոցի վտանգավոր կալանավորի հիշատակն այսպես ի խորոց սրտի մեծարելը հարգանքի տուրք էր ո՛չ միայն նրա անձին, այլև նրա դավանած գաղափարին, հանուն որի մեծ նահատակը չէր խնայել նույնիսկ կյանքը։

Հենց այստեղից, այս ընծայականից է ձգվում այն թելը, որ հետագայում **Կայծեր** ու **Խենթը** վեպերում հայ ազատամարտիկներին՝ իրենց վարքագծով, ժողովրդի ազատագրության գործին անձնուրաց նըվիրվածությամբ, բաղձալի ապագայի իրենց երազանքով, այդ երազանքն իրականացնելու վճռականությամբ միացնում է Չեռնիշևսկու **Ի՞նչ անել**-ի հերոսներին։ Հետազոտողներն իրավացիորեն իրենց ուշադրությունը բևեռում են Րաֆֆու և Չեռնիշևսկու վեպերի (**Ի՞նչ անել, Խենթը**) գաղափարական և գեղարվեստական ակնհայտ նմանությունների վրա. դա մարդկային ազատ, իրավահավասար հարաբերություններից ծնված ապագա հասարակարգի պատկերն է, որը երկու գրողների մոտ էլ արտահայտվել է երազի ձևով։

Րաֆֆին 70—80-ական թվականների հայ ազատագրական շարժումների հաղթանակի հեռանկարը տեսնում էր դրանք ռուս հեղափոխական դեմոկրատների գաղափարներով զինելու, ռուս ժողովրդի հետ բարեկամությունն ամրապնդելու մեջ։ **Խենթը** ծրագրային վեպ էր, որտեղ հեղինակը մարտահրավեր էր նետում ցարական ինքնակալությանը՝ **Ի՞նչ անել**-ի արմատական հարցադրումները փոխադրելով հայ իրականության մեջ։ Չեռնիշևսկու հերոուհու՝ Վերա Պավլովնայի երազի միջոցով արտահայտված գաղափարները, որ մահվան սպառնալիքով արգելված էին Ռուսաստանում, Րաֆֆին, գրեթե նույնությամբ բացահայտորեն քարոզում էր **Խենթի** հերոսի՝ Վարդանի բերանով։ Րաֆֆու մոտ Չեռնիշևսկու երազած ապագա դեմոկրատական ազատ հասարակարգի գաղափարը կենսականորեն ձուլվում էր մեր ժողովրդի պատմությանը, գործունեության ծրագիր առաջադրում։ Իր հայրենիքի ազատագրությանը զինվորագրված Վարդանի երազը խորհրդանշում էր զենքի ու գաղափարի դաշինքը։

Րաֆֆու հերոսներն աշխատում, պայքարում են իրենց երազանքի իրականացման համար՝ ազատագրության գաղափարներով վարակելով հասարակության ամենալայն շրջաններին, կազմակերպում նրանց միտքը և նպատակալաց գործողությունների մղում։ Հենց սա էլ դառնում է Րաֆֆու գաղափարակիր հերոսներին բնութագրող ամենակարևոր առանձնահատկություններից մեկը։ Այս հերոսներին հատուկ է նաև մասշտաբային լայն մտածողությունը։ Նըրանք դադարում են միայն սեփական ժողովրդի վշտով ու հոգսերով ապրելուց։ Սեփական ժողովրդի ազատագրության հարցն այդ հերոսների համար ձեռք է բերում մի նոր իմաստ։ Ռասայական, ազգային ճնշման վարագույրի հետևում ավելի հստակ է ուրվագծվում սոցիալական հակասություններով լի հասարակարգի պատկերը, և այդ հերոսների համար ազգային ազատագրության գաղափարները



տեղի են տալիս մի ավելի մեծ, համապարփակ իրողության առաջ։ Եվ այսպես, ազգային ազատագրության հարցը, բնականաբար, դառնում է սոցիալական հեղաշրջման գաղափարի բաղկացուցիչ մասը, ներհյուսվում դրա մեջ, վճռվում դրա հետ միասին։

«... — Աղաների դարը կանցնե, կտիրե միայն արդարությունը և իրավունքը,— բացատրում է **Կայծերի** գաղափարակիր հերոսը՝ Կարոն։— Նա երկար ու երկար մեկնում էր, թե ինչ ձևով պետք է հասարակությունը կազմակերպել, որ զորեղն անզորին չճնշե, որ մշակ մարդու աշխատության վաստակը չխլեն, և նա միշտ իր տանը ուտելու հաց ունենա և ամենի վրա տիրե հավասարությունը...» (4, 377)։

Նույն մտահոգություններով է ապրում և գործում նաև **Խենթի** հերոսը՝ Դուդուկչյանը։ Ականատեսը պատմում է, որ մի գյուղում Դուդուկչյանն իր շուրջն էր հավաքել մի քանի երիտասարդ մշակների և խոսում էր նրանց հետ «...մարդկային անհատական իրավունքների մասին, խոսում էր մշակ մարդու աշխատանքի մասին, խոսում էր «բռնակալության» դեմ, խոսում էր ինչ եղանակով մարդիկ ձեռք են բերում ավելի ազատ և ավելի բախտավոր կյանքը» (3, 226)։

Կարոյի, Դուդուկչյանի, Վարդանի բորբոքած ազատության կայծերը շղթայական ռեակցիայով անցնում են բուն ժողովրդին։ Նահապետական մեծ գերդաստանի հայրը՝ ծերունի Խաչոն, որն իր օջախում հյուրընկալել էր Վարդանին ու Սալմանին, նրանց ազդեցությամբ նոր լույսի տակ է տեսնում իրենց շրջապատող երևույթներն ու աշխարհը։ Մի ժամանակ որդիներին համբերություն քարոզող ծերունին, որ համոզված էր, թե հայերի ապըստամբելու ժամանակը դեռ չի եկել, որ նրանք պիտի հեզությամբ կրեն տիրակալի շղթաները, հասունացող դեպքերի ազդեցությամբ ինքն է զարմանում որդիների քաղաքական անտարբերության վրա. «Անեծքի և ոչնչության արժանի եք դուք, քանի դեռ մեռած է ձեր մեջ անձնասիրության, պատվի և ազատամտության ամեն զգացմունքը։ Այն մարդիկը, որոնց դեմ բարկացած եք դուք, նրանք են իմ իսկական որդիներս...»,— ասում է նա՝ ակնարկելով Վարդանին ու Սալմանին (3, 237)։

Խենթի երազը վեպում բարձրացված հարցերի գաղափարական, գեղարվեստական խտացումն է, վերջին ակորդը, որը գալիս է որպես տրամաբանական եզրահանգում, որպես արծարծված հարցերի՝ ազատագրական գաղափարների բարձրակետ, որպես իդեալական հասարակարգի օրինակելի տիպար։ Այստեղ առավել ակնբախ են Րաֆֆու գաղափարական, գեղարվեստական աղերսները ռուս հեղափոխական դեմոկրատների և, մասնավորապես, Չեռնիշևսկու հետ։ Սակայն առավել արժեքավորն այն է, որ ամբողջ վեպն է հյուսված ռուս հեղափոխական դեմոկրատների գաղափարական ներթափանցումներով, հայ և ռուս ժողովուրդների բարեկամության ճշմարիտ արտացոլքերով։ Այստեղ Րաֆֆին արվեստի մոգական ուժով կրկին վերընձյուղում է Ռուսաստանի օգնությամբ ազգային և սոցիալական ազատություն նվաճելու հույսը։ Նրա մեջ ազատության պասիվ սպասման գաղափարախոսությունից անցում է կատարվում դեպի գործողությունների ակտիվացման լայն ծրագիր, որտեղ վճռական դերը հատկացվում է ժողովրդի ներքին ուժերի համախմբմանն ու ապստամբության անհրաժեշտությանը։

«... — Ռուսների այժմյան պատերազմը Թուրքիայի հպատակ քրիստոնյաների ազատության համար է,— շարունակեց պարոն Դուդուկչյանը։— Բայց պետք է գիտենաք, որ Թուրքիայի ավելի տանջված, ավելի հարստահարված քրիստոնյա հպատակը հայն է։ ...Ուրեմն ժամանակ է, որ հայերն էլ մտածեն իրանց հանգստության համար...», «Այժմ ամենահարմար ժամանակն է։ Ռուսները պիտի պատերազմեն թուրքերի հետ, թող հայերն էլ մի կողմից գլուխ բարձրացնեն։ Ես հավատացած եմ, որ ռուսները ամեն կերպով կօգնեն մեզ» (3, 185, 186—187)։ Հայ և ռուս ժողովուրդների բարեկամության այսպիսի ընկալումներն արդյունք էին լրջորեն մշակված կենսական մի դիրքորոշման, որն ըստ էության շարունակում էր Աբովյանի տավաղները՝ «Այս կապ անխզուն, այս սեր սրբազան...» նշանաբանով։

Սակայն Աբովյանից Րաֆֆի ընկած ժամանակահատվածում հայ հասարակական կյանքում զգալի փոփոխություններ էին տեղի ունեցել։ Մինչ պատմական Հայաստանի մի մասում «ճնշված, հարստահարված հայ ժողովուրդը, անցնելով Ռուսաց իշխանության ներքո, սկսեց ազատ շունչ քաշել» (Րաֆֆի), Արևմտյան Հայաստանում դրությունը գնալով ծանրանում էր։ Ռուս-թուրքական պատերազմի ու Բեռլինի վեհաժողովի հետ կապված սպասելիքները չիրականացան։ Թուրքիայում հայերի բռնի

ասիմիլյացիային հաջորդեց ֆիզիկական բնաջնջման քաղաքականությունը: Եվ այս ամենը քաղաքակիրթ Եվրոպայի աչքի առաջ ու նրանց թողտվությամբ:

Այս պայմաններում բացառիկ նշանակալից էր **Խենթ**-ի լույս աշխարհ գալը: Այն կազմակերպում էր հայ ժողովրդի ազատագրական ուժերը, նախապատրաստում ակտիվ գործողությունների, ամրապնդում հավատը Ռուսաստանի նկատմամբ, արձագանքում դարի ամենաառաջադիմական, ամենահեղափոխական գաղափարներին: Րաֆֆու վեպի նյութը վերցված է 1877—1878 թվականների ռուս-թուրքական պատերազմի իրադարձությունների բուռն ծավալման շրջանից, երբ հայ ժողովուրդը աղ ու հացով, անհուն ուրախությամբ էր դիմավորում փրկարար ռուսական զորքերին:

Ժողովուրդների բարեկամություն համապարփակ հասկացությունը Րաֆֆու մոտ կոնկրետանում, առարկայական իմաստ է ստանում: Այս խնդրի նրա կերպավորումներում մարդկային փոխհարաբերությունները պայմանավորված են ոչ թե ազգային պատկանելիությամբ, այլ կյանքում նրանց զբաղեցրած սոցիալական դիրքով: Վիպասանի ստեղծագործություններում ակնհայտորեն արձագանքվում են ռուս հեղափոխական դեմոկրատների արմատական հարցադրումները ազգամիջյան փոխհարաբերությունների, ազգային խնդիրների վերաբերյալ: Արևմտյան Հայաստանի ազատագրության հարցն արծարծելիս Րաֆֆին հատուկ ուշադրություն է դարձնում շահագործող վերնախավերին: Պոլսի հայ ամիրաները, ասում է նա, անունով են միայն հայ, իսկ սրտով «...թուրքից ավելի թուրք,— և իրանց անձնական շահերը պահպանելու համար, հայտնի բան է, նրանք կցանկանային միշտ կանգուն տեսնել Թուրքիան իր կառավարության անկարգ այլանդակության մեջ» (9, 301): **Խենթ**-ում զարգացնելով այս միտքը՝ գրողը ուշադրություն է հրավիրում թուրք և քուրդ հարստահարիչների գազանային դաշինքի վրա՝ ընդդեմ հասարակ, աշխատավոր ժողովրդի: Վեպում այս գայլային բարեկամությանը հակադրված է ժողովրդի առողջ հումանիզմը, որը բարեկամացնում ու հարազատացնում է հայ և քուրդ աշխատավորներին: Այստեղ արդեն մարդկային փոխհարաբերությունները պայմանավորող այլ օրենքներ են գործում: Գրողը սիրով ու հիացմունքով է ներկայացնում քուրդ ժողովրդի լավագույն զավակներին, որոնք սրտի թելադրանքով ամեն վտանգ հանձն առնելով՝ ապաստան են տալիս աղետի ենթարկված հայերին, օգնում նրանց փրկության գործին: Մարդկային այս պարզ, բնականոն փոխհարաբերություններով են ջերմանում վեպի հերոսների կյանքն ու նրանց շրջապատող կենսական մթնոլորտը, որից և բխում են տեսական եզրակացությունները, կյանքի երևույթների նկատմամբ մի նոր հայացքի ծնունդ տալիս:

Իր գեղարվեստական երկերում ստեղծելով ժամանակի ու պատմական միջավայրի ճշմարիտ պատկերները՝ Րաֆֆին առավել արտահայտչականության է հասնում հասարակական ուժերի, մարդկային ճակատագրերի ու հարաբերությունների բևեռացումների ու հակադրությունների միջոցով: Ռուս հեղափոխական դեմոկրատների նման նա ևս ընթերցողի ուշադրությունը սևեռում էր պալատներից դուրս ապրող և պալատների մեջ բռնությամբ հավաքված տարբեր ազգերի մարդկանց եղբայրական բարեկամության ամրապնդման խնդրի վրա:

Լայնացնելով ռուս հեղափոխական դեմոկրատների առաջադրած՝ Ռուսաստանի բոլոր ճնշված ժողովուրդների եղբայրական բարեկամության գաղափարի շրջանակները, Րաֆֆին ընթերցողին տանում էր դեպի Արևմտյան Հայաստան, դեպի թուրքական ու պարսկական դաժան տիրապետության տակ հեծող ժողովուրդների միասնության անհրաժեշտությունը: Այսպիսով նա գործնականորեն հաստատում էր նոր Ռուսաստանի հռչակած՝ ժողովուրդների ազատ դաշինքի և բարեկամության գաղափարի կենսունակությունն ու զարգացման պայծառ հեռանկարը:

Րաֆֆու մոտ ժողովուրդների բարեկամության արտացոլումը խնամքով մշակված ստեղծագործական ծրագիր է, որի իրականացմանը նա հետամուտ էր ամբողջ կյանքում՝ սկսած առաջին իսկ վեպից՝ **Սալբի**-ից: Հայ գրականության համար ավանդական, հնադարյան այդ թեմային նա ժամանակակից շեշտեր հաղորդեց, հայտնագործեց դրա սոցիալական բնույթն ու անխզելի կապը ժողովուրդներին հուզող ազատագրական շարժումների գաղափարախոսության հետ: Այս հարցի մասին իր մտորումներն ու համոզումները նա արտահայտել է **Սալբի** վեպի առաջաբանում, ինչպես և վեպի գլխավոր հերոսների երկխոսության մեջ:

Գրողը երազում է այնպիսի ժամանակների մասին, «Երբ բոլոր աշխարհը մի տուն կդառնա, և բոլոր ազգերը մի տան գերդաստան: Նոքա միասին կգործեն. միասին կվաստակեն և միասին կուտեն: Եվ ոչ ոք այն ժամանակ ասելու չէ այս բանը իմս է, այլ ամենայն ինչ **հասարակաց** կլինի» (1, 68):

Նույն երազանքներով են ապրում նաև վեպի հերոսները՝ Ռուստամն ու Սալբին: Հայրենիքի ազատագրությունը, հայ ժողովրդի խաղաղ, անվտանգ, երջանիկ կյանքը նրանց այլ կերպ չի պատկերանում, քան աշխարհի բոլոր բռնադատված ազգերի արդար իրավունքի հաղթանակի և համաշխարհային մարդասիրության պայմաններում, «...Երբ աշխարհի մեջ առաջ կգա արդարություն և իրավունք, երբ հաղթահարվածներին, բռնադատվածներին և գերիներին կարեկցություն կցույց տա համաշխարհական մարդասիրությունը, այն ժամանակ— ամեն մի ազգ կստանա իր կորցրած ժառանգությունը:

— Այդ դժվար է...,— տխրությամբ կրկնեց օրիորդը...» (1, 147):

Այո՛, Րաֆֆին գիտեր, որ գայլային օրենքներով առաջնորդվող շահագործողական աշխարհում չափազանց դժվար է ժողովուրդների բարեկամության ու խաղաղության երազանքի իրագործումը: Այդուհանդերձ, նա ամեն կերպ ջանում էր զորացնել բարեկամության ու եղբայրական սիրո զգացմունքը և այն որպես ամուր պատնեշ հակադրում էր բռնապետական կարգերի հրահրած ազգահալածության թունոտ քաղաքականությանը: Այստեղից էլ նրա անհանդուրժողական վերաբերմունքը ինչպես պարսկական ու թուրքական տիրապետության, այնպես էլ ցարիզմի դեմ: Այս տեսակետից ոչ մի խզում չկա ռուսասեր Աբովյանի և նրա հետնորդների՝ Րաֆֆու, Ռ. Պատկանյանի և մյուսների միջև: Նրանց ստեղծագործություններում հայ և ռուս ժողովուրդների բարեկամության նույն ճշմարտացի արտացոլումներն են՝ հասարակական, քաղաքական տարբեր պայմաններում:

Ուրիշ էին Պատկանյանի և Րաֆֆու ապրած ժամանակները: Արժանին հատուցելով ռուս ժողովրդի կատարած ազատագրական մեծ առաքելությանը՝ նրանք չէին կարող ցարական Ռուսաստանի գովքն անել անընդհատ, երբ այնտեղ ինքնակալության դեմ ծառս էր եղել նոր, առաջադեմ Ռուսաստանը՝ ցարիզմի դեմ մղվող պայքարում բարեկամության դաշինքի կոչելով բոլոր ճնշված ժողովուրդներին: Նոր Ռուսաստանի, ռուս մեծ ժողովրդի հետ համերաշխությամբ է պայմանավորված մեր գրողների քննադատական սուր վերաբերմունքը ցարական ինքնակալության նկատմամբ: Եվ հենց դրանով էլ պիտի բացատրել երիտասարդ Րաֆֆու առաջին իսկ վեպում (առաջաբանում) արտահայտված հակացարական տրամադրությունները: Եվ ինչո՞ւ միայն այդտեղ: Ցարիզմի գաղութային քաղաքականության կրքոտ քննադատությամբ է ներծծված նաև **Խամսայի մելիքությունները** գիրքը: Ուշագրավ է, որ գրաքննությունն ամեն կերպ փորձել է արգելակել այդ գրքի տպագրությունը՝ այնտեղ արտահայտված հակացարական տրամադրությունների պատճառով:

Րաֆֆին մեծ հումանիստ էր ու համոզված ինտերնացիոնալիստ, և դա նրա համար ոչ միայն քաղաքացիական հավատամք էր, այլև՝ գեղագիտական:

Գրականության մեջ ժողովուրդների բարեկամության արտացոլման վերաբերյալ Րաֆֆին ուներ իր հստակ պատկերացումները: Թե որքան մեծ նշանակություն էր տալիս գրողը այդ հարցին, ցայտուն երևում է նրա **Վիպագրությունը ռուսահայերենի մեջ** հոդվածից: Այստեղ Րաֆֆին մի տեսակ հանրագումարի է բերում իր գրական վաստակը, փորձում արժեքավորել արվածը: Ուշագրավ է, որ հատկապես առանձնացնելով ժողովուրդների բարեկամության թեման, նա այն համարում է իր ստեղծագործական նվաճումներից մեկը: «Մեզանից առաջ դեռ ոչ մի վիպասան չէր մտածել օտար ազգերի կյանքը հայոց վեպի նյութ դարձնել: Մենք տվեցինք առաջին օրինակը, երբ գրեցինք **Հարեմը**, **Բիբի-Շարաբանին**, **Խազ-Փուշներ** և այլն» (Րաֆֆի, **Գրականության մասին**, Ե., 1958 թ., էջ 331—332):

**Հարեմը** հայ ժողովրդի ողբերգական պատմության գեղարվեստական խտացումներից մեկն է, որն արվեստի ուժով ընդլայնում է իր սահմանները՝ ներառնելով այլևայլ ժողովուրդների, և ամբողջովին ներթափանցված է ազգային-ազատագրական պայքարի ու հակաբռնապետական մոտիվներով:

Գաղափարական, գեղագիտական նույնպիսի սկզբունքներով են գրված նաև **Խաչագողի հիշատակարանը...** և հայ պատմավիպագրության գոհարներից մեկը՝ **Սամվելը**:

Րաֆֆու երկերում ժողովուրդների բարեկամության դրսևորումները ենթարկված են միասնական մի նպատակի և, հավաքական ամբողջություն կազմելով, ստեղ-

ծում են հայացքների մի համակարգ, որտեղ արտացոլված են դարի հումանիստական ոգին և ամենաառաջադիմական գաղափարները ազգային հարցի վերաբերյալ: Այս առումով նա անմիջական ժառանգորդն է ռուս հեղափոխական դեմոկրատների հայացքների, որոնք Ռուսաստանի բոլոր ճնշված ազգերի եղբայրական բարեկամության գաղափարն էին առաջադրում: Վերցնելով այդ հիմնական սկզբունքը՝ Րաֆֆին այն տարածում էր նաև աշխարհի այլևայլ ժողովուրդների վրա: Իր հերոսների գործողությունները ծավալելով բռնապետական ֆեոդալական Թուրքիայում ու Պարսկաստանում՝ նա տեսավ ու պատկերեց այնտեղ բնակվող տարբեր ազգերի բարեկամությունն ու փոխօգնությունը ընդդեմ բռնության ու չարիքի՝ հայ ժողովրդի ազատագրության հարցը անվերապահորեն կապելով Ռուսաստանից ըսպասվող օգնության հետ: Հատկանշական է, որ Ռուսաստանը Րաֆֆու ստեղծագործություններում այն ավետյաց երկիրն է, որին ձգտում են տառապանքի ուղիներով անցած նրա բոլոր հերոսները:

Ինչպես գեղարվեստական երկերում, այնպես էլ հրապարակախոսության մեջ Րաֆֆին խոր համակրանքով ու հավատով է խոսում ռուս ժողովրդի, Ռուսաստանից սպասվող օգնության մասին: Ավելին, հայ և ռուս ժողովուրդների մտավոր զարգացման մեջ նա տեսնում էր էական ընդհանրություններ ու ներքին կապ:

Ճնշված ժողովուրդների արդար իրավունքի և իրավահավասարության վերահաստատման խնդիրը Րաֆֆու երկերում ներկայանում է զարգացման ընթացքի մեջ: Եթե իր գրական կյանքի արշալույսին նա միամտաբար պատրանքներ էր փայփայում, թե այդ խնդիրը հնարավոր է լուծել քաղաքակրթության ու լուսավորության միջոցով, ապա հետագա ողջ ստեղծագործության մեջ անց էր կացնում արդարությունը սրով նվաճելու, ազատագրական պայքարի գաղափարը:

Րաֆֆու հայացքները ժողովուրդների բարեկամության ու համագործակցության մասին մեր օրերում կարևորվում են նրա անաչառ վերաբերմունքով բոլոր ժողովուրդների, նրանց բարոյական ու կուլտուրական արժեքների նկատմամբ և հատկապես այն բանով, որ նա առաջինը մեր գրականության մեջ պատկերեց տարբեր ազգերի մարդկանց բարեկամության սոցիալական հիմքերը, բորբոքեց ատելության հուրը իշխող ազգերի բռնակալների դեմ, ջերմ սիրով ու գորովանքով ներկայացրեց տարբեր ազգերի անիրավված ու զրկած մարդկանց, հասարակ աշխատավորին, արձագանքեց դարի առաջավոր գաղափարներին, յուրովի, գեղարվեստական պատկերամտածողությամբ հաստատեց ռուս հեղափոխական դեմոկրատների գաղափարական եզրահանգումները ազգային հարցի վերաբերյալ:

Րաֆֆու գաղափարական, գեղարվեստական աղերսները ռուս ժողովրդի, ազատագրության կրքերով եռացող մեծ Ռուսաստանի հետ շատ են և բազմաբնույթ: Այստեղ քննարկվեցին դրանցից մի քանիսը միայն: Չափազանց ուշագրավ առանձին մի ուսումնասիրության նյութ կարող է տալ Րաֆֆուց կատարված թարգմանությունների քննությունը: Եվ այստեղ բացվում է փոխադարձ կապի ու հոգեհարազատության մի ջերմ մթնոլորտ, որը կարող էր ծնվել միայն մեծ փոխըմբռնումից:

Րաֆֆու ստեղծագործական առաջին իսկ քայլերն աննկատ չմնացին ռուս առաջադեմ մտավորականության ուշադրությունից: Նրա ստեղծագործությունների ռուսերեն առաջին թարգմանությունները տպագրվել են դեռևս հեղինակի կենդանության ժամանակ:

Ե. Ս. Նեկրասովա, Յու. Ա. Վեսելովսկի, Օ. Ե. Դուբրովինա, Կարա-Մուրզա... Ահա այն երախտավորներից մի քանիսը, ովքեր ստանձնեցին Րաֆֆուն ռուս ընթերցողին ներկայացնելու դժվարին գործը՝ դառնալով բարեկամության գրական կամուրջների ինքնատիպ ճարտարապետն ու շինարարը, որոնց հետքերով քայլում են գրական նորանոր սերունդներ: Րաֆֆու ստեղծագործությունները բռնեցին ժամանակների քննությունը և այժմ հարյուրամյա հեռավորությունից վերստին հավաստում են ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության հզոր պատգամը, հայ և ռուս ժողովուրդների եղբայրական դաշնության հավերժական երգը:

Հանձնված է շարվածքի՝ 15.05.86 թ.: Ստորագրված է տպագրության՝ 9.06.86 թ.: ՎՖ 05585: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 18.132: Պատվեր՝ 1075:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2: